# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՊՐԱՎԴԱ» ԹԵՐԹԻ ԹՂԹԱԿՑԻ ՀԱՐՑԵՐԻՆ

*ՀԱՐՑ:* Ինչպե՞ս եք Դուք, Լեոնիդ Իլյիչ, գնահատում ներկայիս միջազգային իրադրությունը, մասնավորապես, ամերիկյան վարչակազմի վերջին քայլերի լույսի ներքո:

*ՊԱՏԱՍԽԱՆ: Մեր կուսակցության կողմից խաղաղության, լարվածության թուլացման ու զինաթափման կուրսի, ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների առաջ քաշած խաղաղության ծրագրի կենսագործման կուրսի հետևողական ու ստեղծագործական իրականացումը հնարավորություն ընձեռեց շատ բանի հասնելու: Եթե վերցնենք լայնորեն, ապա գլխավորը, որ հաջողվեց անել, համաշխարհային պատերազմ—կարճատև խաղաղ դադար—նորից համաշխարհային պատերազմ ողբերգական ցիկլի խզումն էր: Այդ պատմական արդյունքով իրավունք ունենք հպարտանալու մենք՝ սովետական մարդիկս, մեր բարեկամները՝ եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդները, բոլոր նրանք, ովքեր պայքարել են և պայքարում են հանուն խաղաղության, հանուն լարվածության թուլացման, հանուն տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության:*

*Սակայն 70-ական և 80-ական թվականների սահմանագծում միջազգային իրադրությունը, ցավոք, նկատելիորեն բարդացավ: Եվ ժողովուրդները պետք է իմանան ճշմարտությունը, թե ով է պատասխանատու դրա համար: Կպատասխանեմ առանց թերասության. մեղքն ընկնում է իմպերիալիստական ուժերի, նախ և առաջ ԱՄՆ-ի որոշակի շրջանների վրա: Նրանց վրա, ովքեր լարվածության թուլացումը խոչընդոտ են համարում իրենց ագրեսիվ դիտավորությունների, սպառազինությունների մոլուցքի բորբոքման, ուրիշ ժողովուրդների ներքին գործերին միջամտելու ճանապարհին: Նրանց վրա, ում մեջ խոր կերպով նստած է ուրիշ պետությունների նկատմամբ անպատկառորեն վերաբերվելու, միջազգային ասպարեզում այնպես գործելու սովորությունը, ասես նրանց ամեն ինչ թույլատրված է:*

*Արդեն մի որոշ ժամանակ է, ինչ պարզ երևում է, որ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մի քանի այլ երկրների ղեկավար շրջանները վերցրել են լարվածության թուլացման գործի նկատմամբ թշնամական կուրս, սպառազինությունների մրցավազքի սաստկացման կուրս, որը տանում է դեպի պատերազմի վտանգի ուժեղացում: Դրա սկիզբը դրվեց դեռևս 1978 թվականին, ՆԱՏՕ-ի խորհրդի Վաշինգտոնում կայացած մայիսյան նստաշրջանում, որտեղ հաստատվեց նրա անդամ երկրների ռազմական բյուջեների ավտոմատիկ աճը մինչև 20-րդ դարի վերջը: ԱՄՆ-ի քաղաքականության ռազմատենչ միտումները վերջին ժամանակներս իրենց արտահայտությունն են գտնում նաև արագորեն սպառազինությունների նոր, երկարաժամկետ ծրագրերի ընդունման, Միացյալ Նահանգների սահմաններից հեռու, այդ թվում Մերձավոր Արևելքում և Հնդկական օվկիանոսի շրջանում ռազմական նոր բազաների ստեղծման, այսպես կոչված «արագ հակազդման կորպուսի»՝ ռազմական միջամտության քաղաքականության այդ գործիքի, կազմավորման մեջ:*

*Իսկ ահա վերցրեք այնպիսի կարևոր փաստաթուղթ, ինչպիսին է ՍՍՍ—2 պայմանագիրը: Դրա կենսագործումը ճանապարհ կբացեր զինաթափման բնագավառում խոշոր քայլեր ձեռնարկելու համար: Այդ պայմանագիրը, ինչպես հայտնի է, պաշտպանության արժանացավ ամբողջ աշխարհում, այդ թվում*

ՆԱՏՕ-ի գծով ԱՄՆ-ի դաշնակիցների կողմից, միջազգային հասարակայնության լայն շրջաններում: Իսկ ինչպես վարվեց դրա հետ Ջ. Քարտերի վարչակազմը: Պայմանագիրը հազիվ էր ստորագրվել, երբ ԱՄՆ-ում սկսեցին վարկաբեկել այն, իսկ վավերացման պրոցեսը պայմանագրի հակառակորդների կողմից, ըստ էության, սկսեց օգտագործվել (ոչ առանց ԱՄՆ-ի կառավարության շրջանների թողտվության) այն բանի համար, որպեսզի ծայրաստիճան դժվարացվի նրա վավերացումը: Սենատում ՍՍՍ—2 պայմանագրի քննարկումը անորոշ ժամանակով սառեցնելու՝ օրերս ընդունած իր որոշումով պրեզիդենտ Ջ. Քարտերը և՛ս մի շարիխ ավելացրեց այդ անվայելուչ պրոցեսում:

Հենց Միացյալ Նահանգները 1979 թվականի դեկտեմբերին ՆԱՏՕ-ի գծով իրենց դաշնակիցներին պարտադրեցին արևմտաեվրոպական մի շարք երկրներում միջին հեռավորության հրթիռամիջուկային նոր միջոցներ տեղաբաշխելու որոշումը, որը հանգեցնում է սպառազինությունների մրցավազքի նոր փուլի:

Ընդ որում, Վաշինգտոնը բառացիորեն փակում էր իր այն դաշնակիցների բերանը, որոնք հակվում էին դրականորեն արձագանքելու տվյալ հարցի շուրջ բանակցություններ վարելու Սովետական Միության կոնստրուկտիվ առաջարկություններին:

Այսօր խաղաղության ու լարվածության թուլացման հակառակորդները փորձում են չարաշահել Աֆղանստանի իրադարձությունները: Այդ իրադարձությունների շուրջը ստի լեռներ են կուտակվում, ծավալվում է հակասովետական անպատկառ կամպանիա: Իսկ իրականում ի՞նչ է տեղի ունեցել Աֆղանստանում:

1978 թվականի ապրիլին այնտեղ հեղափոխություն կատարվեց: Աֆղան ժողովուրդը իր բախտը վերցրեց իր ձեռքը, կանգնեց անկախության և ազատության ուղու վրա: Ինչպես միշտ եղել է պատմության մեջ, անցյալի ուժերը համախմբվեցին ընդդեմ հեղափոխության: Իհարկե, Աֆղանստանի ժողովուրդը ինքը կարող էր հաշիվ տեսնել նրանց հետ: Սակայն հեղափոխության առաջին իսկ օրերից նա հանդիպեց արտաքին ագրեսիայի, իր ներքին գործերին կոպիտ արտաքին միջամտության:

Արտասահմանում զինված ու վարժեցված հազարավոր և տասնյակ հազարավոր խռովարարներ, ամբողջական զինված կազմավորումներ էին փոխադրվում Աֆղանստանի տերիտորիա: Իմպերիալիզմն իր հանցակիցների հետ ըստ էության չհայտարարված պատերազմ էր սկսել հեղափոխական Աֆղանստանի դեմ:

Աֆղանստանը համառորեն պահանջում էր դադարեցնել ագրեսիան, իրեն հանգիստ թողնել, որպեսզի նոր կյանք կառուցի: Դիմագրավելով արտաքին ագրեսիան, աֆղանական ղեկավարությունը դեռևս պրեզիդենտ Թարաքիի օրոք, իսկ հետո նաև ավելի ուշ, բազմիցս դիմել էր Սովետական Միության օգնությանը: Մեր կողմից մենք ում որ հարկ է նախազգուշացնում էինք, որ եթե ագրեսիան չդադարեցվի, ապա աֆղան ժողովրդին դժբախտության մեջ չենք թողնի: Իսկ, ինչպես հայտնի է, մեր խոսքը գործից չի տարբերվում:

Աֆղանստանի դեմ ուղղված ագրեսորների գործողություններին նպաստում էր Ամինը, որը, զավթելով իշխանությունը, դաժան բռնություններ ծավալեց աֆղան հասարակայնության լայն խավերի, կուսակցական ու զինվորական կադրերի, մտավորականության, մուսուլման հոգևորականության ներկայացուցիչների, այսինքն հենց այն խավերի դեմ, որոնց վրա հենվում էր Ապրիլյան հեղափոխությունը: Եվ ժողովուրդը Քարմալ Բաբրակի գլխավորած ժողովրդադեմոկրատական կուսակցության ղեկավարությամբ ոտքի ելավ Ամինի այդ բռնակալության դեմ, վերջ տվեց դրան: Այսօր Վաշինգտոնում և մի քանի այլ մայրաքաղաքներում ողբում են Ամինի կորուստը: Եվ դա առանձնապես ակնբախորեն է մերկացնում նրանց կեղծավորությունը: Իսկ որտե՞ղ էին այդ ողբացողները, երբ Ամինը մասսայական բռնություններ էր գործադրում, երբ նա բռնությամբ հեռացրեց, ապօրինաբար ֆիզիկապես ոչնչացրեց Թարաքիին՝ աֆղանական նոր պետության հիմնադրին:

Չդադարող զինված ինտերվենցիան, ռեակցիայի արտաքին ուժերի զգալիորեն խորացած դավադրությունը ստեղծում էին Աֆղանստանի կողմից իր անկախությունը կորցնելու, մեր երկրի հարավային սահմանում այն իմպերիալիստական ռազմական պլացդարմի վերածելու ռեալ սպառնալիք: Այլ խոսքով, հասել էր պահը, երբ մենք արդեն չէինք կարող չարձագանքել մեզ բարեկամ Աֆղանստանի կառավարության խնդրանքին: Վարվել այլ կերպ՝ կնշանակեր Աֆղանստանը հոշոտելու հանձնել իմպերիալիզմին, ագրեսիվ ուժերին թույլ տալ այստեղ կրկնելու այն, ինչ նրանց հաջողվեց անել, օրինակ, Չիլիում, որտեղ ժողովրդի ազատությունը խեղդվեց արյան մեջ: Վարվել այլ կերպ, կնշանակեր անտարբերությամբ նայել, թե մեր հարավային սահմանում ինչպես է սովետական պետության անվտանգությանն սպառնացող լուրջ վտանգի օջախ գոյանում:

Դիմելով մեզ, Աֆղանստանը հենվում էր բարեկամության, բարիդրացիության ու համագործակցության պայմանագրի հստակ դրույթների վրա, որը Աֆղանստանը ՍՍՀՄ-ի հետ կնքել է 1978 թվականի դեկտեմբերին, ՄԱԿ-ի կանոնադրությանը համապատասխան՝ յուրաքանչյուր պետության անհատական կամ կոլեկտիվ ինքնապաշտպանության իրավունքի վրա, իրավունք, որից բազմիցս օգտվել են ուրիշ պետություններ:

Մեզ համար հեշտ ու հասարակ բան չէր սովետական զինվորական կոնտինգենտներ Աֆղանստան ուղարկելու որոշում ընդունելը: Բայց կուսակցության Կենտկոմը և սովետական կառավարությունը գործում էին իրենց պատասխանատվության լիակատար գիտակցումով, հաշվի առնում բոլոր հանգամանքների ամբողջությունը: Սովետական կոնտինգենտների առջև դրված միակ խնդիրն է աֆղաններին օժանդակել կասեցնելու արտաքին ագրեսիան: Նրանք լրիվ դուրս կբերվեն Աֆղանստանից, հենց որ վերանան այն պատճառները, որոնք աֆղանական կառավարությանը դրդեցին դիմել դրանք մտցնելու խնդրանքով:

Իմպերիալիստական, ինչպես նաև Պեկինի պրոպագանդան գիտակցաբար և անամոթաբար աղավաղում է Սովետական Միության դերը աֆղանական գործերում:

Անշուշտ, ոչ մի սովետական «ինտերվենցիա» կամ «ագրեսիա» չի եղել և չկա: Կա այլ բան. մենք նոր Աֆղանստանին նրա կառավարության խնդրանքով օգնում ենք զինված արտաքին ագրեսիվ գործողություններից պաշտպանելու իր երկրի ազգային անկախությունը, ազատությունն ու պատիվը:

Այնուհետև, Աֆղանստանի իրադարձությունները բնավ չեն շոշափում Ամերիկայի Միացյալ Նահանգների և մյուս պետությունների ազգային շահերն ու անվտանգությունը: Բանն այլ կերպ ներկայացնելու ամեն մի փորձ անհեթեթություն է: Դրանք ձեռնարկվում են չարամտորեն, սեփական իմպերիալիստական դիտավորությունների իրականացումը հեշտացնելու նպատակով:

Բացարձակապես ստահոդ են նաև այն պնդումները, թե իբր Սովետական Միությունը ինչ-որ էքսպանսիոնիստական պլաններ ունի Պակիստանի, Իրանի կամ այդ շրջանի այլ երկրների նկատմամբ: Մեզ խորթ են գաղութարարների քաղաքականությունն ու հոգեբանությունը: Մենք աչք չենք տնկում ուրիշի հողերին, մենք չենք ձգտում տիրանալ ուրիշի հարստություններին: Այդ գաղութարարներին է, որ ձգում է նավթի հոտը:

Պարզապես փարիսեցիական են «խաղաղությանն սպառնացող սովետական վտանգի » մասին բարբաջելու և որպես միջազգային բարոյականության պաշտպաններ հանդես գալու նրանց փորձերը, որոնց ծառայությունների ցուցակում է «կեղտոտ պատերազմը» ընդդեմ Վիետնամի, ովքեր մատը մատին չխփեցին, երբ չինական ագրեսորները զինված ներխուժում կատարեցին սոցիալիստական Վիետնամ, ովքեր տասնամյակներ շարունակ ռազմական բազա են պահում Կուբայի հողում՝ նրա ժողովրդի և կառավարության կամքին հակառակ, ովքեր սուր են ճոճում, շրջափակումով սպառնում, բացահայտ ռազմական ճնշում գործադրում հեղափոխական իրանական ժողովրդի վրա, Իրանի ափերին ուղարկելով ատոմային զենքով զինված ռազմածովային արմադա, այդ թվում՝ ԱՄՆ-ի ավիակիրների զգալի մասը:

Եվ վերջինը, որ հարկավոր է ասել այդ կապակցությամբ: Աֆղանստանի ներքին գործերին միջամտություն իսկապես տեղի է ունենում, ընդ որում, դրա համար օգտագործվում է նաև մի այնպիսի բարձր ու հարգարժան հաստատու-

թյուն, ինչպիսին է Միավորված ազգերի կազմակերպությունը: Իրոք, ուրիշ ինչ, եթե ոչ աֆղանական պետության սուվերեն իրավունքների կոպիտ ոտնահարում եղավ այսպես կոչված «աֆղանական հարցի» քննարկումը ՄԱԿ-ում, հակառակ Աֆղանստանի կառավարության առարկումներին:

Չէ որ աֆղանական կառավարությունը և ՄԱԿ-ում նրա պատասխանատու ներկայացուցիչը ի լուր ամենքի հայտարարում են. մեզ հանգիստ թողեք, սովետական զինվորական կոնտինգենտները մտցվել են մեր խնդրանքով և սովետա-աֆղանական պայմանագրին ու ՄԱԿ-ի կանոնադրության 51-րդ հոդվածին համապատասխան:

Այնինչ, քողարկվելով աղմուկով, մեծացվում է օգնությունը այն տարրերին, որոնք ներխուժում են Աֆղանստան, ագրեսիվ գործողություններ կատարում օրինական իշխանության դեմ: Սպիտակ տունը վերջերս բացեիբաց հայտարարեց, որ որոշել է ընդլայնել այդ տարրերին ռազմական հանդերձանքի և թշնամական գործունեության համար անհրաժեշտ ամեն ինչի մատակարարումը: Արևմտյան մամուլը հաղորդում է, որ Պեկինում կայացած բանակցությունների ընթացքում ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրը պայմանավորվել է այդպիսի գործողությունները կոորդինացնել չինական ղեկավարության հետ:

Եզրափակելով աֆղանական թեման, պետք է ասել, որ Աֆղանստանի իրադարձությունների նկատմամբ իմպերիալիստական ուժերի թշնամական վերաբերմունքն անակնկալ չէ: Գործի էությունն այն է, որ այստեղ տանուլ է տրվել այն խաղաքարտը, որի վրա հույները դրել էին իմպերիալիստները և նրանց հանցակիցները:

Մի խոսքով՝ Աֆղանստանի իրադարձությունները միջազգային իրադրության այժմյան բարդացման իսկական պատճառը չեն: Եթե չլիներ Աֆղանստանը, ապա ԱՄՆ-ի, ՆԱՏՕ-ի որոշակի շրջանները հավանաբար ուրիշ առիթ կգտնեին, որպեսզի աշխարհում սրեին իրադրությունը:

Վերջապես, Աֆղանստանի իրադարձությունների կապակցությամբ ամերիկյան վարչակազմի քայլերի ողջ հանրագումարը՝ ՍՍՍ—2 պայմանագրի սառեցումը, արդեն կնքված որոշ համաձայնագրերով ՍՍՀՄ-ին մի ամբողջ շարք ապրանքների, այդ թվում հացահատիկի առաքումներից հրաժարվելը, երկկողմ հարաբերությունների մի ամբողջ շարք հարցերի շուրջ Սովետական Միության հետ վարվող բանակցությունների դադարեցումը և այլն, վկայում է, որ Վաշինգտոնը վերստին, ինչպես որ տասնամյակներ առաջ, փորձում է մեզ հետ խոսել «սառը պատերազմի» լեզվով: Ընդ որում, Ջ. Քարտերի վարչակազմը ցուցադրում է իր քամահրանքը միջպետական կարևոր փաստաթղթերի նկատմամբ, խախտում է գիտության, մշակույթի, մարդկային հաղորդակցման բնագավառում հաստատված կապերը:

Նույնիսկ դժվար է թվարկել, թե պրեզիդենտ Քարտերի կառավարությունը վերջին ժամանակներս կամայականորեն և միակողմանիորեն ինչքան պայմանագրեր, միջկառավարական համաձայնագրեր, պայմանավորվածություններ ու փոխըմբռնումներ է խախտել, որոնք տարբեր բնագավառներում փոխհարաբերությունների հարցերի շուրջ ձեռք էին բերվել մեր երկու երկրների միջև: Մենք, իհարկե, յոլա կգնանք նաև առանց Միացյալ Նահանգների հետ այս կամ այն կապի և առհասարակ երբեք այդ կապերը չենք պարտադրել նրանց, այդ գործը համարելով փոխշահավետ և մեր երկրի ժողովուրդների երկուստեք շահերին համապատասխանող, նախ և առաջ՝ խաղաղության ամրապնդման առումով:

Սակայն անկախ սուվերեն պետություններին մերթ «պարգևատրելու», մերթ «պատժելու» Վաշինգտոնի կողմից կամայականորեն իրեն վերապահված ինչ-որ «իրավունքը» հարցը դարձնում է սկզբունքային: ԱՄՆ-ի կառավարությունը նման գործողություններով փաստորեն առհասարակ հարված է հասցնում պետությունների հարաբերությունների միջազգային իրավական կարգավորված սիստեմին:

Քարտերի վարչակազմի այդպիսի գործողությունների հետևանքով աշխարհում ավելի ու ավելի պարզորոշ է դառնում պատկերացումը Միացյալ Նահանգների մասին, որպես միջպետական կապերում միանգամայն անհուսալի պարտնյորի, որպես մի պետության, որի ղեկավարությունը ինչ-որ քմահաճույքներով,



կամակորություններով կամ էմոցիոնալ պոռթկումներով, կամ էլ րոպեական նեղմիտ օգուտի նկատառումներով մղված, ընդունակ է ցանկացած պահին խախտելու իր միջազգային պարտավորությունները, ջնջելու իր ստորագրած պայմանագրերն ու համաձայնագրերը: Արդյոք հարկ կա՞ պարզաբանելու, թե դա ինչպիսի վտանգավոր ապակայունացնող ազդեցություն է գործում ամբողջ միջազգային իրադրության վրա, մանավանդ, երբ իրեն այդպես է պահում խոշոր, ազդեցիկ տերության ղեկավարությունը, որից ժողովուրդներն իրավունք ունեն ակնկալելու կշռադատված և պատասխանատու քաղաքականություն:

Անշուշտ, ԱՄՆ-ի վարչակազմի այդ գործողությունները մեզ ամենևին չեն հասցնի այնպիսի վնաս, որպիսին բացահայտորեն ակնկալում են դրանց նախաձեռնողները: Մեզ հացահատիկ վաճառելուց Միացյալ Նահանգների հրաժարվելու հետևանքով Սովետական Միությունում պարենային վիճակի «վատացման» վերաբերյալ ցինիկ հաշիվները կառուցված են մեր տնտեսական պոտենցիալի վերաբերյալ սին պատկերացումների վրա: Սովետական ժողովուրդը բավականաչափ հնարավորություն ունի հանգիստ ապրելու և աշխատելու, նախատեսված պլանները կատարելու, իր բարեկեցությունը բարձրացնելու համար: Մասնավորապես ես կարող եմ հավաստիացնել, որ ոչ մի կիլոգրամով չեն պակասեցվի սովետական մարդկանց հացով և հացամթերքներով ապահովելու պլանները:

Մենք չենք կարող ամերիկյան վարչակազմի գործողությունները դիտել այլ կերպ, քան որպես Աֆղանստանի իրադարձություններն այն բանի համար օգտագործելու վատ կշռադատված փորձ, որ շրջափակվեն պատերազմի վտանգի նվազեցման, խաղաղության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի սահմանափակման միջազգային ջանքերը, այլ խոսքով՝ շրջափակվի այն ամենը, ինչով կենսականորեն շահագրգռված է ամբողջ մարդկությունը:

ԱՄՆ-ի միակողմանիորեն ձեռնարկված միջոցները հավասարազոր են քաղաքականության մեջ լուրջ սխալներ կատարելուն: Դրանք բումերանգի նման, եթե ոչ այսօր, ապա վաղը կհարվածեն նրանց, ովքեր դրանք ձեռնարկել են:

Իսկ եթե մեր քաղաքականության դեմ ուղղված այդ հարձակումներով ուզում են ստուգել մեր ամրությունը, ապա դա նշանակում է, որ լիովին անտեսում են պատմության փորձը: Երբ 1917 թվականին ծնվեց աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, մեր ժողովուրդը դրա թույլտվությունը ոչ ոքից չխնդրեց: Նա հիմա էլ ինքն է վճռում, թե ինքը ինչպիսի օրենքներով ապրի: Իմպերիալիզմը փորձեց մեզ ստուգման ենթարկել դեռ սովետական իշխանության արշալույսին, և բոլորը հիշում են, թե դա ինչով վերջացավ: Մեզ փորձեցին ընկճել ֆաշիստական ագրեսորները՝ երբևիցե մարդկության տեսած ամենաարյունահեղ պատերազմում: Բայց նրանք պարտություն կրեցին: Մեզ փորձությունների ենթարկեցին «սառը պատերազմի» տարիներին, աշխարհը մղելով դեպի անդունդի եզրը՝ իրար ետևից սանձազերծելով միջազգային մի ճգնաժամ մյուսի ետևից: Բայց այն ժամանակ էլ ոչ ոք չկարողացավ մեզ սասանել: Այս ամենը օգտակար է հիշեցնել այսօր:

**ՀԱՐՑ: Ձեր կարծիքով որո՞նք են Եվրոպայի խաղաղության զարգացման հեռանկարները:**

ՊԱՏԱՍԽԱՆ: Եվրոպայի իրադրությունը այսօր անհամեմատ լավ է, քան ասենք՝ 70-ական թվականների սկզբներին: Սակայն Վաշինգտոնի վերջին անպատասխանատու գործողությունները, իհարկե, ազդում են նաև այստեղ: Միացյալ Նահանգները չեն բավարարվում նրանով, որ գրեթե ամեն ինչ անում են, որպեսզի թունավորեն սովետա-ամերիկյան հարաբերությունները: Նրանք կուզենային վատացնել նաև արևմտաեվրոպական երկրների հարաբերությունները Սովետական Միության հետ, հարաբերություններ, որոնց ասպարեզում, ինչպես հայտնի է, վերջին տասնամյակի ընթացքում օգտակար քիչ բան չի ձեռք բերվել: ԱՄՆ-ը փորձում է թուլացնել Հելսինկիի եզրափակիչ ակտի ոգին ու էությունը, ակտ, որը ճանաչված սահմանագիծ է դարձել մայրցամաքում անվտանգության ամրապնդման և խաղաղ համագործակցության զարգացման ճանապարհին: Եվ, վերջապես, միջազգային իրադրության սրմանն ուղղված իր քայլերով Վաշինգտոնը նպատակ է հետապնդում իր բռում պահել եվրոպական պետություններին, առաջին հերթին՝ սեփական դաշնակիցներին:

Սակայն եվրոպական ժողովուրդների արմատական շահերը անխզելիորեն կապված են լարվածության թուլացման հետ։ Եվրոպացիները սեփական փորձով արդեն ճաշակել են այդ պրոցեսի բարերար պտուղները։ Նրանք՝ բնակիչներն այն մայրցամաքի, որը քանիցս ավերիչ պատերազմների ճարակ է դարձել, ամենևին չեն կամենում, մենք դրանում համոզված ենք, բռնելու արկածախնդրությունների ուղին՝ անդրօվկիանոսյան քաղաքագետների կամքով։ Անկարելի է հավատալ, թե Եվրոպայում կգտնվեն այնպիսի պետություններ, որոնք կուզենային լարվածության թուլացման պտուղները նետել նրանց ոտքերի տակ, ովքեր պատրաստ են կոխկրտելու դրանք։ Եվրոպայում լարվածության թուլացումը արևմտյան պետություններին և հենց Միացյալ Նահանգներին հարկավոր է բնավ ոչ պակաս, քան սոցիալիստական երկրներին, քան Սովետական Միությանը։

Եվրոպայում խաղաղության օգտին կոնստրուկտիվ շատ բան կարելի է անել ոչ հեռավոր ապագայում, մասնավորապես Մադրիդում կայանալիք հանդիպման կապակցությամբ և ռազմական լարվածության ու զինաթափման կոնֆերանս անցկացնելու վերաբերյալ Վարշավայի պայմանագրի երկրների առաջարկության կապակցությամբ։ Մենք վճռականորեն հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ ամրապնդվի ու բազմապատկվի այն ամբողջ դրականը, ինչ եվրոպական մայրցամաքում տարիներով ստեղծվել է ինչպես մեծ, այնպես էլ փոքր պետությունների ջանքերով։ Մենք այսուհետև էլ կվարենք խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականություն։ Ի հակադրություն Վաշինգտոնի այժմյան էքստրեմիստական դիրքավորման, մեր դիրքորոշումն այն է, որ շարունակվեն սպառազինությունների մրցավազքի դադարեցման նպատակով վերջին տարիներս շատ ուղղություններում սկսված բանակցությունները։ Սա, իհարկե, վերաբերում է նաև Եվրոպայում ռազմական դիմակայության թուլացման պրոբլեմներին։

Կրկնում եմ. մենք կողմնակից ենք բանակցությունների, բայց՝ աղնիվ, իրավահավասար բանակցությունների, երբ պահպանվում է միատեսակ անվտանգության սկզբունքը։ Մենք վերջերս առաջարկում էինք հենց այդպիսի բանակցություններ սկսել միջին հեռավորության միջուկային միջոցների հարցի շուրջ։ Ոչ ոք չի կարող ակնկալել, թե Սովետական Միությունը կընդունի նատոյական այն պայմանները, որոնք նախատեսված են բանակցությունները ուժի դիրքից վարելու համար։ ՆԱՏՕ-ի երկրների այժմյան դիրքավորումը անկարելի է դարձնում այդ պրոբլեմի շուրջ բանակցություններ վարելը։ Այս ամենի մասին մենք օրերս պաշտոնապես ասացինք ԱՄՆ-ի կառավարությանը։

Մենք ապագային նայում ենք լավատեսությամբ։ Եվ դա հիմնավոր լավատեսություն է։ Մենք հասկանում ենք, որ ամերիկյան իմպերիալիզմի կողմից միջազգային իրադրության միտումնավոր սրումը արտացոլում է նրա դժգոհությունը սոցիալիզմի դիրքերի ամրապնդումից, ազգային-ազատագրական շարժման վերելքից, լարվածության թուլացման ու խաղաղության օգտին հանդես եկող ուժերի ամրապնդումից։ Մենք գիտենք, որ ժողովուրդների կամքը ամեն տեսակ խոչընդոտների միջով ճանապարհ է հարթել դեպի համաշխարհային գործերի այն դրական ուղղությունը, որը տարողունակ կերպով արտահայտվում է «լարվածության թուլացում» բառերով։ Նման քաղաքականությունը խոր արմատներ ունի։ Այդ քաղաքականությունը պաշտպանում են հզոր ուժեր, և այն բոլոր շանսերն ունի մնալու որպես առաջատար միտում պետությունների հարաբերություններում։

Մեր ժողովուրդը, մեր երկիրը վստահաքայլ ընթանում են կոմունիստական շինարարության ուղիով, կատարելով տասներորդ հնգամյակի առաջական շինարարության ուղիով, կատարելով տասներորդ հնգամյակի առաջադրանքները, կուսակցության կանխանշումները։ Սովետական մարդիկ, մեր արտասահմանյան բարեկամները կարող են վստահ լինել, որ լենինյան արտաքին քաղաքական կուրսն անսասան է։ Այդ կուրսը սահմանվել է ՍՄԿԿ-ի համագումարների որոշումներով, մարմնավորվում է մեր ամբողջ արտաքին քաղաքական գործունեության մեջ։ Այդ կուրսը հետևողական խաղաղասիրությունը զուգակցում է ագրեսիային վճռական հակահարված հասցնելու հետ։ Այդ կուրսն իրեն արդարացրել է անցած տասնամյակներում, մենք դրան կհետևենք նաև այսուհետև։ Այդ կուրսից մեզ ոչ ոք չի կարող շեղել։

---

Վ. Ի. Լենինի ծննդյան

110-ամյակի առթիվ

# ՄԵԾ ԼԵՆԻՆԻ ԱՆՊԱՐՏԵԼԻ ԴՐՈՇՈՎ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՆՋՆՋԵԼԻ ԷՋԵՐՈՒՄ մարդկային մտքի ու գործի տիտանների բազում անուններ են գրվել, որոնք տևաբար ապրում են սերունդների սրտերում, ջերմացնում նրանց հոգին, խթանում միտքն ու բազուկը։ Բայց Լենինը մեկն էր, Լենինը եզակի երևույթ էր։ Այլևս ուրիշը չկար, որ այնքան շատ բան արած լիներ աշխատավոր մարդկանց երջանկության համար, մեր հայրենիքի ազատության, բարգավաճման ու վեհության համար, համայն աշխարհի ճնշվածների ու շահագործվողների ազատագրման համար։ Այլևս ուրիշը չկար, որի միտքն ու գործը այնքան վճռական ազդեցություն թողած լիներ ամբողջ մարդկության վրա։

Հիրավի, պետք էր լինել տիտանական մտքի, անեզր կարողությունների տեր՝ Մարքսի ժառանգությունը մինչև խորքերն ընկալելու և այն զարգացնելու, բանվորական շարժման և սոցիալիստական հեղափոխության տեսությունը հիմնավորապես մշակելու, պրոլետարիատի նոր տիպի քաղաքական կուսակցությունը ստեղծելու, բանվոր դասակարգի հեղափոխական հաղթական պայքարը ղեկավարելու համար։ Մինչև Լենինի երևան գալը դարավոր պատմությունն իր հիշողության ծալքերում այդպիսի երևույթ չէր արձանագրել։ Ու երբ արձանագրեց, պատմությունն ինքն իմաստնացավ, սկսեց իր նոր տարեգրությունը, մարդկությունն ինքը քայլեց դեպի նոր որակ։

Եվ երախտագետ պարտքի գիտակցումով, ինչպես և սրտի թելադրանքով է, որ սովետական մարդիկ, աշխարհի ամբողջ առաջադեմ մարդկությունը նշում են Սովետական Միության կոմունիստական կուսակցության հիմնադիր, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծող, Ռուսաստանի աշխատավորության և միջազգային բանվոր դասակարգի առաջնորդ, հանճարեղ մտածող ու հեղափոխական Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-ամյակը։

Բյուրեղյա մաքրության, անձնական բացառիկ հմայքի տեր մարդ էր Լենինը։ Սիրում էր մարդկանց, պայքարում նրանց երջանկության համար և հանուն իսկ այդ մարդկանց անողոք էր ճնշողների ու շահագործողների հանդեպ, նրանց վարձու սպասավորների հանդեպ։ Նրա ողջ կյանքն անընդհատ ստեղծագործություն էր՝ ստեղծագործություն տեսության, քաղաքականության, դասակարգային պայքարի կազմակերպման, կուսակցական և պետական շինարարության ոլորտներում։

Երբեմն գրեթե անըմբռնելի, մարդկային հնարավորությունների շրջանակներից դուրս է թվում, որ մի մարդը, որքան էլ նա հանճարեղ լինի, կարող էր կատարել այն ամբողջ վիթխարի աշխատանքը, որ կատարեց Լենինը։ Նա մեծ, անխոնջ աշխատավոր էր, զարմանալի աշխատունակության տեր։ Կոմունիստ

էր որպես պլան ու ապագայի ծրագիր: Սա էլ հենց լենինիզմի համաշխարհային պատմական հաղթանակն է:

Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ այսպես բնութագրեց մեր անցած ուղին. «Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել: Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է: Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը: Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագայի, կոմունիստական լուսավոր հեռանկարներին: Մեր առջև բաց են հետագա համակողմանի առաջընթացի անծայրածիր հեռաստանները:

Անցած ուղու մյուս գլխավոր արդյունքը մեր սովետական ապրելակերպն է: Իսկական կոլեկտիվիզմի ու ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն՝ այսպիսիք են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսիք են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղնուծուծը:

Եվ, վերջապես, անցած 60-ամյակի կարևորագույն արդյունքն է սովետական մարդը: Մարդ, որ կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում: Մարդ, որ կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության: Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը: Դա մի այնպիսի մարդ է, որը լինելով ջերմագին հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ»: Այսպիսին են մեր անցած ուղու գլխավոր արդյունքները, որ այսօր աշխարհին ներկայանում են որպես լենինիզմի համաշխարհային պատմական հաղթանակ:

ԼԵՆԻՆԻԶՄԸ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԵՎ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ հեղափոխությունների դարաշրջանի, գաղութատիրության խորտակման և ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի դարաշրջանի, մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու և կոմունիստական հասարակարգ կառուցելու դարաշրջանի մարքսիզմն է: Միլիոնավոր հեղափոխական մարտիկներ լենինիզմի մեջ գտնում են կյանքի ամենահրատապ հարցերի պատասխանները, խորհրդակցում են Լենինի հետ, ըստ Լենինի կառուցում նոր հասարակարգը:

Համաշխարհային հեղափոխության զարգացումը ամբողջ XX դարում իր վրա կրում է Լենինի մտքի հզորագույն ազդեցությունն ու կնիքը: Ժամանակակից աշխարհի զարգացման գլխավոր ստորոգելիները այնպիսին են, ինչպես կանխատեսել էր Լենինը:

Արդի ժամանակաշրջանին հատկանշական է սոցիալիզմի երկրների դերի անշեղ աճը համաշխարհային կյանքի իրադարձությունների վրա: Սոցիալիզմի երկրների տնտեսությունն անընդհատ վերելք է ապրում: Ամրապնդվում է նրանց քաղաքական հիմքը, բարձրանում ժողովուրդների բարեկեցությունը: Սոցիալիզմի երկրների մերձեցումը՝ կենսագործունեության բոլոր բնագավառներում դարձել է մեր ժամանակակից կյանքի օբյեկտիվ օրինաչափությունը:

Անշուշտ, այդ համագործակցությանը էապես վնասում է Չինաստանի կոմկուսի ղեկավարության բռնած դիրքը: Նրանց քաղաքականությունը բացեիբաց ուղղված է սոցիալիզմի երկրների դեմ և ուղղակիորեն ծառայում է աշխարհիս ամենածայրահեղ ռեակցիային: Այդ քաղաքականությունն ըստ էության դարձել է իմպերիալիզմի կարևոր ռեզերվը սոցիալիզմի դեմ պայքարում, խորապես հակասում է բոլոր ժողովուրդների, այդ թվում և չին ժողովրդի կենսական շահերին: «Այժմ արդեն քիչ է ասել, թե մաոիստական գաղափարախոսությունն ու քաղաքականությունը անհամատեղելի են մարքս-լենինյան ուսմունքի հետ: Դրանք ուղղակի թշնամական են այդ ուսմունքի համար»,— համագումարում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ հավատարիմ



լենինյան պատգամներին, հետևողականորեն կիրառում է խաղաղությունը պահպանելու, սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, հասարակական տարբեր կացութաձև ունեցող երկրների միջև խաղաղ գոյակցության քաղաքականություն: Սակայն ԱՄՆ-ի, ՆԱՏՕ-ի և այլ երկրների ղեկավար շրջաններ բռնել են լարվածության թուլացման դեմ թշնամական, սպառազինությունների մրցավազքը սաստկացնելու ուղի, որի պատճառով ուժեղանում է պատերազմի վտանգը: Դրա սկիզբը դրվեց դեռևս 1978 թվականին, ՆԱՏՕ-ի խորհրդի Վաշինգտոնում կայացած մայիսյան նստաշրջանում, որտեղ վճռվեց այդ բլոկի մեջ մտնող երկրների ռազմական բյուջեներն ավտոմատ կերպով ավելացնել մինչև XX դարի վերջը: ԱՄՆ-ի ռազմաարդյունաբերական կոմպլեքսի շահերին համապատասխան ընդունվում են նոր, երկարաժամկետ ծրագրեր, Միացյալ Նահանգների սահմաններից հեռու, այդ թվում Մերձավոր Արևելքում և Հնդկական օվկիանոսի շրջանում ստեղծվում են ռազմական նոր բազաներ, կազմավորվում է ամերիկյան իմպերիալիզմի ռազմական միջամտության քաղաքականության գործիք «արագ արձագանքման կորպուսը», որի նպատակն է ճնշել ազգային-ազատագրական շարժումներն ու հեղափոխական ելույթները երկրագնդի ցանկացած կետում:

Այդ նույն շրջաններն այսօր Աֆղանստանի իրադարձությունների կապակցությամբ բորբոքում են հակասովետական հիստերիա, ահաբեկում գոյություն չունեցող «սովետական սպառնալիքով», փորձում գործն այնպես ներկայացնել, թե Իրանին և Պարսից ծոցի նավթաբեր շրջանի երկրների անկախությանը սպառնում են ոչ թե ամերիկյան ավիակիրներն ու հածանավերը, այլ Սովետական Միության զինված ուժերը: ԱՄՆ-ի պրեզիդենտ Քարտերը, ոտնահարելով միջազգային իրավունքի նորմերը, սովետաամերիկյան հարաբերություններում վերադառնում է պատմության կողմից մերժված սառը պատերազմի մեթոդներին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը վճռականորեն շարունակում են ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների մշակած խաղաղության ծրագրի իրականացումը: Պատասխանելով «Պրավդա» թերթի թղթակցի հարցերին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Մեր ժողովուրդը, մեր երկիրը վստահաքայլ ընթանում են կոմունիստական շինարարության ուղիով, կատարելով տասներորդ հնգամյակի առաջադրանքները, կուսակցության կանխանշումները: Սովետական մարդիկ, մեր արտասահմանյան բարեկամները կարող են վստահ լինել, որ լենինյան արտաքին քաղաքական կուրսն անսասան է... Այդ կուրսից մեզ ոչ ոք չի կարող շեղել»:

ԻՆՉՊԵՍ ՊԱՏՄԱԿԱՆ ՓՈՐՁՆ ԱՊԱՑՈՒՑԵՑ, միանգամայն իրավացի էր Վ. Ի. Լենինը, երբ կանխատեսում էր, թե տարբեր երկրներ սոցիալիզմի կհանգեն որոշ առանձնահատկություններով, բայց գլխավորը կլինեն հիմնական ընդհանուր օրինաչափությունները: Դրանք են սոցիալիստական հեղափոխությունը՝ խաղաղ թե ոչ խաղաղ ձևով (ներառյալ շահագործողների պետական մեքենայի ջարդումը, փոխարինումը), աշխատավորության մյուս խավերի հետ դաշնակցած պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն ձևով հաստատումը, շահագործող դասակարգերի վերացումը, արտադրության միջոցների հանրայնացումը և սոցիալիստական արտադրական և այլ հասարակական հարաբերությունների հաստատումը քաղաքում ու գյուղում, աշխատավորության հոծ զանգվածների հաղորդակցումը կուլտուրայի արժեքներին, այսինքն՝ կուլտուրական հեղափոխությունը, բառիս լենինյան իմաստով:

Զարգացման ընդհանուր օրինաչափություններ ունեն նաև այն երկրները, որտեղ արդեն կառուցված է սոցիալիզմը: Դրանք են՝ աշխատավորության իշխանությունը բանվոր դասակարգի ավանգարդային դերի պայմաններում. հասարակական զարգացման ղեկավարումը մարքս-լենինյան կուսակցության կողմից. արտադրության միջոցների հանրային սեփականությունը և դրա հիման վրա ամբողջ ժողովրդական տնտեսության պլանային զարգացումը տեխնիկական բարձրագույն մակարդակով, հանուն ամբողջ ժողովրդի բարեկեցության. «յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշ-

խտանքի» սկզբունքի իրականացումը. ամբողջ ժողովրդի դաստիարակումը գիտական կոմունիզմի գաղափարախոսության ոգով; սոցիալիզմի եղբայրական երկրների ժողովուրդների և համայն աշխարհի աշխատավորների հետ բարեկամության ոգով. պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա խարսխված արտաքին քաղաքականությունը:

Բոլոր այս ընդհանուր, արմատական հատկանիշները վճռական նշանակություն ունեն ժամանակակից կյանքում: Պատահական չէ, որ կուսակցության XXV համագումարում հատկապես շեշտվեց, թե «Կոմունիստներն իրենց պայքարում ելնում են հեղափոխության զարգացման և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափություններից...»:

Դեռևս 1921 թվականին, հանդես գալով Կոմինտերնի III կոնգրեսում, Վ. Ի. Լենինն ասաց. «...միանգամայն պարզ է, որ համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտերում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազգային ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի և իմպերիալիզմի դեմ և գուցե շատ ավելի մեծ հեղափոխական դեր խաղա, քան մենք սպասում ենք»:

Առաջնորդի այս հանճարեղ կանխատեսումը նույնպես իրականություն է դարձել: Այժմ, երբ հիմնականում ավարտվել է կապիտալիստների գաղութային կայսրության կործանումը, ավելի ու ավելի ցայտուն առաջին բնագիծ է ելնում պայքարը արդեն ո՛չ միայն հանուն ազգային, այլ նաև հանուն սոցիալական ազատագրության:

1917 թ. հոկտեմբերյան բոցաշունչ օրերին Վ. Ի. Լենինը ստորագրեց հաշտության մասին պատմական դեկրետը: Դա նորաստեղծ սովետական իշխանության առաջին ակտն էր: Այն օրից ի վեր, վաթսուն և ավելի տարիներ շարունակ սովետական երկիրը հանդես է գալիս որպես խաղաղության դրոշակակիր: Լենինն էր, որ առաջ քաշեց տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության դրույթը, որն այսօր սոցիալիստական երկրների հետևողական քաղաքականության շնորհիվ, մեր կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի և քաղբյուրոյի ու անձամբ Լ. Ի. Բրեժնևի եռանդուն նպատակասլաց ջանքերի շնորհիվ դարձել է միջազգային հարաբերությունների կարևորագույն սկզբունքներից մեկը:

Դեռևս իր առաջին աշխատություններում Վ. Ի. Լենինը նշում էր ազգային հարցի կարևորությունը, շեշտում, որ ազգային հարցը սոցիալիստական հեղափոխության ընդհանուր հարցի մի մասն է, որ այն ստորադասվում է աշխարհի վերափոխման համար մղվող հեղափոխական պայքարի շահերին: Պրոլետարիատի առաջնորդը հետևողականորեն զարգացնում էր այն միտքը, թե ազգային հարցի լուծումը հնարավոր է իմպերիալիզմի դեմ պայքարի ճանապարհով, թե ժողովուրդների ազատագրական պայքարի հաղթանակը պայմանավորվում է բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հաղթանակով:

Բոլշևիկյան կուսակցության ծրագրի դեմոկրատիզմը, խորապես ինտերնացիոնալիստական բնույթն էլ ցարիզմի ու կապիտալիզմի դեմ պայքարում ապահովում էին Ռուսաստանի բոլոր ազգերի ու ազգությունների բանվորների ամենասերտ դաշինքը: Դա նշանակում էր ամենից առաջ անզիջում կռիվ «սեփական» ազգային բուրժուազիայի և նրա նացիոնալիստական գաղափարախոսության դեմ, եղբայրական միասնություն բոլոր հարստահարիչների դեմ: «Բուրժուական նացիոնալիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը,— ասում էր Լենինը,— ահա երկու թշնամական անհաշտ լոզունգներ, որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում»:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը նշանավորում էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների ազատությունը և քաղաքական իրավահավասարությունը, նրանց ազատագրումը սոցիալական ու ազգային ճնշումից, նրանց զարթոնքն ու ստեղծագործական ուժերի ձերբազատումը: Հոկտեմբերը հիմնական քաղաքական պայմանը եղավ արմատական սոցիալ-տնտեսական վերափոխությունների, այն հենարանը, որի վրա պիտի գործնականում իրականանար կոմունիստական կուսակցության ազգային ծրագիրը, այն դասակարգային հիմքը, որ պիտի իր ապառաժներին կրեր սովետական սոցիալիստական հանրապետությունների, իսկ հետո նաև այդ հանրապետությունների միության գրանիտե դաշինքը:



Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունն այն է, որ նա մշակեց ազգային հարցի սոցիալիստական լուծման ծրագիրը: Մեր անցած ճանապարհի խոշորագույն արդյունքներից մեկն էլ եղավ այն, որ, շնորհիվ կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, ազգային հարցը այն տեսքով, ինչպես այն մեզ ժառանգություն էր մնացել անցյալից, լուծված է լիակատար կերպով, լուծված է վերջնականապես և անդառնալիորեն:

Վ. Ի. Լենինն էր, որ հղացավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծման գաղափարը, դարձավ այդ պատմական շարժման նախաձեռնողն ու ոգեշնչողը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա խարսխված նոր տիպի ազգային հարաբերությունների հաղթանակը լայնորեն բացեց երկրի բոլոր ժողովուրդների համատեղ առաջընթացի ճանապարհը դեպի սոցիալիստական ու կոմունիստական շինարարության հեռաստանները:

Միանգամայն իրավացի էր Լենինը, երբ ասում էր, թե մենք իշխում ենք ոչ թե բաժանելով,— ինչպես հին Հռոմի դաժան օրենքն էր պահանջում, բաժանիր, որ տիրես,— այլ միավորելով բոլոր աշխատավորներին՝ կենդանի շահերի դասակարգային գիտակցության անխորտակելի շղթաներով: Եվ, որ մեր Միությունը, մեր նոր պետությունն ավելի ամուր է, քան իմպերիալիստների համար անհրաժեշտ արհեստական կազմավորումները սրի ուժով ու երկաթով միավորող բռնի իշխանությունը:

Սոցիալիստական ազգերի դաշնադրության հարուստ և ուսանելի փորձի ընդհանրացումը եղավ մեր երկրի հիմնական օրենքը՝ ՍՍՀՄ նոր սահմանադրությունը: Հանրապետությունների Գերագույն և տեղական սովետների ընտրություններին կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների հաղթանակը մի անգամ ևս վառ կերպով ցույց տվեց, որ մեր բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը անվերապահորեն հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությանը:

Երբ ստեղծվում էր ՍՍՀՄ-ը, սովետական հանրապետությունների զարգացման մակարդակները հավասար չէին: Կուսակցության նշանաբանը դարձավ բոլոր հանրապետությունների տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական մակարդակների արագ հավասարեցումն ու վերելքը: Լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ Սովետական Հայաստանն այսօր բարձր զարգացած արդյունաբերության, կոլտնտեսային մեքենայացված գյուղատնտեսության ու սոցիալիստական բարձր կուլտուրայի հանրապետություն է:

Էներգետիկ հզոր բազայի վրա Սովետական Հայաստանում լայնորեն զարգանում են մեքենաշինությունն ու հաստոցաշինությունը, էլեկտրոնիկան և ռադիոէլեկտրոնիկան, ճշգրիտ սարքաշինությունն ու ավտոմատացման միջոցները, քիմիական արդյունաբերությունը և գունավոր մետաղագործությունը, շինանյութերի ինդուստրիան և թեթև ու սննդի արդյունաբերությունը: Այսօր հանրապետության շուրջ 500 միավորումներ ու ձեռնարկություններ որոշում են նրա ինդուստրիալ դեմքը:

Հայ ժողովրդի, եղբայրական բոլոր ժողովուրդների, ամբողջ սովետական երկրի նվաճումները մեր հասարակական ու պետական կարգի պատմական հաղթանակն են: Այն ամենը, ինչ ձեռք է բերվել սովետական հանրապետություններում, ո՛չ միայն տվյալ հանրապետության բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների անձնուրաց աշխատանքի արդյունքն է, այլև ամբողջ սովետական ժողովրդի համատեղ աշխատանքի արգասիքը: Մեր ընդհանուր նվաճումները հնարավոր դարձան առանց բացառության բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների սոցիալիստական փոխօգնության, նրանց անխախտելի քաղաքական, սոցիալ-տնտեսական և գաղափարական ընդհանրության շնորհիվ:

Սովետական Միության բոլոր ժողովուրդները խորին հարգանքի, սիրո և երախտագիտության զգացում են տածում ռուս մեծ ժողովրդի հանդեպ։ Այդ հարգանքն ու սերը ռուս ժողովուրդը նվաճել է իր հերոսական ստեղծարար աշխատանքով ու անձնվեր հեղափոխական պայքարով, իր ինտերնացիոնալիստական մեծ սրտով ու անշահախնդրությամբ։ Այդ մեծ երախտագիտության ակունքը ռուս ժողովրդի, նրա բանվոր դասակարգի մշտական պատրաստակամությունն է եղբայրական օգնության ձեռք մեկնելու բոլոր ազգերին ու ազգություններին։

Համատեղ ստեղծարար աշխատանքում աճում և ամրապնդվում է եղբայրական ժողովուրդների մեծ միությունը, մեր հզոր սոցիալիստական ընտանիքը։ Շահերի ու նպատակների հոգեհարազատություն, վստահություն ու փոխօգնություն, կամքի ու գործի, գաղափարի և խոհերի այդպիսի անխորտակելի միասնություն պատմությունը երբեք չէր արձանագրել։

Սովետական մարդկանց համար խորթ են շովինիզմն ու նացիոնալիզմը, ռասայական ատելությունը ուրիշ ժողովուրդների և ազգերի նկատմամբ։ Նրանք ազատագրված են այնպիսի այլանդակ երևույթներից, ինչպիսիք են սեփական ազգային սնապարծությունը, ազգային սահմանափակությունն ու իր կեղևի մեջ ամփոփվելը։

Սովետական մարդու պատմականորեն ստեղծված հատկանիշներն են՝ անսահման նվիրվածություն կոմունիզմի գործին, սոցիալիստական հայրենասիրություն և ինտերնացիոնալիզմ, կոլեկտիվիզմ, աշխատանքային ու հասարակական-քաղաքական բարձր ակտիվություն, անհաշտվողականություն շահագործման և ճնշման, ազգային ու ռասայական նախապաշարումների նկատմամբ, դասակարգային համերաշխություն բոլոր երկրների աշխատավորության հետ։

Մեր բոլոր հաջողությունները կապված են կոմունիստական կուսակցության ղեկավար, ուղղություն տվող և կազմակերպող դերի աճի հետ։ Կուսակցությունն իր աշխատանքը վարելիս միշտ սովորում է Վ. Ի. Լենինից, կիրառում աշխատանքի լենինյան ոճը։ Այդ ոճի բնորոշ գծերն են սկզբունքայնությունը, ուղղամտությունը, ճշմարտությունն ամեն ինչում։ Աշխատանքի լենինյան ոճին հատուկ է ստեղծագործական սկզբունքը, այն ներթափանցված է բոլոր հասարակական պրոցեսների ու երևույթների նկատմամբ գիտական դասակարգային մոտեցմամբ։

Կուսակցության ուժը մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարմության մեջ է, նրա միասնության, բանվոր դասակարգի, ժողովրդական մասսաների հետ անխզելի կապի մեջ, որոնց կոլեկտիվ առաջնորդը և կազմակերպիչը հենց ինքն է։ Կուսակցության ուժը նրա հեղափոխական ոգին է, իր գործունեության արդյունքները քննադատաբար գնահատելու և խորապես իմաստավորելու ընդունակությունը։

— Կուսակցության և ժողովրդի միասնությունը մեծ Լենինի դրոշի ներքո՝ ահա մեր գալիք հաղթանակների լավագույն երաշխիքը։

Լենինյան հոբելյանը սովետական մարդիկ դիմավորում են քաղաքական և աշխատանքային բարձր խանդավառության պայմաններում, նրանք իրենց բոլոր ուժերը, գիտելիքներն ու եռանդը նվիրաբերում են տասներորդ հնգամյակի պլանների հաջող կատարմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը սկզբունքային նշանակություն ունեցավ այդ բնագավառում աշխատանքի որակի և արդյունավետության հետագա բարձրացման, քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունն ապահովելու համար։ Այդ որոշումը գաղափարադաստիարակչական աշխատանքի բնագավառում տևական ժամանակաշրջանի ծավալուն ծրագիր է, որտեղ առաջադրվել են արդի փուլում սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման խնդիրները և տրվել դրանց լուծման կոնկրետ ուղիները։

Լենինյան կուսակցությունը մեր հասարակության առաջընթացի բոլոր փուլերում բատ ամենայնի կարևորում է գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումում, խոսելով այդ մասին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Սովետական մարդկանց հետ խոսակցությունը պետք է լինի անկեղծ, լուրջ, փաստարկված... Կուսակցական պրոպագանդան, կուսակցական ագիտացիան պետք է լինեն առավելագույն չափով առարկայական, պետք է համոզիչ կերպով, գործիմացությամբ պատասխանեն մարդկանց հուզող բոլոր հարցերին։ Եվ այդ դեպքում կուսակցական խոսքը կարող է վերածվել աշխատանքային խանդավառության, տասնյակ միլիոնավոր կոմունիստների և անկուսակցականների աշխատանքային ջանքերին»։

Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հաջողությամբ կատարեց տասներորդ հնգամյակի չորրորդ տարվա պլանային առաջադրանքները։ Այս ժամանակամիջոցում իրողություն դարձան ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումները։ Նշանակալի հաջողություններ ձեռք բերեց ժողովրդական տնտեսությունը։ Բարձրացավ աշխատավորների բարեկեցությունը, հզորացավ երկրի պաշտպանունակությունը։

Ընթացիկ հնգամյակի չորրորդ տարին արդյունաբեր էր նաև մեր հանրապետության համար։ Հայաստանի աշխատավորները զգալի հաջողությունների են հասել պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման գործում։ Անցյալ տարվա մեր ցուցանիշները համոզիչ վկայում են, որ մենք չենք զիջի մեր նվաճած բարձունքները և նոր հաջողությունների կհասնենք հնգամյակի եզրափակիչ տարում։

Սովետական Հայաստանի աշխատավորության համար տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին կրկնակի հոբելյանական է։ Մենք այս տարվա ապրիլին նշելու ենք Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարելիցը, իսկ նոյեմբերին՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակը։

Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ գոհունակությամբ ընդունեցին «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որը մեծ առաջնորդի գաղափարներին և պատվիրաններին կուսակցության անսասան հավատարմության մի նոր վկայություն է։ Հոբելյանների նախապատրաստությունն ու տոնակատարությունը անց են կացվում կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների սերտ համախմբվածության, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ բոլոր եղբայրական ժողովուրդների հետ անխախտ բարեկամության հետագա ամրապնդման նշանաբանով։

Մարդկության ներկան ու ապագան աներևակայելի են առանց Լենինի ու լենինիզմի։ Լենինյան գաղափարների փարոսը լուսավորում է համայն մարդկության առաջընթացի ուղին դեպի նորանոր մեծագործություններ, դեպի սոցիալիզմի ու կոմունիզմի գործի համաշխարհային հաղթանակը։

Եվ ինչպիսի փոթորիկներ ու ճակատամարտեր էլ դեռ սպասելիս լինեն հեղափոխականներին, ինչպիսի նոր բնագծեր էլ դեռ լեռնանան մեր աշխատանքային հերոսամարտի ճանապարհին, բոլորիս համար միշտ և ամենուրեք ոգեշնչման հավերժ աղբյուր կլինեն Վ. Ի. Լենինի կերպարը, նրա անպարտելի գաղափարները։

---



# ԱԶԳԱՅԻՆ ԵՎ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԱՐԺԱՆԱՊԱՏՎՈՒԹՅՈՒՆ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ սոցիալիզմի կառուցման կարևորագույն արդյունքը մարդկային որակապես նոր փոխհարաբերությունների վրա խարսխվող սովետական ապրելակերպի և նոր մարդու ձևավորումն է։*

*Սովետական մարդը* իսկական ճասարակական անհատ է*, քանզի նրա հոգևոր կերպարի բնորոշ հատկանիշը ոչ թե անձնականի հակադրումն է հասարականին ու գերադասումը դրանից, այլ երկուսի սերտ զուգակցումը։ Մարդ, որի ձգտումը հասարակական ակտիվության, հանրային պարտքի խոր ըմբռնումն է, իր ողջ գործունեությամբ հասարակության հետագա առաջընթացին, ժողովրդի բարօրության աճին ամեն կերպ նպաստելն է կամ, այլ կերպ ասած, ակ*տիվ կենսադիրքորոշումը։

*Դրանք այն բարձրագույն մարդկային հատկանիշներն են, որ նախկինում հատուկ են եղել միայն հասարակության փոքրամասնությանը, նրա պրոգրեսիվ ուժերին, մասնավորապես կոմունիստներին, որոնք հասարակականը վեր են դասել անձնականից, իրենց բոլոր ուժերը նվիրաբերել են մարդկանց սոցիալական և ազգային լիակատար ազատագրմանը և սոցիալիստական հասարակություն ստեղծելու վեհ պայքարին։*

*Այժմ, երբ մեր երկրում իրականություն դարձած ազատությունն ու հավասարությունը վերափոխել են մարդուն, անհամեմատ բարձրացրել նրա հանրային արժույթը, մենք հատուկ ուշադրություն ենք նվիրում նրա ակտիվ կենսադիրքորոշման ամրակայմանը։ Դա այսօր սովետական մարդու, կոմունիզմ կառուցողի բարոյաքաղաքական հետագա կատարելագործման կարևոր գործոններից է, որովհետև, ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ» (ՍՄԿԿ XXV* համագումարի նյութերը, *էջ 116)։*

*Բարձր զարգացած, հասարակականորեն ակտիվ մարդուն օրգանապես ներհատուկ է իր արժանապատվության գիտակցությունը։ Արժանապատվությունն անհատի սոցիալական ու բարոյական ազատության մի կարևոր կողմի դրսևորումն է, անհատի՝ իր հասարակական նշանակության, հասարակության կողմից հարգանքի արժանանալու իրավունքի գիտակցումը, որ խարսխվում է հասարակության կողմից մարդու սոցիալական արժանիքի ճանաչման վրա։ Անձնական արժանապատվության գիտակցության սաղմերն առաջացել են մարդկության զարգացման ամենավաղ շրջաններում, սակայն մասնավոր սեփականության, մարդու շահագործման ու ճնշման վրա հիմնված հասարակարգերում ամեն կերպ նսեմացվել ու ստորացվել է աշխատավոր և ճնշված մարդու արժանապատվությունը։ Աշխատավոր մարդը միայն սոցիալական ազատագրության պայքարում է սկսել գիտակցել իր արժանապատվությունն ու մարտնչել այն հաստատելու համար։*

*Միայն սոցիալիստական հասարակությունն է, որ, մարդուն շահագործումից ու ճնշումից ազատագրելով, ռեալ պայմաններ է ստեղծում ո՛չ միայն նրա անձնական արժանապատվության բարձր գիտակցության գոյավորման, այլև այդ արժանապատվությունը հասարակականորեն ու պետականորեն (օրենքով) ապահովելու համար։ ՍՄԿԿ* ծրագրում *հատկապես նշվում է, որ մեր երկրում «Յուրաքանչյուր քաղաքացու անձնական արժանապատվությունը պաշտպանում է հասարակությունը»։ Իսկ ՍՍՀՄ սահմանադրության մեջ վավերագրված են մարդու արժանապատվության հասարակական ճանաչման հիմնական սկզբունքները և այն իրավական երաշխիքները, որոնք ապահովում են այդ ճանաչումը։ Այսպես, սահմանադրության 57-րդ հոդվածում նշված է. «Քաղաքացիների անձի հարգումը, նրանց իրավունքների և ազատությունների պահպանումը բոլոր պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների և պաշտոնատար անձանց պարտականությունն է։*

*ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն իրենց պատվի և արժանապատվության, կյանքի և առողջության, անձի ազատության և գույքի դեմ կատարված ոտնձգություններից դատական պաշտպանության իրավունք»։*

*Սահմանադրության յոթերորդ գլուխը վավերագրում է ՍՍՀՄ քաղաքացիների հիմնական իրավունքները, ազատություններն ու պարտականությունները։ Այդ գլխի 30 հոդվածներում հանգամանորեն նշված են այն բոլոր իրավական երաշխիքները, որոնք ապահովում են մարդու ամենակենսական՝ աշխատանքի, հանգստի, կրթության, պետական ու հասարակական գործերին մասնակցելու, ծերության ժամանակ նյութական ապահովման, առողջության պահպանման, կուլտուրայի նվաճումներից օգտվելու իրավունքների, գիտական, տեխնիկական և գեղարվեստական ստեղծագործության, հասարակական կազմակերպությունների մեջ միավորվելու, մամուլի, խոսքի, միտինգների և այլ ազատությունների իրականացումը։*

*Սահմանադրության մեջ միաժամանակ նշվում են սովետական քաղաքացիների հիմնական հասարակական պարտականությունները, դրանք կապելով բարոյական այնպիսի վսեմ սկզբունքների հետ, ինչպիսիք են՝ սոցիալիստական համակեցության կանոնների հարգումը, ՍՍՀՄ քաղաքացու վեհ կոչումն արժանապատվությամբ կրելը (հոդված 59), զինված ուժերում ծառայելու սրբազան պարտքի կատարումը (հոդված 62), մյուս քաղաքացիների ազգային արժանապատվության հարգելը (հոդված 64), հակահասարակական արարքների նկատմամբ անհաշտությունը (հոդված 65), հոգատարությունը երեխաների դաստիարակության համար (հոդված 66), բնության ու նրա հարստությունների պահպանումը (հոդված 67) և այլն։*

*Հասարակության և պետության կողմից մարդու արժանապատվությունն ապահովող պայմանների ստեղծումն ու դրանց իրավական վավերագրումը, այնուամենայնիվ, հարցի սոսկ մի կողմը՝ դրա հասարակական ճանաչումն են դրսևորում։ Հարցի մյուս, ոչ պակաս կարևոր կողմը անձի՝ սեփական արժանապատվության գիտակցումն ու դրա ամենալայն, ամենաակտիվ գործնական դրսևորումն է։ Մարդու արժանապատվությունը, ինչպես և նրա ողջ էությունը ոչ թե վերացական, այլ կոնկրետ հասկացություն են և դրսևորվում են նրա բոլոր գործողությունների, անմիջական արարքների, կենսադիրքորոշման միջոցով։ Եվ քանի որ մարդը միաժամանակ սոցիալական ամենաբազմազան կոլեկտիվների (ընտանիքի, արտադրական, ուսումնական, տվյալ վայրի բնակչության, ազգի, սոցիալական խմբի, սոցիալական համակարգի) անդամ է, նրա անձնական արժանապատվությունը դրսևորվում է այդ բոլոր հավաքականությունների նկատմամբ՝ իր վարքագծի միջոցով։*

*Այս իսկ իմաստով կարելի է խոսել մարդու անձնական արժանապատվու-*

թյան այնպիսի դրսևորումների մասին, ինչպիսին են՝ սոցիալական, ազգային, ինտերնացիոնալ, պրոֆեսիոնալ, ընտանեկան արժանապատվությունները։ Բայց սա ամենևին էլ չի նշանակում մարդու արժանապատվության տարանջատում, բաժանում միմյանցից մեկուսացած արժանապատվությունների, այլ ըստ էության նշանակում է դրա բոլոր բաղադրիչների կոնկրետ դրսևորում այս կամ այն կոլեկտիվին հատուկ հարաբերությունների ու գործողությունների միջոցով՝ որպես ընդհանրական մարդկային արժանապատվություն։

Փորձենք անդրադառնալ մարդու արժանապատվության երկու ընդհանրական դրսևորումների՝ ազգային և ինտերնացիոնալ արժանապատվության որոշ հարցերին։ Ազգայինն ու ինտերնացիոնալը հասարակական կյանքի այնպիսի երևույթներ են, որոնք առաջացել են դասակարգերի ծագման հետ միաժամանակ, հետևաբար անմիջականորեն առնչվել են դասակարգային շահերի հետ և նրանց հարաբերակցության ըմբռնումը սոցիալ-դասակարգային բնույթ է ստացել։ Շահագործող դասակարգերը, մասնավորապես բուրժուազիան, ազգային շահերը նույնացրել են իրենց նեղ դասակարգային շահերի հետ, ազգայինը հակադրել են համամարդկայինին և արմատավորել նացիոնալիզմ, այսինքն՝ ազգերի հակադրությունն ու անհավասարությունը, ազգային էգոիզմն ու հակամարտությունը հավերժացնող գիտակցություն։ Միայն արդյունաբերական պրոլետարիատն էր, որ կարողացավ դրսևորել ազգայինի ու համամարդկայինի զուգակցման ունակություն ու գիտակցություն, և նրան ներհատուկ այդ հատկանիշները Մարքսը, Էնգելսը և Լենինը գիտականորեն մշակեցին որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի՝ բոլոր ազգերի ու ազգությունների հավասարության, մարդկության սոցիալական լիակատար ազատագրության համար բոլոր ազգերի, ազգությունների ու ռասաների աշխատավորների համախմբման և միավորման սկզբունք։

Ինչպես ժամանակին նշել են մարքսիզմ-լենինիզմի դասականները, իսկական ազգային, այսինքն՝ ամբողջ ազգության ընդհանուր շահերն արտահայտող գաղափարները, և իսկական ինտերնացիոնալ, այսինքն՝ աշխատավորների, ըստ էության ողջ մարդկության համահավաք ընդհանուր շահերն արտահայտող գաղափարները միմյանց չեն հակասում, ավելին, դրանք համընկնում են։ Սակայն դրանց համընկնումը և ներդաշնակ միասնությունը հնարավոր են միայն այնպիսի հասարակարգում, ուր վերացված են ո՛չ միայն դասակարգային, այլև ազգային անհավասարություն ու հակամարտություն ծնող պայմանները։ Ահա այդպիսի հասարակարգ է ձևավորվել մեր երկրում, ուր ժողովուրդն այսօր կազմված է համասեռ աշխատավորական դասակարգերից ու խավերից և ուր ազգերի փաստական հավասարության ու եղբայրական դաշինքի հիման վրա առաջ է եկել մարդկանց պատմականորեն նոր հանրությունը՝ սոցիալապես միասեռ և ինտերնացիոնալ համախմբված սովետական ժողովուրդը։

Սոցիալիստական ապրելակերպի, սովետական մարդու և սովետական ժողովրդի կազմավորման պրոցեսը միաժամանակ նշանավորում է հասարակության բոլոր անդամների, սոցիալական խավերի, դրանցում ընդգրկված բոլոր սոցիալ-էթնիկական հանրությունների ինքնագիտակցության, ինքնագնահատման, ինքնահսկողության, մարդկային արժանապատվության ըմբռնման մի նոր, ավելի բարձր աստիճան։ Այդ նոր աստիճանը մասնավորապես դրսևորվում է նաև մարդու գիտակցությունում ազգայինի ու ինտերնացիոնալի ներդաշնակ զուգակցման մեջ։ Ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, սովետական մարդը, լինելով ջերմագին հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ։

Ահա այս երկու կողմերի՝ հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի կյանքում արմատավորված միասնությունն է սոցիալիստական ազգային և ինտերնացիոնալ արժանապատվության ներդաշնակ զուգակցման հիմքը։

Մեր կյանքը լի է ազգային ու ինտերնացիոնալ արժանապատվության ներդաշնակ զուգակցման անհամար փաստերով։ Այդ փաստերը լայնորեն հայտնի են։ Եվ այդ պատճառով էլ այսօր, թերևս, ավելի կարևոր է բացահայտել այն երևույթները, որոնք հակասում են մեր պրակտիկային ու գիտակցությանը, հենվում են իրենց դարն ապրած ու հնացած, մեր կյանքին անհարիր ըմբռնում-



ների վրա և նսեմացնում են սովետական մարդու ազգային ու ինտերնացիոնալ արժանապատվությունը։

Այդպիսի մոտեցումը բխում է մեր երկրի ղեկավար ուժի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության սկզբունքների ոգուց, կուսակցություն, որը ձգտում է ուշադրությունը սևեռել չլուծված խնդիրների, կնճռոտ հարցերի ու թերությունների վրա, մշակելով դրանք հաղթահարելու արդյունավետ եղանակներ։ Այդպես է վարվել ու վարվում մեր կուսակցությունը, և դրա փայլուն վկայություններից են, մասնավորապես, ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտրոնական կոմիտեի վերջին որոշումները։

Քննարկվող հարցերի առնչությամբ հատկապես կարևոր է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը։ Իր այդ որոշմամբ ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դնում՝ «Սովետական բոլոր մարդկանց համակել սոցիալիստական հայրենիքի համար հպարտության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության զգացումով, ազգային արժանապատվության ու ազգային մշակույթի նկատմամբ հարգանքով, նացիոնալիզմի ամեն մի դրսևորման նկատմամբ անհանդուրժողականությամբ, նպաստել սովետական մեծ ժողովրդի միասնության ու համախմբվածության առավել ամրապնդմանը»։

Ակնհայտ է, որ որոշման մեջ խոսքը նշված զգացումների առաջացման ու ձևավորման մասին չէ, քանի որ հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ներդաշնակ զուգակցումը վաղուց արդեն դարձել է սովետական մարդկանց հոգևոր կերպարի բաղադրատարրը, իրենց ամենօրյա գործունեությամբ ու վարքով նրանք ապացուցում են դա՝ արժանանալով ողջ առաջավոր մարդկության հարգանքին։

Խոսքը, ըստ էության, այդ զգացումների հետագա խորացման ու ամրապնդման, հասունացող սերնդի գիտակցության մեջ դրանք ավելի արդյունավետ և հիմնավոր արմատավորելու, սովետական մարդկանց գիտակցության, գործունեության մեջ և վարքում դրանց թյուրըմբռնումները կամ հակասող երևույթները բացահայտելու և հաղթահարելու, վերջապես՝ սովետական ժողովրդի կյանքում ազգայինի ու ինտերնացիոնալի միասնության, դրանց զարգացման ու անշեղ մերձեցման միասնական պրոցեսի բուրժուական աղավաղումներն ու կեղծումները, նրանց հակասովետական պրոպագանդայի հերյուրանքները մերկացնելու մասին է։

Ազգային ու ինտերնացիոնալ արժանապատվությունը և դրանց օրգանական բաղադրատարր ազգային ու ինտերնացիոնալ հպարտությունը, համընդհանուր լինելով, դրսևորվում են կոնկրետ անհատների ու կոնկրետ ժողովուրդների կյանքում, ուստի փորձենք բացահայտել, թե ինչ փոփոխություններ են տեղի ունեցել հայ ժողովրդի ազգային հպարտության զգացմունքի մեջ և որոնք են այն նոր կողմերը, որ մեր ազգային հպարտությունն այսօր նոր որակ են դարձնում ու ներդաշնակ զուգակցում առաջավոր մարդկության ինտերնացիոնալ հպարտության հետ։

Արժանապատվություն ու հպարտություն ունենալու համար մարդը և ժողովուրդը պետք է օժտված լինեն ո՛չ միայն արժանիքներով, այլև ազատությամբ՝ այդ արժանիքներն իմաստավորելու և դրսևորելու համար։ Բայց հազարամյակների պատմական ուղի անցած, մարդկային քաղաքակրթության զարգացման մեջ իր ուրույն ավանդը մուծած, նյութական ու հոգևոր մշակույթի բազում հոյակապ գանձեր ստեղծած, բազմադարյան ինքնատիպ գիր ու գրականություն և մի շարք առաջավոր ավանդույթներ ունեցող հայ ժողովուրդը ոչ հեռու անցյալում գտնվում էր սոցիալական ու ազգային ծանր լծի տակ։

Եվ ինչո՞վ այդ օրերին հպարտանար սեփական պետականությունից զրկված, մասնատված, անընդհատ սրատվող, մեծամասնությամբ անգրագետ և իր իսկ գանձերին անհաղորդ ժողովուրդը, երբ օրակարգի հարց էր դարձել նրա լինել չլինելու, բուն իսկ ֆիզիկական գոյության խնդիրը։ Անշուշտ, մյուս ժողովուրդների առաջադեմ խավերին այն ժամանակ էլ հայտնի է եղել հայ ժողովրդի աշխատասիրությունն ու տաղանդը, իր ազատագրության համար պայ-

քարելու, ապրելու և հարատևելու անկոտրում կամքը: Բայց դա բավարար չեղավ, որպեսզի հայ ժողովուրդը միայն իր սեփական ուժերով հասներ ազգային և սոցիալական ազատագրության: Դա հնարավոր եղավ միայն այն ժամանակ, երբ հայ ժողովրդի հայրենասեր ուժերը, նրա աշխատավոր զանգվածները կարողացան դաշնակցել ռուս մեծ ժողովրդի և Ռուսաստանի մյուս ժողովրդների առաջադեմ ուժերի, մասնավորապես բանվոր դասակարգի հետ, և, ի վերջո, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ձեռք բերին սոցիալական ու ազգային ազատություն և կամավոր միավորվեցին սովետական սոցիալիստական կարգեր հաստատած մյուս ժողովուրդների հետ: Սոցիալիզմի հաստատումն ու զարգացումը հանգեցրեց հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական հարաբերությունների, քաղաքական կարգի ու հոգևոր աշխարհի արմատական վերափոխման: Եվ այդ իրողությունն է, որ աշխարհին այսօր հայտնի է որպես հայ ժողովրդի վերածնունդ, որպես սոցիալիզմի իսկական հրաշքներից մեկը:

Ահա այս իրողությունների շնորհիվ է ստեղծվել մեր ազգային արժանապատվության ու հպարտության նոր որակը, նոր մակարդակը, որն օրգանապես խարսխվում է սովետական մեծ ժողովրդի սոցիալիստական ինտերնացիոնալ արժանապատվության ու հպարտության վրա:

Մենք, հիրավի, հպարտանում ենք թե՛ մեր անցյալի, թե՛ առավել ևս, ներկայի հասումներով, որոնք այսօր մեզ դարձրել են մարդկության սոցիալական առաջընթացի առաջին շարքերում քայլող, մարդկության երջանիկ ապագայի համար պայքարող ժողովուրդներից մեկը, հպարտանում ենք այն կոնկրետ իրողություններով, որոնք պայմանավորել են այդ նոր պատմական դերը:

Անցյալ դարասկզբին մեր ժողովրդի լավագույն զավակներն իմաստնություն ունեցան հասկանալու այն ժամանակ սոցիալական մեծ վերափոխումների նախօրյակին գտնվող և Արևելքի համար իսկապես պրոգրեսիվ դեր կատարող Ռուսաստանի նշանակությունը հայ ժողովրդի պատմական գոյավիճակի համար, նպաստեցին Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորելու գործին, դրանով իսկ ֆիզիկական բնաջնջումից փրկելով ժողովրդի մի ստվար զանգվածը և նրան կապելով Ռուսաստանում հզորացող առաջադիմական շարժման հետ: Ինչպես ցույց տվեց պատմության հետագա ընթացքը, դա բախտորոշ եղավ հայ ժողովրդի հետագա առաջընթացի համար:

Մենք այսօր իրավամբ հպարտանում ենք այդ պատմական իրադարձության ռահվիրաներով՝ Խաչատուր Աբովյանով և բազմաթիվ հայտնի ու անհայտ հերոսներով: Եվ պատահական չէ, որ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը մեր ժողովուրդը նշեց որպես նրա ազատագրության կարևորագույն շրջադարձերից մեկը:

Անցյալ դարի կեսերին Ռուսաստանում ծավալված հեղափոխական պայքարի, ինչպես և հայ ժողովրդի ազատագրական մաքառումների բովում կոփվեց ու հանդես եկավ Միքայել Նալբանդյանը՝ ազատության երգիչն ու մարտիկը, որը դարձավ ռուս մեծ հեղափոխական դեմոկրատներ Գերցենի ու Չերնիշևսկու գաղափարակիցն ու աննկուն զինակիցը, գլխավորեց հայկական հեղափոխական-դեմոկրատական և ազգային-ազատագրական շարժումը: Նա հանճարեղորեն կռահեց, որ Ռուսաստանի ազատագրությունը ֆեոդալիզմի ու ցարիզմի կապանքներից «մեծ խորհուրդ» ունի ամբողջ մարդկության ու առավել ևս հայ ժողովրդի ճակատագրի համար և իր շողշողուն տաղանդն ու տառապալի կյանքը զոհաբերեց ժողովուրդների ազատագրության պայքարին:

Մենք այսօր իրավամբ հպարտանում ենք Միքայել Նալբանդյանով ու նրա շավղով ընթացած բազմաթիվ գործիչներով, որոնք ամուր հող ստեղծեցին հայ ժողովրդի սոցիալական ու ազգային ազատագրության գործը հեղափոխական հունով վարելու համար:

Օրինաչափ է, որ անցյալ դարի վերջերին մեր ժողովրդի լավագույն զավակները, նալբանդյանական շավղից բարձրանալով, համախմբվեցին մարքսիզմի՝ աշխատավոր ու ճնշված մարդկության սոցիալական ազատագրության գաղափարախոսության դրոշի ներքո: Այդ ուսմունքի ու շարժման անձնուրաց ջահակիրներն էին Ստեփան Շահումյանը, Բոգդան Կնունյանցը, Սուրեն Սպանդարյանը, Ալեքսանդր Մյասնիկյանը, Սարգիս Կասյանը, Սարգիս Սրապիոնյանը



(Լուկաշինը), Դանուշ Շահվերդյանը, Անաստաս Միկոյանը և շատ ուրիշներ, որոնք դարձան մեծ Լենինի հավատարիմ զինակիցները, կոմունիստական շարժման ու սոցիալիստական հեղափոխության բոցաշունչ մարտիկներ, ժողովուրդների բարեկամության ու ինտերնացիոնալ համախմբման կազմակերպիչներ ու արժանացան եղբայրացած ժողովուրդների բուռն սիրուն ու երախտագիտության: Նրանց պայքարը և հայ ժողովրդի բազմաթիվ զավակների մասնակցությունը մարդկության նոր արշալույս բացած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությանը մեր նորոգ ազգային հպարտության փայլուն կռվաններից մեկն է այսօր:

Եվ այսօր մենք իրավամբ հպարտանում ենք 1917 թ. Հոկտեմբերով ու Հայաստանում սովետական կարգերի հաստատմամբ, որով հայ ժողովրդի զգալի հատվածը փրկվեց բնաջնջումից, մեզ բերելով սոցիալական ու ազգային ազատագրություն, իրական ազգային սոցիալիստական պետականություն, սոցիալ-տնտեսական կյանքն արմատապես վերափոխելու, տնտեսության, գիտության ու մշակույթի բնագավառում ամենազարգացած ժողովուրդներին հասնելու, իր հողմացրիվ զավակներին հայրենի ազատ հողի վրա հավաքելու երջանիկ հնարավորություն, որն այսօր մեր ժողովրդին առավել կորովի ու լավատես, կենսուրախ և իրոք արարչագործ է դարձրել:

1920 թ. նոյեմբերին սոցիալիստական կարգերի հաստատումով վերականգնվեց հայ ժողովրդի կորցրած պետականությունը ազգային սովետական սոցիալիստական հանրապետության ձևով, որը 1922 թ. մյուս սովետական հանրապետությունների հետ միավորվեց ժողովուրդների կամավոր պետական դաշինքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ: Դա հնարավորություն ընձեռեց՝ լուծելու ժողովրդի սոցիալական ու ազգային զարգացման էական հարցերը, ապահովելու նրա խաղաղ գոյությունը և եղբայրական համագործակցությունը ՍՍՀՄ-ի ու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մյուս ժողովուրդների հետ, արժանավայել ներկայացնելու հայ ժողովրդին միութենական և միջազգային ասպարեզներում:

Այսօր հայ ժողովուրդը խորապես հպարտանում է իր սովետական սոցիալիստական պետականությամբ և ջանում բարձր պահել իր վերածնված ու բարգավաճ հայրենիքի պատիվը:

Սովետական սոցիալիստական հայկական պետականությունը, հենվելով ՍՍՀՄ-ի հավաքական ուժի վրա, կարողացավ ձեռնամուխ լինել համազգային-պատմական այնպիսի կարևոր խնդրի լուծման, ինչպիսին հայ ազգի հետագա կոնսոլիդացիան՝ նրա աճն ու համախմբումն է իր հայրենի երկրում: Սովետական կարգերի հաստատմամբ սկսվեցին նրա նորմալ աճն ու բարօրությունը: Այսպիսով, դարեր շարունակ կրկնվող արտագաղթը փոխարինվեց ներգաղթով, կենտրոնացումով հայրենի հողի վրա: Ահա թե ինչու մենք այժմ հպարտանում ենք, որ Սովետական Հայաստանը հայ ժողովրդի հարատևության անսասան հիմքն է, ամբողջ աշխարհի աշխատավոր հայերին միավորող ու պայծառ ապագայի իրական հույս տվող կենտրոնը:

Օրինական հարց է ծագում՝ կարո՞ղ էր արդյոք այդպիսի վիթխարի համազգային խնդիր լուծել փոքրիկ, հետամնաց ու փաստորեն միայնակ երկիրը, ինչպիսին էր Հայաստանը սովետական կարգեր հաստատելու նախօրյակին: Պատասխանը մեկն է՝ երբեք: Բայց դա հնարավոր դարձավ, որովհետև Սովետական Հայաստանը որպես զարգացման ուղի որդեգրեց սոցիալիզմը, սովետական մյուս հանրապետությունների եղբայրական օգնությամբ ու համագործակցությամբ արմատապես վերափոխեց ու չտեսնված չափերով զարգացրեց արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, երկրի գանձերն ի սպաս դրեց ժողովրդի բարգավաճմանը: Վաթսուն տարում հանրապետության արդյունաբերական արտադրանքն աճել է ավելի քան 330 անգամ, և այժմ Հայաստանը հանդիսանում է բարձր զարգացած ինդուստրիալ-ագրարային երկիր, որն իր արտադրանքի 170 տեսակներ, այդ թվում ժամանակակից սարքեր ու մեքենաներ է արտահանում աշխարհի ավելի քան 80 երկրներ:

Սոցիալիստական ժողովրդական տնտեսության խոշոր հաջողությունները հնարավորություն են ընձեռել լուծելու այնպիսի համազգային տնտեսական

խնդիրներ, ինչպես տասնյակ հազարավոր հեկտար անապատների ու քարքա-
րոտ հողերի վերածումը ծաղկած այգիների, Սևանա լճի մակարդակի բարձրաց-
ման համար Արփա—Սևան՝ աշխարհի խոշորագույն ստորգետնյա ջրատարնե-
րից մեկի կառուցումը, լերկ լեռնալանջերի անտառապատումը և այլն։ Հզոր
արդյունաբերությունն ու Միության բոլոր ծայրերից ստացվող նորագույն տեխ-
նիկան մեծապես նպաստում են բնության պահպանմանը, դրա հետագա բա-
րելավմանն ու վերափոխմանը։

Հետամնացությունից դեպի արդի բարձր մակարդակ, բարգավաճում—
այսպիսին է մեր ժողովրդի սոցիալ-տնտեսական առաջընթացի ուղին։

Սոցիալիզմի զարգացումը հանգեցրեց Սովետական Հայաստանի բնակչու-
թյան սոցիալական կազմի որակական փոփոխության։ Գյուղում թե քաղաքում
սոցիալիստական տնտեսաձևն է իշխում։ Հայ ժողովուրդը, ինչպես ամբողջ սո-
վետական ժողովուրդը, այժմ վերածվել է սոցիալապես համասեռ խավերից
կազմված ազգի։ Բնական է, որ արմատապես վերափոխվել է նաև ազգի հոգևոր
կերպարը, նա տոգորված է մարքսիզմ-լենինիզմով։ Այն դարձել է սոցիալիս-
տական ազգ, եղբայրական, սովետական բոլոր սոցիալիստական ազգերի հա-
մագործակցությամբ կոմունիզմ է կառուցում։ Սա ևս մեր ազգային ու ինտեր-
նացիոնալ հպարտության մեծարժան ազդակներից մեկն է։

Այստեղ անհրաժեշտ է հիշատակել այն վեհացնող գնահատականը մեր
ժողովրդին, որը տվեց Լ. Ի. Բրեժնևը Սովետական Հայաստանի հիսնամյակի
տոնի առթիվ։ Նա ասաց. լինելով Հայաստանում, մենք նախ և առաջ նկատե-
ցինք բարձր կուլտուրան, կենցաղում, մարդկանց հետ շփվելիս ունեցած կուլ-
տուրան, աշխատանքային կուլտուրան, գիտական մտքի բարձր թռիչքը և ար-
վեստի վառ ինքնատիպությունը, երկրորդ՝ հայրենասիրություն, ջերմ սեր իր
հայրենի երկրի՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանի նկատմամբ, որն
ամենախորին հարգանք է ներշնչում։ Մյուս բնորոշ հատկանիշն իր ժողովրդի,
իր հանրապետության հայրենասիրական ոգին ընդհանուր մեծ սոցիալիստական
հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության
նկատմամբ նվիրվածության ու սիրո հետ զուգակցելն է։ Սրանք իրոք ազատ
ու հավասար սոցիալիստական ազգի բնորոշ հատկանիշներն են, որոնցով մենք
իրավամբ հպարտանում ենք։

Սովետական իշխանության հաստատման նախօրյակին գրագետ էր երկրի
բնակչության սոսկ 15,3 տոկոսը, ընդ որում, նրանց մեջ համեմատաբար բարձր
կրթություն ունեցողների մի զգալի մասը չգիտեր իր մայրենի լեզուն։ Գաղու-
թացումը և ազգային պետականության վերացումը սահմանափակել էին հայոց
լեզվի՝ կարևոր սոցիալական ֆունկցիաների (քաղաքական-պետական հարաբե-
րությունների, տնտեսության, բարձրագույն կրթության) միջոց լինելու հնարա-
վորությունները։ Սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո հա-
յերենը հռչակվեց նորաստեղծ հանրապետության պաշտոնական լեզու, հիմնա-
դրվեցին Երևանի պետական համալսարանը, 10-ից ավելի այլ բարձրագույն և
բազմաթիվ միջնակարգ մասնագիտական ու հանրակրթական դպրոցներ։ Այսօր
Սովետական Հայաստանի բնակչությունը ո՛չ միայն համատարած գրագիտու-
թյան է հասել իր մայրենի լեզվով, այլև իր կրթական մակարդակով բարձր է
համաշխարհային միջինից. 1976 թ. Սովետական Հայաստանի ողջ բնակչության
կեսից ավելին (57,4 տոկոսը), իսկ ժողովրդական տնտեսության մեջ զբաղ-
վածների երեք քառորդից ավելին (78,6 տոկոսը) ուներ բարձրագույն և միջնա-
կարգ (լրիվ և թերի) կրթություն։ Այսպիսի մասսայական կրթությունը նպաս-
տում է բնակչության սոցիալական խավերի ստիճանական մերձեցմանն ու
նրանց միջև զարգացման մակարդակների համահարթմանը։ Եվ դա այսօր մեր
սոցիալիստական ազգային հպարտության կռվաններից է։

Հայտնի է, որ մեր ժողովրդի անցյալի կուլտուրական ժառանգության հար-
ցում կային այնպիսի խնդիրներ, որոնք պայմանավորված էին նրա պատմու-
թյան յուրահատկություններով։ Բազմադարյան գաղութայնացման, թալանի ու
ավերումների հետևանքով, ժողովրդի ու նրա հանճարների ստեղծած կուլտու-
րական բազմաթիվ արժույթներ ոչնչացվել, ավերվել ու կողոպտվել էին, ցրվել
աշխարհի բոլոր ծագերում։ Վերջապես, խեղճ, հետամնաց ու անգրագետ ժողո-



վըրդական զանգվածներն անհաղորդ էին սեփական ժողովրդի կուլտուրական
հասումներին։

Սովետական սոցիալիստական պետականություն ստեղծած հայ ժողովուրդը
ՍՍՀՄ-ի բոլոր ժողովուրդների և միութենական կառավարության ամենալայն
աջակցությամբ կարողացավ պետականորեն լուծել նաև այդ համազգային հար-
ցերը։ Դրա փայլուն դրսևորումներից մեկն էր Սովետական Ռուսաստանի կա-
ռավարության կողմից Մոսկվայում, Լենինգրադում և այլ քաղաքներում գըտ-
նըվող հայկական մշակույթի մեծաթիվ արժույթների՝ ձեռագրերի, գրքերի, կեր-
պարվեստի գործերի, արխիվների նվիրումը Սովետական Հայաստանին։ Այսօր
անցյալի նյութական կուլտուրայի բոլոր հուշարձանները Հայաստանում գտնվում
են պետության խնամքի ու պահպանության ներքո, վերականգնվել ու իրենց
նախածին տեսքով կրկին ամբողջացել են բազմաթիվ հոյակապ կառույցներ,
որոնցից շատերը դարեր շարունակ թաղված էին հողի տակ կամ ավերակներ
էին։ Օտար ափերից ահա վեց տասնամյակ հայրենիք են վերադառնում մագա-
ղաթյա ձեռագրեր, հնատիպ գրքեր, արվեստի բազմաթիվ ստեղծագործություն-
ներ ու կենտրոնանում ամբողջ աշխարհում մեծ հռչակ վայելող Մատենադարա-
նում, պատկերասրահներում ու գրադարաններում։ Սրանք ևս մեր հպարտության
իրական արժույթներ են։

Այո՛, մենք հպարտանում ենք և կհպարտանանք անցյալի կուլտուրական
ժառանգության այդ վերստեղծումով ու կենտրոնացումով։ Եվ ավելի ենք հպար-
տանում, որ անցյալ ու ներկա մշակույթի հանճարների ստեղծագործություն-
ներն այսօր ոչ թե մի բուռ ընտրյալների, այլ ամբողջ ժողովրդի իմացության
առարկա են, որ Մաշտոցի ու Նարեկացու, Խորենացու ու Անհաղթի, Շիրակացու
ու Հերացու, Ֆրիկի ու Քուչակի, Աբովյանի ու Նալբանդյանի, Սայաթ-Նովայի
ու Թումանյանի, Սիամանթոյի ու Վարուժանի, Չարենցի ու Սևակի, Կոմիտասի
ու Խաչատրյանի, Ռոսլինի ու Սարյանի և շատ ուրիշների երկերը գիտեն մեծից
մինչև փոքրը։

Անցած վեց տասնամյակում Սովետական Հայաստանն ավերակների ու
ցեխափոր տների երկրից վերածվել է բարեկարգ ու գեղեցիկ քաղաքների ու
գյուղերի երկրի, որոնց հին ու նոր ճարտարապետական կոթողները՝ Ալեքսանդր
Թամանյանի կերտած Լենինի հոյակապ հրապարակի անսամբլը, օպերային
թատրոնի հազվագյուտ կառույցը, «Հրազդան» մարզադաշտը, Սարդարապատի
և Եղեռնի հուշահամալիրները, նորաստեղծ Աբովյանը, Կիրովականը, Հրազդա-
նը և տասնյակ այլ քաղաքներ, Գառնին ու Գեղարդը, Էջմիածինն ու Մեծամորը
մեր երկիրն իսկապես դարձրել են ճարտարապետության ու արվեստի թանգա-
րան բաց երկնքի տակ։ Զուր չէ, որ մեր ժողովուրդը հայտնի է եղել որպես կա-
ռուցող ու շինարար, բայց դարեր շարունակ նրա ստեղծած շինությունների
ավերվել ու կործանվել են։ Եվ ահա վեց տասնամյակ սոցիալիզմի պայմաննե-
րում ժողովուրդը կառուցում է և ոչ մի ոսոխ չի ավերում ու փշրում այդ կա-
ռույցները, որովհետև սովետական ժողովուրդների եղբայրական հզոր միու-
թյունը հայ ժողովրդին ամրակուռ պաշտպանություն է ապահովել։ Եվ մենք հո-
գեկան խանդաղատանք ենք ապրում ժողովրդի այս անձեռակերտ ու հավեր-
ժական կոթողների համար։

Մեզ օրինական հպարտություն է ներշնչում այն իրողությունը, որ Սովե-
տական Հայաստանն ընթանում է համաքայլ եղբայրական հանրապետություն-
ների գիտության ու մշակույթի երթում։ Սոցիալիստական ու կուլտուրական
աննախադեպ վերափոխումները չէին կարող չհանգեցնել ժողովրդի ծոցում
թաքնված տաղանդների բուռն ծաղկման։ Հիրավի, սովետական իշխանության
տարիներին, լիակատար պայմաններ են ստեղծված մեր հանրապետությունում,
ուր բուռն զարգանում են գիտության, արվեստի, կուլտուրայի բոլոր ճյուղերը։
Այդ ամենը մեր ազգային ու ինտերնացիոնալ հպարտության կռվաններն են։
Մենք հպարտանում ենք ու կհպարտանանք, որ անցած 60 տարիներում մեր
ժողովուրդը մայրենի լեզվով ուսումնասիրում է ո՛չ միայն աշխարհի գիտության
ու արվեստի անմեռ երկերը, այլև իր ողեգրած ամենաճշմարիտ ու ամենա-
առաջավոր աշխարհայացքի հարուստ գանձերը մարմնավորող՝ Մարքսի, Էնգել-
սի ու Լենինի հիմնարար աշխատությունները։ Պատշաճ հռչակ է վայելում Սո-

վետական Հայաստանում այսօր գործող գիտությունների ակադեմիան, հարյուրից ավելի գիտահետազոտական հիմնարկություններ՝ 20 հազար գիտական աշխատողներով: Մենք հիրավի հպարտանում ենք դրանով, ինչպես և այն բանով, որ մեր գիտնականներն այսօր գիտական հաղորդումներով ու դասախոսություններով հանդես են գալիս Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Թբիլիսիում, Փարիզում, Լոնդոնում, Նյու-Յորքում և գիտության այլ համաշխարհային կենտրոններում, որ Երևանն էլ այսօր դարձել է մի այդպիսի կենտրոն, ուր գիտության մի շարք նորագույն բնագավառների պրոբլեմների շուրջ միջազգային գիտական համաժողովներ են տեղի ունենում:

Դարեր տևած գաղութացման պայմաններում հայ ժողովուրդը երբեք չհաշտվեց ստրուկի անարգ վիճակի հետ և անկոտրում շարունակեց ազգային-ազատագրական պայքարը: Եվ այդ պայքարը, անխուսափելի կորուստների ու բազում զոհերի հետ միասին, հնարավորություն ընձեռեց ապահովելու ժողովրդի գոյատևումը, խաղաղության ամենափոքր իսկ պահերին նրա ստեղծագործ ու շինարարական աշխատանքը, և ի վերջո, հասցրեց այսօրվա պայծառ ներկային: Դա ավելի քան 15 դար տևած պայքար է, որի խոշորագույն նշանաձողերն են հինգերորդ դարում Ավարայրի ճակատամարտը, որը վճռական եղավ ժողովրդի ինքնության պահպանման համար, VIII—IX դարերի ապստամբություններն արաբական լծի, XVIII դարում Դավիթ Բեկի գլխավորած ապստամբությունը պարսից լծի դեմ, 1862 թ. Զեյթունի և 1915 թ. Վանի հերոսական պաշտպանությունները թուրքական ջարդարարներից, 1918 թ. Սարդարապատի հերոսամարտը, 1920 թ. Մայիսյան ապստամբությունը:

Հայ ժողովրդի համահավաք գոյության և նրա պետականության վերջին սպառնալիքը ֆաշիստական հորդաների ուխտադրուժ ներխուժումն էր Սովետական Միություն 1941 թվականին: 1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմում հայ ժողովուրդը, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին, դրսևորեց անկախ ու ազատ ապրելու իր աննկուն կամքը, իր անդավաճան նվիրվածությունը նրան փրկություն ու վերածնունդ բերած սովետական կարգերին ու ժողովուրդների սոցիալիստական դաշնադրությանը: Այդ հերոսամարտում սովետական բոլոր ժողովուրդների նման հայ ժողովուրդը ևս դրսևորեց իր լավագույն մղումները՝ սոցիալիստական համակեցությամբ ամրապնդված իր բարոյաքաղաքական միասնությունը, անձնվիրությունը, հերոսությունն ու անձնազոհությունը: Հարյուր հազարավոր հայ մարտիկներ անձնուրաց մարտնչեցին և իրենց պսակեցին անմար փառքով: Հայկական 89-րդ Թամանյան հրաձգային դիվիզիան՝ Կերչի մատույցներից հասավ մինչև Բեռլին և ֆաշիստների ջախջախված որջի վրա ամրացրեց հաղթանակի դրոշը: Տասնյակ հազարավոր հայ ռազմիկներ պարգևատրվեցին մարտական շքանշաններով, 106 արտակարգ սխրանքներ կատարողներ արժանացան Սովետական Միության հերոսի կոչման, իսկ անվեհեր օդաչու Նելսոն Ստեփանյանը՝ կրկնակի հերոսի կոչման: Պատերազմի ընթացքում հայ ժողովրդի ծոցից ելան բազմաթիվ տաղանդավոր զորավարներ, որոնցից 60-ը դարձան սովետական բանակի գեներալներ, իսկ Հովհաննես Բաղրամյանը՝ Սովետական Միության մարշալ, Հովհաննես Իսակովը՝ Սովետական Միության նավատորմի ծովակալ, Համազասպ Բաբաջանյանը՝ զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ, Խանփերյանցը (Խուդյակով) ավիացիայի մարշալ: Մեր բարգավաճող ու օրավուր հզորացող ժողովուրդն արժանին է մատուցում իր ազատագրության ու ինքնության պահպանման զոհերին ու հերոսներին, որոնց հիշատակը հավերժացնող կոթողներ են կանգնեցված ամենուրեք:

Ահա սրանք են այն նոր կռվանները, որոնք հիմք են տալիս այսօր հպարտանալու մեր անցյալի ու ներկայի համար, արժանապատվորեն ներկայանալու աշխարհին և ամենուր հարգանք վայելելու: Դա առավել ևս պարտավորեցնում է, որ չհանգչենք դափնիների վրա, որ Սովետական Հայաստանի 60-ամյակի նախաշեմին ո՛չ միայն նշենք մեր հասումները, այլև մինչև վերջ բացահայտենք այն բոլոր խաթարումներն ու թերությունները, որոնք խանգարում են հետագա առաջընթացին, նսեմացնում երկարատև ու դժվարին պայքարով, համառ ու քրտնաջան աշխատանքով մեր վաստակած բոլոր ժողովուրդների հարգանքն ու



պատիվը: Առավել ևս չպետք է մոռացության տանք, որ հայ ժողովուրդն այդ հաջողություններին չէր հասնի, եթե լիներ միայնակ ու մեկուսացած, եթե չլինեին սոցիալիզմի ուղին ընտրած մեր և մյուս երկրների ինտերնացիոնալ համերաշխությունը, եղբայրական փոխօգնությունն ու փոխհարստացումը՝ կյանքի բոլոր բնագավառներում:

Մենք բարձր ենք գնահատում և իրավամբ հպարտանում ենք այդ դաշինքով, համագործակցությամբ ու միասնությամբ, որը հազարապատիկ մեծացնում է մեր հնարավորությունները: Դրանում առանձնահատուկ դեր են խաղում կյանքի բոլոր բնագավառներում համամիութենական ասպարեզ դուրս գալը և ազգամիջյան հաղորդակցության լեզու դարձած ռուսաց լեզվի լայն օգտագործումը, որն այսօր մեր ժողովրդի մեծամասնության երկրորդ լեզուն է:

Կկարողանայի՞նք, արդյոք, մեր հանրապետության արդյունաբերությունն ու տեխնիկան հասցնել համաշխարհային բարձր մակարդակի, լայնորեն ծավալել գիտատեխնիկական հեղափոխությունը մի փոքրիկ երկրում, եթե չլինեին Միության հարյուրավոր արդյունաբերական ու գիտատեխնիկական կենտրոնների անմիջական օգնությունը, գիտության ու տեխնիկայի ամենաբազմազան բնագավառներում մեզ համար կադրերի պատրաստումը և նրանց որակավորման բարձրացումը:

Կկարողանայի՞նք, արդյոք, այդքան ականավոր գիտնականներ աճեցնել ու նրանց գործունեության համապատասխան ասպարեզ ապահովել, եթե չլինեին ՍՍՀՄ-ի բոլոր գիտական կենտրոնների, երկրի խոշոր գիտնականների հետ անմիջական համագործակցումը և նրանց բոլորի գիտական փորձն ու ինֆորմացիան փոխադարձաբար օգտագործելու ամենալայն հնարավորությունը:

Կկարողանայի՞նք, արդյոք, հարյուրավոր միլիոններ ծախսել Սևանա լճի մակարդակը բարձրացնելու, Երևանում մետրոպոլիտեն կառուցելու և այլ մեծագործությունների համար, եթե չլիներ համամիութենական պետության սատարումը:

Կկարողանայի՞նք, արդյոք, մեր հայրենի հողը, որ Սովետական Հայաստանն է այսօր, հայ ժողովրդի երեքհազարամյա պատմության մեջ առաջին անգամ ամբողջ վեց տասնամյակ զերծ պահել թշնամական հրոսակների ներխուժումներից, ավերից ու կոտորածից, ապահովել նրա խաղաղ ստեղծագործ աշխատանքը, եթե չլինեին սովետական ժողովուրդների ամրակուռ դաշինքի անհաղթելի միասնությունն ու հզորությունը:

Ինչպե՞ս կհասնեինք այս բոլորին, եթե մեզ հաղթանակների չառաջնորդեր կոմունիստների մեծագործ կուսակցությունը և մեր կյանքը չտաներ սոցիալիզմի ուղիով: Ահա թե ինչու այսօր մեր ազգային հպարտությունը նաև մեր ինտերնացիոնալ հպարտությունն է, որոնք իրար հետ օրգանական ամբողջություն են դարձել:

—

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՐԾԻՔԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Ռ. Ա. ՍԱՖԱՐՈՎ**
Իրավաբանական գիտությունների դոկտոր,
ՍՍՀՄ ԳԱ պետության և իրավունքի ինստի-
տուտի ավագ գիտաշխատող

## 1. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՐԾԻՔԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՈՒՄ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ *խարսխվում է մի ամբողջ շարք սահմանադրական սկզբունքների վրա, որոնցից մեկը հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելու վերաբերյալ սահմանադրական պահանջն է: Այդ սկզբունքի պահպանումն ու կիրառումը քաղաքականության մշակմանը, որոշումների ընդունմանը և պետական մարմինների ու սոցիալական այլ հաստատությունների նկատմամբ իրականացվող վերահսկողությանը քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների մասնակցության ապահովման էական պայմանն են: Բացահայտվող, հաշվի առնվող ու օգտագործվող հասարակական կարծիքը այն երաշխիքներից մեկն է, որը դեմոկրատիայի պայմաններում ապահովում է ամբողջ քաղաքական սիստեմի գործունեությունը:*

*Հասարակական կարծիքը քաղաքական սիստեմի համապարփակ տարրն է, որն իր ազդեցությունը տարածում է տվյալ սիստեմի բոլոր սուբյեկտների, այլ ոչ թե միայն պետական մարմինների վրա: Հասարակական կարծիքի արժեքը որոշվում է նրանով, որ այն սոցիալական հարաբերությունների և դիրքորոշումների արտահայտություն է: Հանդես գալով իբրև դեմոկրատիայի զարգացման պատմական կոնկրետ պայմանների արգասիք, հասարակական կարծիքը դառնում է այդ նույն դեմոկրատիայի ստրուկտուրայի բաղադրատարրը և ներգործում է դրա վրա: Այս իմաստով հասարակական կարծիքն ունի դեմոկրատական արժույթի տրամաբանական ու էմպիրիկ հիմնավորվածություն:*

*Հասարակական կարծիքի՝ ժողովրդի անմիջական ինքնաարտահայտման ու ինքնահաստատման այդ ինստիտուտի դեմոկրատական արժույթը որոշվում է քաղաքական սիստեմի որոշ սուբյեկտների դիրքորոշման և քաղաքական պրոցեսի կառուցվածքի վրա ազդելու նրա կարողությամբ: Այդ իսկ պատճառով հասարակական կարծիքի նկատմամբ քաղաքական սիստեմի կայուն կողմնորոշումը վերջինիս դեմոկրատաբար գործելու նախադրյալն է: Այս իմաստով «հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելը» տվյալ սիստեմի գործողության և՛ նպատակն է, և՛ միջոցը:*

*Եթե նույնիսկ հասարակական կարծիքը ոչ միշտ և ոչ բոլոր հարցերում է բացահայտվում ու հաշվի առնվում, այն չի զրկվում իր ներքին արժեքից, որն անխուսափելիորեն բացահայտվում է որոշակի իրավիճակներում: Հասարակական կարծիքը սոցիալիզմի զարգացման պատմական տևական պրոցեսի տարրն է: Դրա ինքնաարտահայտման ու դրսևորման կոնկրետ ձևերը ենթակա են փոփոխման՝ հասարակության տնտեսական բազիսում և քաղաքական վերնաշեն-*



*քում կատարվող կառուցվածքային փոփոխությունների, այսինքն՝ նրանց հետագա որակական կատարելագործման ազդեցությամբ: Տնտեսական բազիսի և քաղաքական վերնաշենքի նորմատիվային մոդելը մարմնավորված է ՍՍՀՄ նոր սահմանադրությունում: Բազիսի ու վերնաշենքի փոխառնչության մեջ միայն կարելի է ճիշտ գնահատել դեմոկրատական հարաբերությունների ինտենսիվացման գործոնները, որոնց արտահայտությունն է հասարակական կարծիքը: Այդ գործոններից են՝ հասարակության դեմոկրատական զարգացման նպատակով կոմունիստական կուսակցության գործադրած ջանքերը, հասարակական պրակտիկայով և կոմունիստական գաղափարախոսությամբ թելադրվող քաղաքական պահանջմունքների ու շահերի փոփոխվող սիստեմը, հասարակության ու նրա ինստիտուտների զարգացող քաղաքական կուլտուրան, ՍՍՀՄ նոր սահմանադրությանը համապատասխանեցվող սովետական օրենսդրությունը:*

*Հասարակական հարաբերությունների սիստեմի կատարելագործումը բխում է սոցիալիզմի տնտեսական ու քաղաքական օրենքների գործողության առանձնահատկություններից, հասարակության սոցիալական հետագա առաջընթացն ապահովելու անհրաժեշտությունից: Նշված հարաբերությունների սիստեմում կատարվող փոփոխությունները անխուսափելի են և ունեն գիտակցված նպատակամետություն: Հասարակական կարծիքի «ներխուժումը» ինչպես բազիսի ու վերնաշենքի գործունեության պրոցեսի, այնպես էլ նրանց փոխգործողության մեջ, ծառայում է իբրև զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմի դեմոկրատական կառուցվածքի իրականացման կարևոր գործոն և ունի սահմանադրական արդարացում ու հիմնավորում: Անտարակույս այդ երևույթը դեմոկրատական պրոցեսի զարգացման՝ ժողովրդի կամքի արտացոլումն է, որը տարածվում է պետության գործունեության և հասարակության կյանքի հիմնական ասպեկտների վրա: Այստեղ առանձնապես կարևորվում է հասարակական կարծիքի հարաճուն դերը սոցիալական ինքնակարգավորման ու կարգավորման ինստիտուտների համակարգում: Ճիշտ հասկացված դեմոկրատիզմը ենթադրում է ինքնակարգավորման բարձր աստիճան, ուր գործում է փոխադարձ կապը: Դեմոկրատիայի զարգացումը չի կարող շուղեկցվել ինքնակարգավորման մեխանիզմի ուժեղացմամբ: Ահա ինչու հրատապ է ինքնակարգավորման ավանդական ձևերի ու եղանակների կատարելագործման և նոր ձևերի ու եղանակների որոնման պրոցեսը, որոնք ապահովում են հասարակական հարաբերությունների վրա ներգործելու դեմոկրատական մեխանիզմի օգտագործումը:*

*Հասարակական կարծիքի արդյունավետ գործունեության պայմաններում փոխվում է նաև պետական կարգավորման կառուցվածքը, որը չի կարող տեղի ունենալ առանց տվյալ ֆենոմենի: Վերջինիս ներգրավումը այդ կառուցվածքում պայմանավորվում է այն իրողությամբ, որ հակամարտություն չկա հասարակության ու սոցիալիստական պետության միջև: Պետությունը, լինելով հասարակության ինստիտուտ, կոչված է արտահայտելու նրա պահանջմունքներն ու շահերը: Իսկ այդ խնդիրը կատարում է հենց հասարակական կարծիքը: Դրանով իսկ այն ապահովում է պետության ինստիտուցիոնալ էությունը, քանի որ վերջինս գործում է հասարակական կարծիքի վերահսկողությամբ, որն ունակ է արձանագրելու ամեն մի շեղում սոցիալական պահանջմունքներից, շահերից ու ակնկալիքներից: Եվ ո՛չ միայն արձանագրելու, այլև ձգտելու, որ պետությունը կատարի իր պարտականությունները հասարակության հանդեպ, այսինքն՝ իր ինստիտուցիոնալ ստատուսով պայմանավորված պարտականությունները:*

*Հասարակական կարծիքի դերը պետական կարգավորման պրոցեսում հանգում է հետևյալին— կարգավորող մարմիններին սոցիալական պահանջմունքներին, արժույթներին ու ակնկալիքներին ծանոթացնելուն. նրանց ֆունկցիաների իրականացմանն աջակցելուն. պետության առաջադրած խնդիրները լուծելուն. պետական մարմինների նկատմամբ վերահսկողությունն իրականացնելուն. չլուծված պրոբլեմների վրա հասարակության ուշադրությունը կենտրոնացնելուն. իրավասու մարմինների հիմնավորված նախագծերի ու պլանների, որոշումների ու գործողությունների հետ համաձայնության գոտին ընդլայնելուն. ծագող սոցիալական պրոբլեմներն ու հակասությունները դեմոկրատակա-*

նորեն լուծելու նպատակով սոցիալիզմի հնարավորություններն օգտագործելուն: Այդ իսկ պատճառով հետադարձ պայմանավորվածություն գոյություն ունի պետական կարգավորման որակի և հասարակական կարծիքի միջև: Ըստ երևույթին, նման կարգավորման որոշ թերություններ բացատրվում են հասարակական կարծիքի երբեմնի թերագնահատմամբ:

Ինչպես հայտնի է, սոցիալական զանազան պահանջմունքները, շահերն ու ակնկալիքները ենթակա են փոփոխությունների, որոնք արձանագրվում են հասարակական գիտակցության կողմից և արտահայտվում հասարակական կարծիքի միջոցով: Ըստ որում, դրանք քաղաքական սիստեմի սահմաններից դուրս չեն գալիս և համապատասխանում են դեմոկրատական հասարակության առաջադիմական իդեալներին: Դրանով իսկ քաղաքական սիստեմի գործողությունը դառնում է քաղաքակիրթ հասարակության ծնունդ հանդիսացող նորանոր պահանջմունքների, շահերի բավարարման գործունեություն: Այս առումով տվյալ սիստեմի հնարավորությունները կարող են օգտագործվել ավելի լրիվ չափով, որին և կոչ է անում մեր կուսակցությունը: Լ. Ի. Բրեժնևը բազմիցս շեշտել է զարգացած սոցիալիզմի բոլոր հնարավորությունները ճանաչելու և օգտագործելու անհրաժեշտությունը:

Հասարակական կարծիքը ներգրավվում է պետական ֆունկցիաների իրագործման բարդ պրոցեսում, դրանով իսկ հեռանկարներ բացելով պետության առաջադրած խնդիրների հաջող կատարման համար: Հարկ է նկատել, որ սոցիալական գիտությունները տակավին չեն մշակել պետական մեխանիզմի գործունեության ոլորտում հասարակական կարծիքի ինքնաներգրավման և ներգրավման լավագույն մոդելը:

Հասարակական հարաբերությունների շարունակ բարդացող սիստեմը հաճախ ծնում է կոնֆլիկտային իրավիճակներ: Ուստի կարևոր է հասարակական կարծիքը պարբերաբար բացահայտելու և հրապարակելու միջոցով ժամանակին հաշվի առնել ծագող հակասությունները: Այդ կերպ իսկ կարելի է սատարել քաղաքական սիստեմի գործունեությանը ժողովրդական համաձայնության (կոնսենսուսի) վարչակարգում: Կոնսենսուսալ հիմքի ապահովումը սոցիալիստական դեմոկրատիայի սահմանադրական կոնցեպցիայի ու դրա ռեսուրսների օգտագործման կարևոր ասպեկտներից է: Որոշումներ ընդունող պետական կենտրոններին հասարակությունից ստացված սոցիալական ինֆորմացիայի շուտափույթ հաղորդումը կարևոր դեր ունի կոնսենսուսի սատարման գործում: Ինֆորմացիայի նման հաղորդումը ապահովում է ո՛չ միայն կոնսենսուսալ ռեժիմը, այլև քաղաքական սիստեմի կայունությունը: Այլ կերպ ասած, հասարակական կարծիքը սոցիալական էներգիայի մի ուրույն վերականգնվող աղբյուր է:

Բացահայտվող, հաշվի առնվող և հրապարակվող հասարակական կարծիքը սահմանափակում է բյուրոկրատական միտումների զարգացման հնարավորությունները, որոնք անհամատեղելի են սոցիալիստական դեմոկրատիայի էության հետ: Բնական է, որ քաղաքական սիստեմի արդյունավետությունը պայմանավորված է, ամենից առաջ, նրա ներքին կառուցվածքով: Այստեղ էական է այնպիսի գործոնների առկայությունը, ինչպիսիք են քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների՝ իրենց տրված սահմանադրական իրավունքների ու ազատությունների օգտագործումը և պետական ու հասարակական մարմինների՝ իրենց վրա դրված պարտականությունների կատարումը: Փոխադարձաբար կապված այդ իրավունքների ու պարտականությունների ամբողջությունը կազմում է հասարակության և պետության փոխադարձ դեմոկրատական պահանջների համեմատաբար ինքնուրույն կոմպլեքսը: Այդ կոմպլեքսում մարմնավորված է հասարակության և պետության դեմոկրատական փոխազդեցության սահմանադրական մոդելը:

Հասարակական կարծիքի նկատմամբ վերաբերմունքի էվոլյուցիան արտացոլում է պետության և հասարակության կյանքի հետագա դեմոկրատացման պրոցեսը՝ գաղափարախոսական, քաղաքական-իրավական, սահմանադրական ամուր հիմքի վրա: ՍՍՀՄ սահմանադրության 9-րդ հոդվածում քաղաքական սիստեմի զարգացման հիմնական ուղղության ասպեկտներից մեկը ճանաչվել է «հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելը»: Հետևաբար, առանց հասարակական կարծիքը բացահայտելու և հաշվի առնելու, չի կարելի խոսել սոցիալիստական դեմոկրատիայի քաղաքական կառուցվածքի մասին:

Հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելու մասին սահմանադրական նորման վերարտադրվում է, օրինակ, «ՍՍՀՄ Գերագույն սովետի ռեգլամենտում», որի 2-րդ հոդվածում ասված է. «ՍՍՀՄ Գերագույն սովետի գործունեությունը հիմնվում է... հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելու վրա»: Իսկ «ՍՍՀՄ Գերագույն սովետի Միության սովետի և Ազգությունների սովետի մշտական հանձնաժողովների կանոնադրության» 7-րդ հոդվածում ասված է. «Պալատների մշտական հանձնաժողովները գործում են հասարակական կազմակերպությունների հետ համագործակցած, ուսումնասիրում և հաշվի են առնում հասարակական կարծիքը»: Բնորոշ է, որ «ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ստատուսի մասին» օրենքում նախատեսվում է որ «դեպուտատը ուսումնասիրում է հասարակական կարծիքը» (հոդվ. 18):

Հասարակական կարծիքը բացահայտելու, հաշվի առնելու և օգտագործելու խնդիրը վերաբերում է բոլոր պետական մարմիններին: Ահա ինչու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մասին 1978 թվականի հուլիսի 5-ին ընդունված օրենքում հասարակական կարծիքը հաշվի առնելու մասին խոսվում է ՍՍՀՄ կառավարության գործունեության հիմնական սկզբունքների առնչությամբ. «ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, իր գործունեության մեջ ղեկավարվելով դեմոկրատական ցենտրալիզմի, սոցիալիստական ֆեդերալիզմի, սոցիալիստական օրինականության հրապարակայնության և հասարակական կարծիքը հաշվի առնելու սկզբունքներով...»: Այդ սկզբունքի բովանդակությունն արտահայտվում է այն բանում, որ ՍՍՀՄ կառավարությունը «համապատասխան հարցերը լուծելիս կազմակերպում է պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ու քաղաքացիների առաջարկությունների բացահայտումն ու օգտագործումը, բնակչությանը տեղյակ է պահում իր աշխատանքի և ընդունած հիմնական որոշումների մասին» (հոդվ. 3):

Բնական է այն հետևությունը, որ ո՛չ միայն Մինիստրների խորհուրդը, այլև միութենական և միութենական-հանրապետական մինիստրություններն ու պետական կոմիտեները պարտավոր են ղեկավարվել «հասարակական կարծիքը հաշվի առնելու» սկզբունքով: Այդ կապակցությամբ ցանկալի է «Մինիստրությունների մասին ընդհանուր կանոնադրության» նոր տարբերակում վավերացնել նշված սկզբունքը: Ըստ որում, կարևոր է ինչպես այդ ակտում, այնպես էլ մինիստրությունների ու պետական կոմիտեների մասին կանոնադրություններում արտացոլել տվյալ ճյուղում զբաղված բանվորների ու ծառայողների հասարակական կարծիքի և այն քաղաքացիների (բնակչության) հասարակական կարծիքի գոյության փաստը, որոնց պահանջմունքներն ու շահերը կոչված են բավարարելու տվյալ մինիստրության իրավասության տակ գտնվող ձեռնարկություններն ու հիմնարկությունները:

Դեմոկրատական նոր գործոնի երևան գալու հետ են կապված օրենսդրական այն նորահավելվածները, որոնք էական փոփոխություններ են մուծում ինչպես պետական-իրավական մեխանիզմի, այնպես էլ քաղաքական-պետական-իրավական պրոցեսի սուբյեկտներ հանդիսացող քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների բնութագրի մեջ: Եթե ՍՍՀՄ, միութենական և ինքնավար հանրապետությունների սահմանադրությունները պարունակում են հասարակական կարծիքի ստատուսի ճկուն կանոնակարգում, ապա մնացած բոլոր ակտերում անհրաժեշտ է խստիվ կարգորոշում՝ հիմնված հասարակական կարծիքի հարցման արդյունքները բացահայտելու, արտահայտելու, հաշվի առնելու, օգտագործելու, հրապարակելու պրոցեդուրայի լիակատար կարգավորման ու ստացված դիտողությունների, առաջարկությունների և պահանջների հետևողական իրագործման վրա: Կարելի է նույնիսկ ենթադրել, որ նպատակահարմար է ապագայում հրատարակել համապատասխան օրենք հասարակական կարծիքի մասին, ուր վավերագրված լինի այդ կարծիքի ձևավորման ու գործունեության ողջ մեխանիզմը:

## 2. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՐԾԻՔԸ ՀԱՇՎԻ ԱՌՆԵԼՈՒ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԸ

*Հասարակական կարծիքը բացահայտելը, հաշվի առնելը և օգտագործելը այլ բան չէ, քան պետության ներթարկումը հասարակության շահերին, այսինքն՝ հասարակության ինստիտուտի իր դերի կատարումը պետության կողմից։ Դրանով է պայմանավորվում պետության սոցիալական էությունը, դրա տնտեսական, քաղաքական, բարոյական ու իրավական գնահատականը։ Հենց այդ ասպեկտով էլ հարկավոր է իմաստավորել հասարակական կարծիքի դերը տնտեսական բազիսի և քաղաքական վերնաշենքի փոխգործունեության մեխանիզմում։*

*Բազմաթիվ գործոնների վերլուծման ժամանակ հարկ է հաշվի առնել հասարակական կարծիքի գործոնը, որն առկա է բոլոր հիմնական գաղափարախոսական, տնտեսական, քաղաքական, բարոյական և սոցիալական այդ պրոցեսների կոնտեքստում։ Այդ կերպ են հարստանում տեսական գիտելիքները հասարակության ու պետության մասին։ Այդ կերպ են դրանք օժտվում քաղաքական անհրաժեշտ ռեալիզմով։*

*Հասարակական կարծիքի դերի վերաբերյալ հարցի նման դրվածքով որոշվում է այն բացահայտելու, հաշվի առնելու և օգտագործելու պրոբլեմատիկան։ ՍՍՀՄ սահմանադրության 5-րդ հոդվածում ասված է. «Պետական կյանքի առավել կարևոր հարցերը հանձնվում են համաժողովրդական քննարկման, ինչպես նաև դրվում համաժողովրդական քվեարկության (հանրաքվեի)»։ Հետևաբար, դրանք պետք է լինեն մասշտաբային հարցեր, որոնք շոշափում են հասարակության ու պետության կյանքի հիմնական ասպեկտներն ու պրոբլեմները։ Ուստի հասարակական կարծիքի հարցման պրոբլեմատիկան պետք է լրիվ արտացոլի հրատապ հարցերը՝ այն հաշվով, որ ո՛չ միայն բացահայտի դրանց էությունն ու իմաստը, այլև սահմանի յուրաքանչյուր տվյալ հարցում հասարակության և պետության միջև եղած փոխադարձ կապի բնույթը։ Տեղի ունեցող սոցիալական երևույթների ու պրոցեսների իմացությունը, որ ձեռք է բերվում հարցման հիման վրա, բավական կլինի, որպեսզի արձանագրվի հասարակության ու պետության փոխգործողության մեխանիզմի վիճակը, այսինքն նրանց ինստիտուցիոնալ փոխհարաբերության էությունը։*

*Տնտեսական ու քաղաքական հարաբերությունների հետագա զարգացման պահանջը նպաստում է հասարակական գիտակցության ստրուկտուրայի փոփոխմանը, որում գերիշխում են սովետական հասարակության սահմանադրական նոր արժույթներն ու ակնկալիքները։ Այդ պայմաններում մեծանում է հասարակական կարծիքի պահանջը պետական-իրավական մեխանիզմի խելամիտ, դեմոկրատական ու արդյունավետ գործունեության, դրա՝ իբրև ժողովրդի պետական ինքնավարության մեխանիզմի, գործողության առումով։*

*Ժողովրդի պետական ինքնակառավարման նման մոդելից բխում է հետևյալ անհրաժեշտությունը։ Նախ, գիտակցելու հասարակական կարծիքի դերը որպես սոցիալիզմի դեմոկրատական ու կառավարչական արժույթի, որն ապահովում է հասարակության և պետության փոխգործողության ինստիտուցիոնալ ասպեկտը. երկրորդ, սիստեմատիկաբար բացահայտելու ու հրապարակելու, հաշվի առնելու և օգտագործելու հասարակական կարծիքը՝ հասարակության ու պետության կյանքի հրատապ հանգուցային հարցերի պատասխաններն ստանալու համար։ Միջոց ծառայող այդ երկու ասպեկտներն ապահովում են սահմանադրական քաղաքականության կենսագործումը, որը ներառում է սոցիալիզմի դեմոկրատական արժույթներն ու ակնկալիքները, դրանց որոնման ու հարստացման իրականացումը՝ հասարակության պրոգրեսի պահանջմունքներին համեմատ։ Եվ նշված քաղաքականության իրագործումը հնարավոր է դառնում այնքանով, որքանով հասարակական կարծիքն ինքը դառնում է ժողովրդի պետական ինքնակառավարման մեխանիզմի տարր։*

*Հասուն սոցիալիզմի պայմաններում քաղաքական սիստեմին հաղորդվում են դեմոկրատական նոր խթաններ, քանզի դրա զարգացման հիմնական ուղղությունը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է։ Սոցիալական էներգիայի առավել մեծացումը և օգտագործումը հանուն հասարակական պրոգրեսի՝ այսպիսին է դեմոկրատացման պրոցեսի լեյտմոտիվը։ Այդ պատճառով էլ տվյալ պրոցեսը պետք է դառնա «հասարակական կարծիքը մշտապես հաշվի առնելու» սահմանադրական նորմայի իրականացման պրոցես՝ պայմանավորված քաղաքական սիստեմի գործունեության կազմակերպական, բարոյական ու իրավական բոլոր ասպեկտներով։ Ըստ երևույթին, անհրաժեշտ է մշակել նշված սահմանադրական նորմայի իրականացման արդյունավետությունը որոշելու լրացուցիչ չափանիշներ։*

*Հասարակության զարգացող քաղաքական գիտակցությունն արտահայտվում է հասարակական կարծիքում, որն իրավացիորեն հավակնում է քաղաքական նորմատիվության։ Դրա շնորհիվ այն հնարավորություն ունի ազդելու քաղաքական սիստեմի վրա, որով ապահովվում է հասարակական կարծիքի հետ համաձայնեցված տվյալ սիստեմի քաղաքական կուրսը։ Իրոք, այդ սիստեմի որոշակի քաղաքականության ընտրությունն արդյունք է տարբեր սոցիալական հանրությունների հասարակական կարծիքի արտահայտած պահանջմունքների ու շահերի, արժույթների ու ակնկալիքների արտացոլման։ Դրանով իսկ հասարակական կարծիքը ներդրվում է հասարակության քաղաքական կառավարման մեջ։*

*Սոցիալիզմի քաղաքական սիստեմը ելնում է հետևյալ հիմնական սկզբունքներից՝ քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների ներգրավումը քաղաքական կյանքում. պետական և սոցիալական այլ ինստիտուտների նախագծերի ու պլանների, որոշումների ու գործողությունների հետ հասարակական կարծիքի համաձայնության (կոնսենսուսի) ոլորտի ընդլայնումը. քաղաքական կառավարման դեմոկրատական մեթոդների օգտագործումը(քննարկում, դիսկուսիա, երկխոսություն, հարցում, հանրաքվե)։ Եվ այդ սկզբունքներից յուրաքանչյուրում առկա է քաղաքական սիստեմի շրջանակներում իրականացվող հասարակական կարծիքի գործոնը։ Ասվածից կարելի է հետևցնել՝ նախ, չի կարելի ղեկավարվել նշված սկզբունքներով, առանց հասարակական կարծիքի ֆենոմենին դիմելու. երկրորդ, հասարակական կարծիքը բացահայտելը և հրապարակելը, հաշվի առնելն ու օգտագործելը հրատապ է դարձնում քաղաքական սիստեմի սկզբունքների կիրառումը։*

*Կարևոր է սահմանել նաև այն խնդիրների շրջանակը, որոնց շուրջ հարկ կլիներ անցկացնել հասարակական կարծիքի հարցում՝ այն հաշվով, որ անալիտիկ ինֆորմացիայի հիման վրա իրավասու մարմինները կարողանան որոշումներ ընդունել ստրատեգիական հարցերի վերաբերյալ։ Այստեղ հնարավոր է երկու մոտեցում։ Դրանցից առաջինը կապված է քաղաքական սիստեմը կարգավորող սահմանադրական նորմերի արդյունավետության վերլուծության, երկրորդը՝ քաղաքական ռեալության թելադրած պրոբլեմների վերլուծության հետ։ Իհարկե, միայն պայմանականորեն կարելի է խոսել երկու մոտեցման մասին, որոնց ինտեգրացումն անխուսափելի է։ Հարցման պրոբլեմատիկայի քարտաբանը մշակելիս, որպես կանոն, դրան տրվելու է սահմանադրական բնույթ։ Կարծիքների հաշվառումը (օպինիոնիկա) դեռ պետք է մշակի հասարակական հարցման ենթակա պրոբլեմների ընտրության հիմնավորված չափանիշներ։*

*Սոցիալիստական դեմոկրատիայի սահմանադրական-իրավական հիմքի գործունեության արդյունավետությունը ոչ պակաս չափով պայմանավորված է հասարակական կարծիքի հարցումներով, դրանց արդյունքները հաշվի առնելով և օգտագործելով։ Նման հարցումները սահմանադրական հարաբերությունների ռեալ վիճակը ճանաչելու և ծագող պրոբլեմներն ու հակասությունները ժամանակին լուծելու միջոց են։ Բացի այդ, կարելի է ընդլայնել սոցիալական գնահատականների ու վերլուծության՝ որպես քաղաքական կուլտուրայի ցուցիչների մասշտաբները։*

*Ժողովրդի պետական ինքնակառավարման մեխանիզմի գործունեության քաղաքական, իրավական ու բարոյական ասպեկտների վերաբերյալ հասարակական կարծիքի հարցման փորձի աստիճանական կուտակումն անհրաժեշտ է հարցման պրոբլեմատիկայի բովանդակությունն ու բնույթը որոշելու համար։*

Ըստ որում, դրանք պետք է լինեն այնպիսի հարցումներ, որոնց հիման վրա կարելի է բացահայտել դեմոկրատիայի որակը պայմանավորող դրական ու բացասական գործոնները պատմական կոնկրետ պայմաններում և կոնկրետ խնդիրների առնչությամբ։

Դեմոկրատիան դինամիկ կատեգորիա է։ Դրա զարգացման կոնցեպցիան պարունակում է բազմաթիվ տարրեր. սուբյեկտների՝ իրենց իրավունքների օգտագործման և պարտականությունների կատարման համար պայմանների ստեղծումն ու պահպանումը, քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները խախտելու համար պատասխանատվությունը, քաղաքական պրոցեսի վրա քաղաքացիների ներգործության նոր ձևերի ու մեթոդների որոնումները, հասարակական կարծիքի՝ որպես դեմոկրատիայի ինստիտուտի, դերի մեծացման ծրագրի մշակումը։ Այդ կոնցեպցիան իրականացնելու համար, գուցե, կպահանջվեն կազմակերպական նոր միջոցառումներ, մասնավորապես հասարակական կարծիքի ինստիտուտի ստեղծում ՍՍՀՄ ԳԱ սիստեմում, որի վերաբերյալ քանիցս առաջարկություն է արվել։

Բնորոշ է, որ արդեն նկատվում է հասարակական կարծիքը ծրագրված կարգով ուսումնասիրելու միտում։ Այդ են վկայում որոշ կուսակցական կոմիտեներին կից ստեղծված հասարակական կարծիքն ուսումնասիրող խորհուրդները։

Սկզբունքային նշանակություն ունի հասարակական կարծիքի վերլուծության խմբի ստեղծումը ՍՄԿԿ Կենտկոմի ապարատում։

Վերլուծելով հասարակական կարծիքի և պետական մարմինների միջև եղած սոցիալական հակասությունների պատճառները, հարկավոր է ուշադրություն դարձնել օբյեկտիվ և սուբյեկտիվ հիմք ունեցող հակասությունների վրա։ Օբյեկտիվներից են, օրինակ, նյութական, ֆինանսական և այլ հնարավորությունների դեռևս առկա սահմանափակվածությունը։ Ըստ որում բնորոշ է, որ հասարակական կարծիքից չօգտվելու հանգամանքը ծառայողները բացատրում են ամենից առաջ այդ օբյեկտիվ պատճառով։ Ըստ երևույթին, այսուհանդերձ, գոյություն ունի նշված պատճառի տարբեր մեկնաբանում, քանի որ անհայտ է մնում տվյալ մարմնի կատարած նյութական ու ֆինանսական ծախսումների հիմնավորվածության աստիճանի հարցը։ Հետևաբար, առաջանում է նախապատվությունների, այսինքն՝ այս կամ այն խնդրի լուծման առաջնահերթությունը որոշելու ճշտության պրոբլեմը։ Իսկ դա չի կարող ճշգրտորեն լուծել, առանց հասարակական կարծիքին դիմելու, առանց որոշարկվելիք նախապատվությունների սիստեմը քննարկելու։

Յուրաքանչյուր չբավարարված սոցիալական պահանջմունք հասարակական կարծիքի և տվյալ պետական մարմնի միջև սոցիալական լարվածության աղբյուր է։

Այդ պայմանավորվածությամբ է որոշվում հասարակական պահանջմունքներն ու շահերը լիովին բավարարելու վերջինիս պարտավորությունը։ Իսկ դա իր հերթին պայմանավորում է հասարակական կարծիքի և պետական մարմնի դրական փոխազդեցության հեռանկարները։

Հասարակական կարծիքն արտահայտող ինֆորմացիայի նկատմամբ որոշ ծառայողների անտարբերությունը և դրանք անտեսելու համար ոչ միշտ պատասխանատվություն կրելը սոցիալական հակասությունների ամենատարածված սուբյեկտիվ պատճառներն են։

Թե՛ մեկ, թե՛ մյուս դեպքում զգացվում են քաղաքական ու իրավական գիտակցության թերությունները, որոնք խեղաթյուրում են հասարակական կարծիքի ու պետական մարմինների և այլ հաստատությունների փոխհարաբերության սոցիալիստական էությունը։ Նման վերաբերմունքը հաճախ հանգեցնում է պետական մեխանիզմի գործունեության զանազան ասպեկտների նկատմամբ քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների հետաքրքրության թուլացմանը, այսինքն հասարակական կարծիքի սոցիալական գործունակության թուլացմանը։ Հասարակական կարծիքի և պետական մարմինների փոխհարաբերության սկզբունքները պետք է արտացոլեն դեմոկրատիայի սահմանադրական սկզբունքները։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում սխալ կլիներ կարծել, թե պետական



մարմինը պաշտպանում է հասարակական շահերին չհամընկնող «իր, սեփական» շահերը։ Նշված մարմինը կարող է ունենալ իր դիրքորոշումը, որը ամենևին չի հակասում հասարակական շահերին։ Սոցիալական բազմաթիվ նպատակների իրականացման պայմաններում այդպիսի դիրքորոշման առկայությունը միանգամայն արդարացված է։ Հասարակական կարծիքի և պետական մարմնի դասակարգային նույնականությունը չի հանգեցնում միևնույն հարցի նկատմամբ նրանց ունեցած հայացքների միատեսակության։ Ավելին, տեղի է ունենում պահանջմունքների բավարարման ձևերի ու մեթոդների, ժամկետների ու մասշտաբների նկատմամբ եղած տեսակետների տարբերակման պրոցես։ Դրանով են պայմանավորված դեմոկրատական ընթացակարգի (օրինակ, դիսկուսիա, երկխոսություն, հարցում և այլն) օգնությամբ լուծելի սոցիալական հակասությունները։ Այդ ամենը հնարավորություն է ընձեռում վերականգնելու հավասարակշռությունը, թեև երկխոսությունը նրանց միջև կարող է և շարունակվել։ Ըստ երևույթին, նշված հակասությունները անխուսափելի են և դրանք, վերջին հաշվով, հնարավոր են դարձնում համաձայնեցնելու երկու կողմերի դիրքորոշումներն ու շահերը։

Դիրքորոշումների ու շահերի համաձայնեցման պրոցեսը այսպես թե այնպես դրսևորում է իր վերջնականությունը։ Ուստի բացառված չեն կոմպրոմիսի դեպքերը, որ բավական հաճախ է պատահում, երբ հասարակական կարծիքը ներառվում է սոցիալական պահանջմունքների ու շահերի արտահայտման և հիմնավորման պրոցեսում, իսկ տիրապետողը փոխադարձաբար ընդունելի համաձայնության միտումն է։ Եվ այնուամենայնիվ անհրաժեշտ է լրջորեն հետազոտել սոցիալական հակասությունների պատճառները և դիրքորոշումների ու շահերի համատեղելիության բովանդակության, բնույթի ու ծավալի պրոբլեմը, այն կայունացնող գործոնները։

Հրատապ է դառնում այն կոնցեպտուալ հիմքի մշակումը, որի կառուցվածքի մեջ մտնում են քաղաքական, տնտեսական, իրավաբանական, հոգեբանական, բարոյական և այլ գործոններ։ Ըստ որում, հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել պաշտոնյաների անձնավորության հոգեբանության ձևավորմանը, նկատի առնելով նրանց մեջ դեմոկրատական մտածողության դաստիարակումը։ Դեմոկրատական շարժառիթներով ու չափանիշներով գործելու ձգտումը որոշվում է սոցիալիստական դրական գործոնների համակարգով։ Այդ գործոններն ինքնին չեն կարող ներգործել, եթե անբավարար է զարգացած սահմանադրական և սոցիալական այլ նորմերի համապատասխան ընկալումը։ Դեմոկրատական պետական կառավարումը կապված է սոցիալական նորմի և դրա ընկալման ու ընդունման հոգեբանության միջև եղած անհամապատասխանությունը շարունակ նվազեցնելու և վերացնելու հետ։

Այսպիսով, սոցիալ-քաղաքական և պետական-իրավական պրակտիկայի հետազոտումն ավելի ու ավելի է համոզում, որ հասարակական կարծիքը՝ որպես սոցիալիստական դեմոկրատիայի կարևոր ինստիտուտ, աստիճանաբար զարգանում է։ Ձեռք բերելով ինստիտուցիոնալ ստատուս, հասարակական կարծիքն ի վիճակի է ավելի արդյունավետորեն ներգործելու սոցիալական այլ ինստիտուտների վրա, դրանց մղելով այնպիսի լուծումների ու գործողությունների, որոնք ինքը նպատակահարմար է գտնում։ Հարկավոր է նկատի ունենալ, որ հասարակական կարծիքը սոցիալական այն ընդհանրությունների կամքի արտահայտությունն է, որոնց հետ բոլոր իրավասու մարմինները պարտավոր են համաձայնեցնել իրենց նախագծերն ու պլանները, որոշումներն ու գործողությունները։ Հասարակական կարծիքի ինստիտուցիոնալության մասին կարելի է խոսել այն ժամանակ, երբ ո՛չ միայն այն հաշվի են առնում, այլև՝ երբ չեն կարող հաշվի չառնել, չլսել, ուշադրության չառնել, եթե դա արտահայտում է ճիշտ գիտակցված սոցիալական պահանջմունքներ ու շահեր։ Այդ պայմանը պահպանելու դեպքում միայն քաղաքացիներն ու պաշտոնատար անձինք այն ընկալում են որպես դրական դեմոկրատական գործոն։ Այդ կերպ է հասարակական կարծիքը ներգրավվում սովետական ապրելակերպի կառուցվածքում, որի շնորհիվ շեշտվում է նրա նպատակամղվածությունը դեպի քաղաքական-տնտեսական և իրավաբանական որոշումների ընդունման կենտրոնները։

# ՉԱՓԱՆԻՇԸ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆ Է

Գ. Ա. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ
ՀՍՍՀ կենտրոնական վիճակագրական վարչության պետ

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ քաղաքական և արտադրական բարձր ակտիվության պայմաններում հաջողությամբ կատարեցին 1979 թվականի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանը։ Ներգրավվելով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու մրցության մեջ՝ արդյունաբերական ձեռնարկությունների բոլոր կոլեկտիվներն արտադրանքի իրացման պլանը կատարեցին 100,9 տոկոսով, աշխատանքի արտադրողականության աճը, 1978 թվականի համեմատությամբ, կազմեց 3,3 տոկոս։ Գերակատարվեցին արտադրանքի շատ տեսակների թողարկման առաջադրանքները, պետական որականիշով թողարկվող արտադրանքի ծավալը մեծացավ 30 տոկոսով։

Որոշակի հաջողությունների հասան գյուղատնտեսության աշխատողները։ Հանրապետության մթերող կազմակերպություններին հանձնվել է 70,5 հազար տոննայից ավելի հացահատիկ, պետական առաջադրանքը կատարվել է 146,9 տոկոսով։ Կատարվել են նաև խաղողի, կարտոֆիլի, բանջարեղենի, շաքարի ճակնդեղի, խորդենու, անասնապահական հիմնական մթերքների մթերումների պլանները։

Արտադրական ցուցանիշների կատարման գործում դրական արդյունքների են հասել նաև հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները։

Ինչպես նշված է Հայաստանի հողագործներին ընկեր Լ. Ի. Բրեժնևի ուղղած ողջույնում, ձեռք բերված հասումները արդյունք են բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության անձնուրաց աշխատանքի, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ծավալած գաղափարադաստիարակչական բեղմնավոր գործունեության։

Տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման և գերակատարման համար ծավալված պայքարը ծնում է մասսայական նախաձեռնությունների, հայրենասիրական շարժման նորանոր ձևեր, որոնց նպատակն է արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացումը, հնգամյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարումը։

Հանրապետությունում ծավալված սոցիալիստական մրցության ընթացքում լայնորեն տարածվեցին ու արմատավորվեցին այնպիսի օգտավետ նախաձեռնություններ, ինչպիսիք են «Հնգամյակը՝ չորս տարում», «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք», «Շաբաթվա առաջադրանքը՝ չորս օրում», «Տասներորդ հնգամյակում՝ պտղատու և խաղողի արգասալի այգիներ» և այլն։ Ներկայումս գրեթե մեկ միլիոն բանվորներ ու կոլտնտեսականներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ներգրավված են սոցիալիստական մրցության մեջ։



Մեզանում լայն մասսայականություն է ստացել Դոնի-Ռոստովի արդյունաբերական ձեռնարկություններում ծնունդ առած «Աշխատել առանց ետ մնացողի» հայրենասիրական շարժումը։

Տնտեսական պրոբլեմների լուծմանը աշխատավորության գործնական մասնակցությունը դարձել է մեր իրականության բնորոշ հատկանիշը։ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1978 թ.) պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ մեզ հարկավոր չեն մտացածին «նախաձեռնություններ»։ Մեզ հարկավոր են գործնական, իսկապես մասսաների խորքից եկող նախաձեռնություններ, որոնք ունակ են խանդավառել, ոգեշնչել միլիոնավոր մարդկանց։ Դրանցից է նաև «Աշխատել առանց ետ մնացողի» նախաձեռնությունը։

Հանրապետության քաղաքների և շրջանների արդյունաբերական ձեռնարկությունների, հատկապես Դիլիջան և Կիրովական քաղաքների, Սևանի, Արարատի, Սիսիանի շրջանների աշխատավորները, կազմակերպելով «Առանց ետ մնացողի» շարժումը, աստիճանաբար նվազեցնելով արտադրանքի և դրա իրացման ծավալի պլանները չկատարող ձեռնարկությունների թիվը, հաջողությամբ կատարեցին 1979 թ. պլանները։

Այդ նախաձեռնությունը ենթադրում է գործունեության բոլոր բնագավառներում առավել կազմակերպված դարձնել աշխատանքը, որպեսզի ամեն մի արտադրական կոլեկտիվ պլանային առաջադրանքներն ու պատվերները կատարի նախատեսված ժամկետներում, թողարկի միայն բարձրորակ արտադրանք։ Ներգրավվելով այդ շարժման մեջ՝ յուրաքանչյուր բանվոր, կոլտնտեսական, ծառայող պետք է իրեն հաշիվ տա՝ արդյո՞ք ինքն ամեն ինչ արել է՝ աշխատանքային օրն արդյունավետ անցկացնելու համար։ Նման ձևով միայն կարելի է ապահովել այդ հիանալի շարժման ներգործունությունը։

Հանրապետության աշխատավորական շատ կոլեկտիվներ, ճիշտ ընկալելով գործարար մրցության կազմակերպման վերաբերյալ կուսակցության պահանջները, ապահովում են ստանձնած պարտավորությունների համաչափ կատարումը։ Այս առումով հատկանշական է էլեկտրատեխնիկական ու սարքաշինական, թեթև, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության, մասնավորապես «Հայէլեկտրալույս», Ձերժինսկու անվան հաստոցաշինական, «Մասիս», «Գարուն», «Հայգորգ», Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումների, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի, Լենինականի մսի պահածոների կոմբինատի կոլեկտիվների ակտիվ գործունեությունը։

Աշխատանքի կազմակերպման նրանց փորձն ու ձեռք բերած արդյունքները վկայում են, որ «Առանց ետ մնացողի» շարժումն իր նպատակին ծառայում է այն ժամանակ, երբ ապահովվում է մատակարարումների, արտադրության ու պատրաստի արտադրանքի առաքումների հստակությունը, արմատապես կարգավորվում է մի կողմից՝ տվյալ ձեռնարկության ստորաբաժանումների, մյուս կողմից՝ մատակարարողի ու արտադրողի և վերջինիս ու պատրաստի արտադրանքի պատվիրատու կազմակերպության փոխգործունեությունը։ Այդ ճանապարհով միայն հնարավոր է խպառ կանխել գրոհայնությունը, թափթփվածությունը և անտնտեսավարությունը բոլոր օղակներում, արտադրության մեջ լայնորեն ներդնել գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումները, ապահովել համաչափ աշխատանքը։ Հիշյալ ձեռնարկությունների կոլեկտիվներին հաջողվել է արմատավորել այդ նախաձեռնությունը, որը դարձել է արտադրության առաջընթացի լուրջ գործոն։

Սակայն հայրենասիրական այդ շարժումը դեռևս, ինչպես հարկն է, չի արմատավորվել արդյունաբերական բոլոր ձեռնարկություններում, չի դարձել բոլոր կոլեկտիվների, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների գործունեության նշանաբանը։ 1979 թվականի ընթացքում հանրապետության 527 արտադրամիավորումներից ու արդյունաբերական ձեռնարկություններից 60-ը չկատարեցին արտադրանքի իրացման, 79-ը՝ համախառն արտադրանքի թողարկման, 103-ը՝ աշխատանքի արտադրողականության պլանները։ Դրա հետևանքով պակաս արտադրվեց 75,4 մլն և պակաս իրացվեց 50,3 մլն ռուբլու արտադրանք։ Մինչդեռ, եթե այդ ձեռնարկություններն ապահովեին աշխատանքի արտադրողականության պլանների կատարումը, լրացուցիչ կրա-

տացվեր ևս 63,4 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանք, որը կազմում է հանրապետության 1979 թ. համախառն արտադրանքի 1,2 տոկոսը։

Հանրահայտ է, թե ինչ կարևոր նշանակություն ունի արդյունաբերական ձեռնարկություններում հանդիպական պլանների ընդունումը։ Դրանք նպաստում են լայն մասսաների աշխատանքային ակտիվության բարձրացմանը, արտադրության կառավարմանը նրանց առավել ակտիվ մասնակցությանը։ Այդ նախաձեռնության արմատավորումը տալիս է դրական արդյունք։ Սակայն այն ևս լայնորեն չի տարածվել հանրապետությունում։ Բավական է ասել, որ 1979 թվականին մեր արտադրական ձեռնարկություններից միայն 73-ն են ընդունել հանդիպական պլաններ։

Դատապարտելի է այն պրակտիկան, երբ մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ նվազեցման միտումով մասնակի փոփոխություններ են կատարում ամսական և եռամսյակային պլաններում։ Նրանք փորձում են ցածր ցուցանիշների փաստացի կատարմամբ ստեղծել արտադրական հաջողությունների տպավորություն։ Հանրապետության մի շարք արտադրամիավորումներ և ձեռնարկություններ միայն 1979 թվականին համախառն արտադրանքի պլանը, սկզբնականի համեմատությամբ, իջեցրել են 46,7 մլն ռուբլով։ Պետական պլաններում մեծ փոփոխություններ են կատարել Հայկական ՍՍՀ սննդի, մսեղենի ու կաթնեղենի, տեղական, շինանյութերի արդյունաբերության, արդյունաբերական շինարարության, ինչպես նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերության համակարգի մի շարք ձեռնարկություններ։ Անտարակույս, պետական պլանային կարգապահության խստագույն պահպանման, հաստատված պլանների անվերապահ կատարման համար մղվող հետևողական պայքարի դեպքում «Աշխատել առանց ետ մնացողի» շարժումը կլիներ ավելի ներգործուն ու արդյունավետ։

Թողարկվող արտադրանքի բարձր որակի համար մղվող պայքարը ներկայումս վճռորոշ գործոն է դարձել սոցիալիստական մրցությունում։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները, տարեցտարի բարելավելով արտադրանքի որակը, հասել են որոշակի դրական արդյունքի։ Այսպես, պետական որականիշով թողարկվող արտադրանքի քանակը 1979 թվականին կազմեց ավելի քան 2.420 անուն կամ ընդհանուր արդյունքի ավելի քան 15,6 տոկոսը։ Սակայն այդ հաջողությունների մեջ իրենց ներդրումն ունեն ընդամենը 194 արտադրամիավորումներ և արդյունաբերական ձեռնարկություններ։ Եթե մնացած միավորումները և ձեռնարկությունները թողարկեին պետական որականիշով թեկուզ և մեկական արտադրատեսակ, ապա այդ արտադրանքի ընդհանուր քանակը կհասներ մոտ 2.752-ի։

Տասներորդ հնգամյակի եզրափակիչ փուլում հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և ձեռնարկություններում թողարկվող արտադրանքի որակի զգալի բարելավման վերաբերյալ կուսակցության դիրեկտիվների կատարմանը։ Գործողության ուղեցույց պետք է լինի ՍՄԿԿ XXV համագումարի այն թեզը, որ որակի պրոբլեմն «ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողությունն է, արտահանության հնարավորությունների աճը, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների և՛ ավելի լավ, և՛ ավելի լրիվ բավարարումը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 66)։ Համագումարը պահանջեց արտադրանքի որակի բարձրացմանը նպատակամղել պլանավորման և կառավարման ողջ մեխանիզմը, նյութական և բարոյական խրախուսման համակարգը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպական և գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքը։ Այսօր արտադրանքի որակի բարձրացման գործում վճռական է առանց ետ մնացողի աշխատելու համար ծավալված շարժման դերը, այդ նշանաբանով կազմակերպված սոցիալիստական մրցությունը։



Արտադրության կենտրոնացման ու մասնագիտացման ժամանակակից պայմաններում արդյունաբերական արտադրանքի մատակարարումների պարտավորությունների կատարման հարցը դրված է առաջին պլանում։ 1979 թվականին 527 արտադրամիավորումներից և արդյունաբերական ձեռնարկություններից 435-ը կամ դրանց ընդհանուր թվի 82,5 տոկոսը, ունեին արտադրանքի իրացման պլան՝ հաշվի առնելով մատակարարումների պարտավորությունների կատարումը։ Ընդ որում, 60 միավորում և ձեռնարկություն չկատարեցին արտադրանքի իրացման 1979 թ. պլանը, իսկ մատակարարումների առաջադրանքները չկատարող կոլեկտիվների թիվը հասավ 124-ի. դրանց չառաքած արտադրանքի ծավալը կազմեց 99,4 մլն ռուբլի։ Մատակարարումների առաջադրանքի հաշվառմամբ իրացման պլանը չկատարեցին նավթամշակման և նավթաքիմիական, քիմիական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, սարքաշինական, փայտամշակման, թեթև, սննդի, տեղական և շինանյութերի արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ։ Ընդ որում, մատակարարման պլան ունեցող յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն չի կատարել այն, որի հետևանքով չի իրացվել տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք։

Հնգամյակի վերջին տարում հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պետք է լուրջ ուշադրություն նվիրեն մատակարարումների առաջադրանքները կատարելուն։ Ինչպես տեսնում ենք, «Աշխատել առանց ետ մնացողի» շարժումը, պահանջում է իրականացնել կոմպլեքսային միջոցառումներ, որոնք կապահովեն ոչ միայն ծավալային ցուցանիշները, այլև աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի, մատակարարումների, օգուտների և տեխնիկատնտեսական մյուս պլանային ցուցանիշների կատարումը։

«Աշխատել առանց ետ մնացողի» նախաձեռնությունն անբավարար է տարածվել հանրապետության շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում, գյուղատնտեսական և նյութական արտադրության այլ ոլորտներում։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ տասներորդ հնգամյակի խնդիրների հաջող լուծման համար հարկավոր է արմատապես բարելավել տնտեսական և կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարումը։ Կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր է դրված՝ գլխավորել մասսաների աշխատանքային վերելքը, մոբիլիզացնել նրանց ուժերը, որպեսզի յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվ հնգամյակը հաջողությամբ եզրափակի, մարդկանց դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում հաստատել աշխատանքի իսկական կուսակցական ոճ, բարձրացնել բոլոր աշխատողների պատասխանատվությունը պլանային առաջադրանքների կատարման գործում, ամրապնդել կարգապահությունը, բարելավել կատարման ստուգումը։ Շատ ձեռնարկությունների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների, շինարարական և այլ կազմակերպությունների աշխատանքային նվաճումները, կոլեկտիվներում տիրող առողջ մթնոլորտը, սոցիալիստական մրցության գործարար բնույթը ցույց են տալիս, որ տնտեսական ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները, իրոք, գտնվում են իրենց կոչման բարձրության վրա, ճիշտ են ընկալում ու հետևողականորեն կատարում կուսակցության պահանջները։

Սակայն դեռևս անելիքները շատ են։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվներում հարկ է հատուկ ուշադրություն նվիրել «Աշխատել առանց ետ մնացողի» նախաձեռնության արմատավորմանը։ Միայն արտադրության խելամիտ պլանավորման, նյութատեխնիկական մատակարարման հստակ կազմակերպման, արտադրության ծավալի անշեղ աճման համար կոլեկտիվների համաչափ աշխատանքի ապահովման միջոցով է հնարավոր հասնել ցանկալի արդյունքի։ Խնդիրն այն է, որ սահմանվի ներգործուն հսկողություն յուրաքան-

չյուր աշխատավորական կոլեկտիվի, արտադրամասի, տեղամասի, բրիգադի ու անհատ մրցողների արտադրական պլանների ու սոցպարտավորությունների կատարման նկատմամբ, ժամանակին բացահայտվեն արտադրության կազմակերպման թերությունները, մշակվեն դրանց վերացման միջոցառումներ։ Մենք չպետք է մոռանանք, որ սոցիալիստական մրցության ընթացքում ի հայտ են գալիս ոչ միայն առաջավորներն ու հաղթողները, այլև ետ մնացողները։ Մրցությունն անհրաժեշտ է նաև այն առումով, որ կենտրոնացվեն ուժերը՝ թերությունները վերացնելու, վրիպումները շտկելու, ետ մնացող տեղամասերն առաջավորներին հասցնելու, ընդհանուր վերելքն արագացնելու համար։

Փորձը վկայում է, որ այնտեղ, ուր կոմպլեքսային ձևով են լուծվում կազմակերպական ու դաստիարակչական հարցերը, հենվում են լայն ակտիվի վրա, գործնականորեն շաղկապում կուսակցության քաղաքականությունը մասսաների կենդանի ստեղծագործության հետ, այնտեղ միշտ էլ հասնում են տնտեսական կայուն հաջողության։ Ահա ինչու բարձր արդյունավետության ու որակի համար մղվող պայքարում հայրենասիրական շարժման տարածման հարցը պետք է լինի կուսակցական կոմիտեների մշտական ուշադրության կենտրոնում, պարբերաբար քննարկվի կոլեկտիվների ժողովներում։

Շատ կարևոր է օգնել նրանց, ովքեր ինչ-որ պատճառներով չեն կատարում ստանձնած պարտավորությունները, մեծ հոգատարություն ցուցաբերել բանվորների ստանձնած պարտավորությունների կատարման ինժեներական աջակցությունն ապահովելու նկատմամբ։

Մինչդեռ, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումում նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, բնավ էլ ամենուրեք չէ, որ մենք կարողացել ենք հաղթահարել իներցիայի ուժը, վճռականորեն մինչև վերջ հասցնել ամբողջ աշխատանքի շրջադարձը դեպի որակը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, լավագույն վերջնական արդյունքների ձեռքբերումը։

Մեր պարտքն է հետևողական և սկզբունքային պայքար մղել ձևամոլության դեմ, հասնել այն բանին, որ բոլոր կոլեկտիվներում իրական միջոցներ ձեռնարկվեն էկոնոմիկայի զարգացման բնագծերը ճիշտ որոշելու համար, մասսաներին պատասխանատվության բարձր զգացումով դաստիարակելու համար։ Հարկավոր է ամենայն սկզբունքայնությամբ քննադատել բոլոր նրանց, ովքեր ձախողում են արտադրական ծրագրերի կատարումը, մոռացության են տալիս իրենց և կոլեկտիվների պարտականությունները։ Պետք է շինարարական կազմակերպություններում և կոլեկտիվներում ևս ծավալել «Աշխատել առանց ետ մնացողի» նշանաբանով մրցությունը և այն խելացիորեն զուգակցել զլոբինականների շարժման հետ, այդ հիման վրա էականորեն բարելավել արտադրական ցուցանիշները, շեշտակի բարձրացնել շինարարական աշխատանքների արդյունավետությունն ու որակը և հաղթահարել շինարարության տևական ետ մնալը։

Գյուղատնտեսական արտադրության յուրահատկությունից ելնելով՝ գյուղի աշխատավորները ևս պետք է ստեղծագործական մոտեցում ցուցաբերեն այդ շարժման ծավալման նկատմամբ։ Դրա համար պահանջվում է իրականացնել մի շարք միջոցառումներ, որոնք առնչվում են գյուղատնտեսական արտադրության բազմաճյուղային բնույթին։ Օրինակ, երկրի շատ սովխոզներում ամսական պլանների ու պարտավորությունների կատարման նկատմամբ մշտական հսկողություն իրականացնելու նպատակով կիրառվում է քարտային հաշվառում՝ առանց ետ մնացողի աշխատելու վերաբերյալ։ Այն հնարավորություն է ընձեռում տեղամասերում կարճ ժամանակում բացահայտելու ետ մնացողներին և կոնկրետ օգնություն ցույց տալու նրանց։ Դա կուսակցական կազմակերպությունների գործուն աշխատանքի ձևերից մեկն է կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի արտադրական հաջողությունն ապահովելու ասպարեզում։

Հարկ է, որ կուսակցական կազմակերպությունները մեծ ուշադրություն նվիրեն կոլեկտիվներում տարվող ագիտացիայի կազմակերպմանը, բարձրացնեն ագիտատորների ակտիվությունը՝ պլանների ու պարտավորությունների կատարման համար կոլեկտիվների ուժերը մոբիլիզնելու նպատակով։ Նրանց տեսադաշտում պետք է լինի յուրաքանչյուր բրիգադ ու արտադրամաս։ Պետք



է արմատավորել «Ոչ մի ետ մնացող կոլեկտիվում, որտեղ աշխատում է ագիտատորը» շարժումը և հաշվի առնել, որ մրցության տարածման գործում ագիտացիայի արդյունավետության բարձրացման կարևոր լծակ են դրա արդյունքների լայն հրապարակայնության ապահովումը, ինչպես նաև խրախուսման միջոցների իրականացումը։ Այսպես, շատ առաջավոր կոլեկտիվներում, արտադրական տեղամասերում ձևավորվում են «Աշխատել առանց ետ մնացողի» մրցության էկրան, «Վարպետ դաստիարակի բնագիծը՝ յուրաքանչյուր երիտասարդ բանվորի» ստենդներ, փակցվում են օպերատիվ, «Կայծակ» թերթիկներ, պատի թերթեր ու պլակատներ։ Շատ ձեռնարկություններում ու տնտեսություններում, մրցության հաղթողների պարգևատրման համար, սահմանվել են մրցանակներ, փոխանցիկ հուշադրոշներ ու պատվոգրեր, աշխատանքային փառքի գրքեր։ Ընդ որում, հաղթողներին պարգևների հանձնումը կատարվում է աշխատավորների ժողովներում, հանդիսավոր պայմաններում։

Ներկայումս կուսկազմակերպությունների և ագիտկոլեկտիվների մասսայական, քաղաքական ու կազմակերպական ողջ գործունեության հիմնական նպատակը պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարման համար ամենօրյա աշխատանքի ծավալումն է։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ մեր առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծումը կպահանջի ստեղծագործական մոտեցում, բարձր պատասխանատվություն, խստագույն կարգապահություն տնտեսության բոլոր օղակներում։ Դա վերաբերում է բոլոր մակարդակների տնտեսական ղեկավարների աշխատանքին։ Դա վերաբերում է նաև արտադրության անմիջական մասնակիցներին։ Թող ամեն ոք, ով կանգնած է հաստոցի մոտ, աշխատում է դաշտում կամ գծագրական սեղանի առջև, իրեն հարց տա՝ արդյոք ինքն ամեն ինչ արել է ավելի արտադրողաբար, ավելի որակով աշխատելու համար, նյութեր խնայելու, ժամանակը պարապ չվատնելու համար։ Այս խոսքերն այսօր արտացոլում են կուսակցության անմիջական պահանջը, որի կատարումը խիստ անհրաժեշտ է «Աշխատել առանց ետ մնացողի» նշանաբանով ծավալած մրցության հաջողության ու բարձր արդյունավետության և, վերջապես, մեր երկրի տնտեսական աննախընթաց վերելքի ապահովման համար։

---

# ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՇԱՆԱԲԱՆԸ

**Վ. Ա. ԱՍՐՅԱՆ**
«Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման
կոմկոմիտեի քարտուղարի տեղակալ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, պատրաստվում է կոնկրետ գործերով նշանավորել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը: Այդպիսի պատրաստակամությամբ են աշխատանքային օրն սկսում ու ավարտում նաև «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման բազմահազարանոց կոլեկտիվի անդամները: Կոմկոմիտեն, արտադրամասային սկզբնական կոմկազմակերպությունների բյուրոները կազմակերպչական ամենօրյա աշխատանքը սերտորեն զուգորդում են մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացմանը, նպաստում տեխնիկատնտեսական և սոցիալ-կուլտուրական առաջընթացին, հնգամյա պլանով ձեռնարկության առջև ծառացած խնդիրների իրականացմանը: Եվ պետք է գոհունակությամբ նշել, որ տասներորդ հնգամյակի անցած տարիներին էլեկտրամեքենաշինարարներն զգալի հաջողություններ են ձեռք բերել պլանային առաջադրանքների և սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման գործում:

Ակտիվորեն մասնակցելով համամիութենական սոցիալիստական մրցությանը՝ հնգամյակի տարիներին միավորման կոլեկտիվը տասնմեկ եռամսյակ հաղթող է ճանաչվել ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների մեջ և արժանացել մինիստրության ու ճյուղային արհմիության կենտկոմի մրցանակի: Բացի այդ, երեք տարի անընդմեջ նա արժանացել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Զարգացնելով «Աշխատել ավելի լավ, բարձրացնել արդյունավետությունն ու որակը» նշանաբանով ծավալված ավանդական մրցությունը Ռիգայի էլեկտրամեքենաշինական, Մինսկի էլեկտրատեխնիկական, Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական և Կիևի՝ ակադեմիկոս Պատոնի անվան էլեկտրաեռակցման ինստիտուտի փորձնական գործարանների կոլեկտիվների հետ, մեր էլեկտրամեքենաշինարարները ձգտում են հաջողությամբ կատարել տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարվա առաջադրանքները: Կոմկոմիտեն գործը կազմակերպում է այնպես, որ մրցությունը դառնա կոլեկտիվի աշխատանքային ստեղծագործական ուժերի դրսևորման, նախաձեռնության զարգացման և ակտիվության բարձրացման կարևոր օղակ:

ՍՄԿԿ XXV համագումարը ինչպես հարկն է արժեքավորեց սոցմրցության ընթացքում աշխատավորական կոլեկտիվներում ծնունդ առած հայրենասիրական շարժումներն ու նախաձեռնությունները: Կուսակցությունը դրանք համարում է որպես արտադրության մարդկանց ստեղծագործական ուժերի և հայրենասիրական պարտքի դրսևորման ձևեր և խնդիր է դնում լայնորեն արմատավորել ու տարածել կոլեկտիվներում: Այդպիսի նախաձեռնություններն ու շարժումները լայն արձագանք են գտնում նաև մեր միավորման ձեռնարկություններում, կոմկոմիտեն և արտադրամասային կուսբյուրոները պաշտպանում են ինչպես երկրի առաջավոր կոլեկտիվներում, այնպես էլ մեր ձեռնարկության



առանձին օղակներում ծնունդ առած ամեն մի ուշագրավ նախաձեռնություն ու շարժում:

Հետևելով Մոսկվայի, Լենինգրադի առաջավոր ձեռնարկությունների՝ «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» շարժմանը, տասնյակ առաջավոր էլեկտրամեքենաշինարարներ հանդես են եկել նոր նախաձեռնություններով: Այսպես, առաջավոր բանվորներ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ա. Միրզոյանը, Լ. Ղամբարյանը, Լ. Պապիկյանը, Ա. Գասպարյանը, ՀԿԿ XXVI համագումարի պատգամավոր Ս. Հարությունյանը, ՀամԼԿԵՄ Կենտկոմի անդամ, կոմերիտմիության դափնեկիր Կ. Դանիելյանը և ուրիշներ դարձել են «Թողարկել միայն բարձրորակ արտադրանք և առաջին ներկայացումով» նախաձեռնության հեղինակները: Դրան հետևողները մեզ մոտ հաշվվում են հարյուրներով:

Ստեղծագործ աշխատանքի լավ օրինակ է տալիս գլխավորող գործարանի № 20 արտադրամասի՝ Ա. Մարգարյանի ղեկավարած եռակցողների բրիգադը, որն արդեն մի քանի տարի է, ինչ մրցության մեջ է Դոնի Ռոստովի «Ռոստսելմաշ» գործարանի եռակցման արտադրամասի № 6 բրիգադի հետ: Տասնվեց մարդուց բաղկացած այս ինտերնացիոնալ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ համակված է արդյունավետ աշխատելու և բարձրորակ արտադրանք թողարկելու ձգտումով: «Այսօրվա ռեկորդը՝ վաղվա նորմա»— այս է բրիգադի նշանաբանը: Բրիգադի անդամները մրցում են միմյանց հետ, բոլորն էլ ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ և իրենք էլ ստուգում են դրանց կատարման ընթացքը:

Եռակցողները խոստացել էին մինչև հոկտեմբերի 7-ը՝ ՍՍՀՄ սահմանադրության տարեդարձի օրը, կատարել տասներորդ հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքը, խնայել 50 տոննա սև մետաղ, 500 կգ էլեկտրոդ, ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրմամբ բարձրացնել թողարկվող արտադրանքի որակը և աշխատանքի արտադրողականությունը: Բրիգադի մարդիկ իրենց խոսքն ամրապնդում էին գործով՝ նախատեսված 60-ի փոխարեն օրական եռակցելով շարժական էլեկտրակայանների 85 շրջանակ: Զգալի են № 20 արտադրամասի հաջողությունները նաև գյուղատնտեսության պատվերների իրագործման ասպարեզում: Հինգ ամսում կատարելով գյուղ առաքվող էլեկտրակայանների արտադրության կիսամյա առաջադրանքը, նրա կոլեկտիվը պլանից դուրս երկրի գյուղական շրջաններն ուղարկեց 154 մեքենա: Կրճատվել են Բայկալ—Ամուրյան մայրուղու և մյուս կարևոր կառույցների պատվերների կատարման ժամկետները:

Տասներորդ հնգամյակի անցած տարիները մեր մեքենաշինարարների համար եղել են ստեղծագործական ուժերի դրսևորման, արտադրական հաջողությունների ժամանակաշրջան: Այս իրողության վկայությունը նախաձեռնությունների բազմազանությունն է, դրանց լայն արմատավորումը, արտադրական օղակների կոլեկտիվների անդամների ցուցաբերած մեծ ակտիվությունը: Այս առումով ուշագրավ օրինակ կարող է տալ գործիքաշինական արտադրամասի կոլեկտիվը, որն առաջինը նախաձեռնեց «Մեծ Հոկտեմբերի 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ», «Հնգամյակի երեք տարիների պետական առաջադրանքները կատարել ՍՍՀՄ նոր սահմանադրության տարեդարձի օրը՝ 1978 թ. հոկտեմբերի 7-ին» հայրենասիրական շարժումները, որոնք լայն արձագանք գտան մյուս արտադրամասերում:

Գործարանի երեք արտադրամաս, 15 բրիգադ և 500 անհատ մրցողներ պարտավորվել էին հնգամյակի երեք տարվա պետական առաջադրանքները կատարել ՍՍՀՄ նոր սահմանադրության առաջին տարեդարձի օրը: Դա սոսկ խոսք չէր. մեր մարդիկ գործով ապացուցեցին, որ կարող են պատվով լուծել ամեն մի արտադրական խնդիր: Սահմանադրության առաջին տարեդարձի նախօրյակին՝ հոկտեմբերի 6-ին, իրենց նոր պարտավորության կատարման մասին զեկուցեցին № 21 արտադրամասի՝ Վ. Ասատրյանի ղեկավարած եռակցողների, նույն արտադրամասի՝ Ա. Մկրտչյանի ղեկավարած 22 «բ» մասնաշենքի էլեկտրամոնտաժողների, № 9 արտադրամասի՝ Ն. Խլղաթյանի ղեկավարած մամլողների, № 12 արտադրամասի՝ Ս. Սարգսյանի ղեկավարած ֆիբերային արկղեր հավաքողների և ուրիշ բրիգադներ:

Կուսակցությունն ու կառավարությունը միշտ էլ կուսակցական և տնտեսական մարմինների ու կազմակերպությունների ուշադրությունը բևեռել են երկաթուղային տրանսպորտի հստակ աշխատանքի կազմակերպման, վագոնների պարապուրդների կանխման, ժողովրդատնտեսական բեռների փոխադրման արագացման հարցերի վրա։ Այդ խնդիրը կենսական նշանակություն ունի նաև մեզ համար, մեծ են մեր միավորման անելիքները այդ գործում։ Ի դեպ, նախկինում նման թերացումների համար կշտամբանքի է արժանացել նաև մեր ձեռնարկության ղեկավարությունը։ Եվ ահա 1978 թ. ապրիլին միավորման կոլեկտիվը հանդես եկավ մի նոր, վագոնների գերնորմատիվային պարապուրդներն իսպառ վերացնելու նախաձեռնությամբ։ Այն արժանացավ ինչպես ՀԿԿ Լենինյան շրջկոմի, այնպես էլ Երևանի քաղկոմի հավանությանը։ Այսօր կարելի է ասել, որ վագոնների բեռնման, բեռնաթափման ժամկետները խիստ կրճատվել են, պարապուրդները հասել են նվազագույնի։

Ամեն մի բնագավառում, իսկ մեքենաշինության մեջ՝ հատկապես, մեծ է մասնագիտական կատարելագործման անհրաժեշտությունը։ Ինչպես միավորման, այնպես էլ նրա օղակների կոլեկտիվները սոցմրցությամբ պարտավորություններ են ստանձնում նաև որակավորման բարձրացման վերաբերյալ։ Դրա կատարմանը նպաստում է ո՛չ միայն ուսուցման կազմակերպումը, այլև գործարանում ու նրա արտադրամասերում «լավագույն մասնագետի» կոչման համար մրցության ծավալումը։ Այդ մրցությանը մասնակցում են բանվորները, ինժեներներն ու ծառայողները։

Էլեկտրամեքենաշինարարներն արժանավայել ձևով դիմավորեցին նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները. երկու արտադրամաս, երեք տեղամաս, հինգ բրիգադ և 190 անհատ մրցողներ պարտավորվեցին 1979 թ. առաջին եռամսյակի պետական առաջադրանքները կատարել ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախօրյակին։ Նրանք այդ խոստումը ևս կատարեցին բարեխղճությամբ։

Դեռևս մեր պետության արշալույսին բանվորների նախաձեռնությամբ անցկացված շաբաթօրյակները Վ. Ի. Լենինը համարում էր բարձր գիտակցականության արդյունք։ Դրանց մեջ նա տեսնում էր կոմունիզմի ծիլերը։ «Կոմունիստական շաբաթօրյակները,— նշել է առաջնորդը,— հենց այն պատճառով ունեն հսկայական պատմական նշանակություն, որ նրանք մեզ ցույց են տալիս բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնությունն աշխատանքի արտադրողականության զարգացման մեջ, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմաններ ստեղծելու մեջ» (Երկեր, հ. 28, էջ 519)։

Շաբաթօրյակների անցկացումն առանցքային խնդիր է մեզ մոտ սոցիալիստական մրցության կազմակերպման համակարգում։ Միավորման կոլեկտիվը, հավատարիմ մնալով լավագույն ավանդույթներին, ամեն տարի արտադրական բարձր ցուցանիշներով է նշանավորում լենինյան շաբաթօրյակները։

Գործարանում լայնորեն ծավալվել է մեծ առաջնորդի ծննդյան 110-ամյակը արժանավայել գործերով դիմավորելու շարժումը։ № 12 արտադրամասի ավտոմատ ղեկավարման վահանների տեղամասի էլեկտրամոնտաժողներ Գ. Կոսյանը, Է. Սաֆարյանը, Հ. Բերբերյանը, ձուլման արտադրամասի Է. Հակոբյանի ղեկավարած բրիգադը, № 6 արտադրամասի Ս. Մելիքյանի, Հ. Սիմոնյանի բրիգադները, № 8 արտադրամասի կոլեկտիվը, արձագանքելով գործիքաշինական արտադրամասի փականագործ Լ. Պապիկյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի «1980 թվականի ապրիլի 22-ին հատել տարվա եզրագիծը» հայրենասիրական նախաձեռնությանը, հասել են նոր հաջողությունների։

Էլեկտրամեքենաշինարարները ճիշտ են ըմբռնում սովետական մարդու օրվա լոզունգը՝ այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, վաղը ավելի լավ, քան այսօր։ Եվ նրանց ազնիվ ջանքերը միշտ էլ բարձր են գնահատվում։ Սոցմրցության կազմակերպմանն ակտիվորեն մասնակցելու և ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար միավորման 490 աշխատողներ 1978 թ. պարգևատրվել են սոցմրցության հաղթողի կրծքանշանով, 2 բրիգադ



և 16 անհատ հաղթողներ՝ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվո դիպլոմով։

Ներկայումս միավորման 12.931 աշխատողներ ընդգրկված են համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, որոնցից 8.822-ը մասնակցում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը, այդ թվում 4.932-ը կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են։ Մեքենաշինարարների օրվա կապակցությամբ միավորման 38 աշխատողներ պարգևատրվեցին ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության կենտկոմի «Սոցմրցության գերազանցիկ» կրծքանշանով և պատվոգրով։ Պարգևատրման են ներկայացված նաև արտադրության 15 առաջավորներ, որոնք արդեն արտադրանք են թողարկում տասնմեկերորդ հնգամյակի հաշվին։

Սոցպարտավորությունների կատարման արդյունքների ամփոփման, հաղթող և ետ մնացող կոլեկտիվների որոշման ու գնահատման նպատակով ինչպես գործարանում, այնպես էլ արտադրամասերում ու բաժիններում ստեղծվել և գործում են հանձնաժողովներ։ Արտադրամասերի ու բաժինների պարտավորությունների կատարման արդյունքներն ամփոփվում են եռամսյակը մեկ անգամ, իսկ ներարտադրամասային մրցության արդյունքները՝ ամեն ամիս։

Կուսկոմիտեն հետամուտ է լինում մրցության հրապարակայնության և արդյունքների համեմատելիության լենինյան սկզբունքների արմատավորմանը։ Ընդլայնված նիստերում քննարկում ենք պարտավորությունների կատարման արդյունքների վերաբերյալ հանձնաժողովի որոշումը, հաստատում մրցանակային տեղերը, հանդիսավոր պայմաններում հաղթող կոլեկտիվներին հանձնում արհկոմի ու դիրեկցիայի փոխանցիկ կարմիր դրոշը։

Սոցմրցության առաջավոր կոլեկտիվների և անհատական մրցության հաղթողների շահագրգռությունը բարձրացնելու նպատակով կիրառում ենք նյութական և բարոյական խրախուսանքի բազմազան ձևեր։ Ձեռնարկության շահույթներից տարեկան 120 հազար ռուբլի հատկացվում է մրցության խրախուսման ֆոնդին։ Հաղթողներին տրվում է դրամական պարգև։ Նրանք պարգևատրվում են կրծքանշաններով, պատվոգրերով ու դիպլոմներով, հուշանվերներով, առողջարանների ու հանգստյան տների ուղեգրերով, անվճար կամ զեղչ գներով տուրիստական ուղեգրերով։ Մրցության հաղթողների լուսանկարները փակցվում են պատվո տախտակին, անունները գրանցվում պատվո գրքում։

Մրցության կազմակերպման ու ծավալման հաջողությունը պայմանավորված է արդյունավետ կուսակցական ղեկավարությամբ։ Այս առումով մենք զգալի փորձ ենք կուտակել։ Կուսկոմիտեի, նրա բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկում ենք սոցմրցության կազմակերպման աշխատանքի բարելավմանը, ինչպես նաև ծնունդ առնող նոր նախաձեռնությունների տարածմանը և արմատավորմանը վերաբերող հարցեր, մշակում միջոցառումների գործնական պլան՝ մրցության գործում տեղ գտած թերությունները վերացնելու համար։ Մրցության հարցերը քննարկման առարկա են դառնում նաև արտադրամասերի, տեղամասերի, բաժինների կուսկազմակերպությունների ժողովներում։ Դա հնարավորություն է ընձեռում ավելի խորությամբ ուսումնասիրելու ներքին օղակներում սոցիալիստական մրցության կազմակերպման վիճակը, նպաստում է մրցության կուսակցական ղեկավարման բարելավմանը, քաղաքական աշխատանքի տարբեր ձևերի միջոցով աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանն ու արմատավորմանը։

Ասածս հիմնավորեմ կոնկրետ օրինակով։ Միավորման գլխավոր ձեռնարկության՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 15 արտադրամասը չէր կատարում արտադրական պլանները, այնտեղ թույլ էր աշխատանքային ու պետական կարգապահությունը. հաճախակի նկատվում էին աշխատանքը լքելու, անհարգելի բացակայությունների, ղեկավարության հանձնարարությունների հանդեպ անտարբեր վերաբերմունքի դեպքեր։ Արտադրամասում տիրող վիճակը մենք հանգամանորեն ուսումնասիրեցինք։ Հարցը քննարկվեց կուսկոմիտեի բյուրոյի նիստերից մեկում։ Պարզվեց, որ արտադրամասի կուսբյուրոն թույլ հսկողություն է սահմանել ադմինիստրացիայի գործու-

նեության նկատմամբ, արտադրամասի պետն աչքաթող է արել աշխատանքային և արտադրական կարգապահության հարցերը։ Այդ ամենը բացասաբար են ազդել մրցության կազմակերպման վրա։ Կուսկոմիտեի բյուրոն արտադրամասի պետին ազատեց աշխատանքից, լուրջ հանձնարարականներ տվեց կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին։ Կարճ ժամանակում փոխվեց աշխատանքի վիճակը։ Այսօր № 15 արտադրամասը ոչ միայն կատարում և գերակատարում է պլանները, այլև դարձել է առաջավոր։ Նրա կոլեկտիվը հանդես է եկել մի շարք նախաձեռնություններով։ Նման օրինակներ կարելի է բերել №№ 11, 21, 29 արտադրամասերից։

Մրցության կազմակերպման գործում մեր հաջողությունները զգալի են։ Սակայն չի կարելի ասել, թե այդ ասպարեզում մենք ամեն ինչ արել ենք։ Պիտի ընդունել, որ դեռևս կան թերություններ ու թերացումներ։ Կուսկոմիտեն և սկզբնական կազմակերպությունները չեն հասել այն բանին, որ արտադրամասերում, բաժիններում, բրիգադներում մրցությունն ամենուրեք կրի գործարար բնույթ։ Առանձին արտադրամասեր (№№ 5, 7, 8, 49) ոչ բոլոր ամիսներին են համաչափ կատարում իրենց առաջադրանքները։

Պլան կատարելը բավական չէ առաջավոր համարվելու համար։ Հարկավոր է անթերի կատարել պարտավորությունները տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով։ Մրցության արդյունքների ամփոփմանը մասնակցելու իրավունքից, հետևաբար, և մրցանակային տեղերից ու խրախուսման միջոցներից զրկվում են նաև այն արտադրամասերը, որոնք թերանում են իրենց պարտականությունների կատարման մեջ։ Անցած տարվա նոյեմբերին, օրինակ, աշխատավարձի գերածախս տալու և անվտանգության տեխնիկայի կանոնները խախտելու պատճառով մրցանակային տեղերից զրկվեցին №№ 7, 9, 10, 15, 18, 19, 21 հիմնական և №№ 5, 6, 8, 11, 14, 49 նախապատրաստական արտադրամասերը։

Կուսկոմիտեն և արտադրամասային բյուրոները միջոցներ են ձեռնարկում բոլոր օղակներում մրցության կազմակերպումը բարելավելու համար։ Այդ գործում մեզ մեծ աջակցություն է ցույց տալիս մեր միավորման «Էլեկտրամեքենաշինարար» բազմատպաքանակ լրագիրը։ Այսպես, լրագիրն իր 1979 թ. հուլիսի 9-ի համարում հոդված էր տպագրել՝ «Երբ մոտեցումը ձևական է» վերնագրով։ Այնտեղ բացահայտվել էին № 4 արտադրամասում միջբրիգադային և անհատական մրցության լուրջ թերությունները։ Արտադրամասի կուսբյուրոն ու արհմիության կոմիտեն իրենց համատեղ նիստում քննարկեցին լրագրի հոդվածը և ընդունեցին իրենց հասցեին արված քննադատությունը։ Նրանք խոստովանեցին, որ, իրոք, արտադրամասում սոցմրցությունը ձևական բնույթ է կրում, չի կազմակերպվում արդյունավետ ձևով։

Արտադրամասի կուսբյուրոն և արհմիութենական կոմիտեն փոխեցին վերաբերմունքը մրցության կազմակերպման նկատմամբ, բարելավեցին այն, բոլոր բրիգադներն ու բանվորներն ընդգրկվեցին մրցության մեջ, ստանձնեցին կոնկրետ պարտավորություններ, սկսեցին լայն շարժում ծավալել նյութական ռեսուրսների, դրամական միջոցների տնտեսման համար։ Յուրաքանչյուր բրիգադ նախանշեց հումքի, էլեկտրաէներգիայի և օժանդակ նյութերի խնայողության իր խնդիրները։ Ծավալած պայքարի արդյունքները գոհացուցիչ էին. արտադրամասի կոլեկտիվը աշխատանքի արտադրողականությունը բարձրացրեց 3—4 տոկոսով, զգալի քանակությամբ լրացուցիչ արտադրանք թողարկեց խնայած միջոցների հաշվին և այժմ քայլում է մրցության առաջավորների շարքում։

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ պահանջվում է արմատապես բարելավել սոցիալիստական մրցության կազմակերպումը, կատարելագործել դրա ձևերը, մրցության արդյունքներն ամփոփելիս անպայման հաշվի առնել ոչ միայն արտադրական ցուցանիշները, այլև դաստիարակչական աշխատանքի վիճակը։ Այժմ մրցության արդյունքներն ամփոփելիս և հաղթողներին որոշելիս, ըստ սոցմրցության պայմանների, մենք հաշվի ենք առնում,



թե տվյալ կոլեկտիվի անդամներն ինչպես են իրենց դրսևորում կոլեկտիվում, հասարակական վայրերում և ընտանիքում, ինչպես են մասնակցում քաղաքական-մասսայական աշխատանքին, բարձրացնում իրենց մասնագիտական որակավորումը և այլն։ Եվ օրինաչափ է, որ մեզ մոտ մրցությունը ոչ միայն արտադրական ցուցանիշների լավացման, այլև մարդկանց դաստիարակության միջոց է։ Ասածս հիմնավորեմ այսպիսի մի օրինակով։ Երիտասարդ կաղապարողներ Ա. Եղիազարյանը (№ 5 արտադրամաս) և Գ. Կարապետյանը (№ 8 արտադրամաս) հաճախակի բացակայում կամ ուշանում էին գործից, աշխատանքային ժամերը չէին օգտագործում ռացիոնալ կերպով, թերակատարում էին առաջադրանքները։ Արտադրամասերի կուսբյուրոները, արհմիութենական ու կոմերիտական կոմիտեները նրանց ընդգրկեցին սոցիալիստական մրցության մեջ, օգնեցին ստանձնելու կոնկրետ պարտավորություններ։ Նրանց մրցության պայմանագրերում կետեր մտցվեցին նաև աշխատանքային ու արտադրական կարգապահության, բանվորական ժամի արդյունավետ օգտագործման վերաբերյալ։ Մրցության պրոցեսում նրանք, իրենց ընկերների հոգատար վերաբերմունքի շնորհիվ, վերափոխվեցին, դարձան կարգապահ։ Այսօր Ա. Եղիազարյանն ու Գ. Կարապետյանն արտադրության առաջավորներ են, իրենք են օրինակ ծառայում ուրիշներին։ Երկուսն էլ աշխատանքին զուգահեռ հեռակա կարգով սովորում են բարձրագույն ուսումնական հաստատությունում։ Այսպիսով, սոցիալիստական մրցությունն անգնահատելի դեր է խաղում ո՛չ միայն արտադրական խնդիրների լուծման, այլև մարդկանց դաստիարակության գործում։

Վերջերս մամուլում հրապարակվեց «Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման և կադրերի հոսունության կրճատման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը։ Այն գործողության ծրագիր է ինչպես տնտեսական ղեկավարության, այնպես էլ կուսկազմակերպությունների համար։ Մեր պարտքն է բոլոր միջոցներով ապահովել այդ որոշման հետևողական կենսագործումը։ Այդ գործում վճռական դեր կխաղան սոցմրցության արդյունավետ կազմակերպումն ու ծավալումը։

# ԳՈՐԾԱՐԱՆԸ ՔԱՂԱՔԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆՆ Է

**Օ. Ի. ԱԿՍՅՈՄՈՎ**
Մոսկվայի Ի. Ա. Լիխաչովի անվան ավտոգործարանի արճկոմի արտադրամասսայական ճանձնաժողովի նախագաճի տեղակալ

*Ինը տարի առաջ ՍՄԿԿ XXV համագումարում խնդիր դրվեց մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան դարձնել կոմունիստական օրինակելի քաղաք։ Մոսկվայի պատմական դերն ու միջազգային նշանակությունը պահանջում են, որ մայրաքաղաքի հետագա զարգացումն իրականանա նոր, ավելի բարձր մակարդակով։ Առաջադրելով Մոսկվան օրինակելի քաղաք դարձնելու խնդիրը՝ կուսակցությունը ելնում է այն բանից, որ դրա համար մենք ունենք օբյեկտիվ նախադրյալներ, որոնց ազդեցությունն անշեղորեն կուժեղանա։ Մոսկվացիներն ունեն հեղափոխական և աշխատանքային փառավոր ավանդույթներ, կոմունիստական շինարարության խնդիրների լուծման մեծ փորձ։ Լինելով զարգացած սոցիալիզմի պետության մայրաքաղաք, Մոսկվան իր մեջ մարմնավորում է նրա բոլոր նվաճումները։*

*Մոսկվան օրինակելի քաղաք դարձնելու խնդիրը հաջողությամբ կատարելու համար ամենից առաջ հարկավոր է, որ նրա հիմնարկ-ձեռնարկությունները, կազմակերպությունները, միկրոշրջանները և բնակելի տները դառնան օրինակելի։ Իր հերթին օրինակելի գործարանը կամ ֆաբրիկան անիմաստ են առանց օրինակելի մասնաշենքերի, արտադրամասերի, բաժինների, տեղամասերի, բրիգադների, լաբորատորիաների, բյուրոների և այլն։ Իսկ կառուցվածքային ստորաբաժանումների օրինակելիությունը շատ բանով պայմանավորված է յուրաքանչյուր բանվորական տեղում արտադրության արդյունավետության բարձրացման և որակի բարելավման համար բանվորների ու մասնագետների կատարած գերազանց աշխատանքով։ Եվ կարևորն ամենևին էլ միայն արտադրական լավ ցուցանիշները չեն։ Օրինակելի լինել, նշանակում է հաջողությամբ լուծել սոցիալական խնդիրները, խելացիորեն կազմակերպել դաստիարակչական աշխատանքը, ձգտել այն բանին, որ բանվոր մարդն աչքի ընկնի բարձր կուլտուրայով, կոմունիստական կուսակցությանն իր անսահման նվիրվածությամբ, պարտքի գիտակցական կատարմամբ և ֆիզիկական լավ զարգացմամբ։*

*Այս բոլորն էլ պայմանավորեց ամեն ինչում օրինակելիության հասնելու շարժման կազմակերպմանը Ի. Ա. Լիխաչովի անվան գործարանում։*

*Իններորդ և տասներորդ հնգամյակներում Լիխաչովի անվան ավտոգործարանում (ԶԻԼ) մշակվեցին սոցիալական և տնտեսական զարգացման կոմպլեքսային պլաններ։ Սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանը ներառում է տեխնիկական, տնտեսական և սոցիալական փոխկապակցված միջոցառումներ, որոնց նպատակը գործարանի բոլոր հնարավորությունների առավելագույն բացահայտումն ու օգտագործումն է, արտադրության արդյունավետության բարձրացումն ու կոլեկտիվի սոցիալական զարգացումը։*

*Պլանն ունի բաժիններ, որոնք համապատասխանում են աշխատանքի հիմնական ուղղություններին.*

*— թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացումը,*



*— արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի զարգացումը,*

*— արտադրության կառավարման սիստեմի կատարելագործումը,*

*— աշխատանքի գիտական կազմակերպումը,*

*— կոլեկտիվի որակավորման կառուցվածքի փոփոխությունը, աշխատավորների կրթության բարձրացումը,*

*— աշխատանքի պայմանների և առողջության պահպանման բարելավումը,*

*— բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը,*

*— ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացումը,*

*— հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացումը,*

*— ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման մակարդակի բարձրացումը,*

*— կոլեկտիվում սոցիալական հարաբերությունների կատարելագործումը և այլն։*

*Մեկ միասնական փաստաթղթում մշակված ու ամփոփված սոցիալ-տնտեսական միջոցառումները հետևողականորեն իրականացվում են։ Դրանց կատարումը ստուգվում է կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների և իրենց իսկ բանվորների կողմից։ Այդ հարցերը ևս արտացոլվում են ամեն տարի կնքվող պայմանագրերում։*

*Յուրաքանչյուր ավտոգործարանցի՝ բանվոր, ինժեներատեխնիկական աշխատող ու ծառայող, ամեն տարի ընդունում է սոցիալիստական պարտավորություններ կամ անձնական ստեղծագործական պլան, որոնցում նախատեսվում են աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի որակի բարելավման, կրթական մակարդակի բարձրացման և աշխատատեղը օրինակելի վիճակում պահելու վերաբերյալ կոնկրետ, տնտեսապես հիմնավորված միջոցառումներ։*

*Նույնանման պարտավորություններ են ստանձնում նաև բրիգադների, տեղամասերի, հերթափոխությունների, բյուրոների, արտադրամասերի, բաժինների և վարչությունների բոլոր կոլեկտիվները։*

*Ընդհանրացնելով անձնական ու խմբային պարտավորությունները, գործարանի կոլեկտիվը մշակեց և 1976—80 թվականների համար ստանձնեց սոցպարտավորություններ՝ Լիխաչովի անվան գործարանը Մոսկվա քաղաքի օրինակելի ձեռնարկություն դարձնելու համար։ Այդ պարտավորությունների կատարման նկատմամբ արհմիութենական կոմիտեն մշտական հսկողություն սահմանեց։ Կիսամյակը մեկ վերլուծվում է ամբողջ կոլեկտիվի ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։*

*Գործարհկոմի նիստերում, կոնֆերանսներում, բանվորական ժողովներում և «Մոսկովսկի ավտոզավոդեց» թերթի էջերում քննարկվում են գործարանը օրինակելի դարձնելու հարցերը, որոնք արժանանում են կուսկոմիտեի ամենօրյա ուշադրությանը և լուծվում նրա անմիջական ղեկավարությամբ։*

*Գործարանի բոլոր արտադրամասերը, մասնաշենքերը, վարչություններն ու բաժինները նույնպես կոնկրետ պարտավորություններ են ստանձնում իրենց ստորաբաժանումները օրինակելի դարձնելու, գործարանը մայրաքաղաքի օրինակելի ձեռնարկության վերածելու համար։ Եվ գործադրած ջանքերը շոշափելի արդյունք են տվել։ 1971—1978 թվականների ընթացքում արտադրության ծավալն աճեց գրեթե 50 տոկոսով։ Բեռնատար մեքենաների արտադրությունն ավելացավ 22, պահեստամասերինը՝ 78 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունն այդ ընթացքում բարձրացավ 66 տոկոսով։*

*Ստեղծվեց և հաջողությամբ ներդրվեց արտադրության կառավարման ավտոմատացված համակարգի առաջին հերթը, որը լուծում է արտադրության ընթացքի և թողարկվող արտադրանքի հաշվառման օպերատիվ հսկողության 95 բնույթի խնդիր։*

*Ձուլման արտադրության ընդլայնման և ձուլողների ձեռքի աշխատանքի բարելավման նպատակով շահագործման են հանձնվել հողանախապատրաստական մասնաշենքը և օժանդակ արտադրական այլ կարողություններ։ Մամլման մասնաշենքի համար ստեղծվել է ժամանակակից սարքավորումներով հագեցած շրջանակների ներկման նոր արտադրամաս։ Կառուցվել են չուգունի, ավ-*

տոշինարարական մասնաշենքի պահեստամասերի և հանգույցների, ավտոմատացված բարձրահարկ պահեստներ: Արտադրության կատարելագործման և ավտոմեքենաների թողարկման բարելավման համար շատ մեծ նշանակություն ունեցավ նաև ավտոհավաքման մասնաշենքի շահագործման հանձնումը, որը հնարավորություն ընձեռեց գերազանցել ավտոմեքենաների հավաքման 200 հազարանոց տարեկան բնագիծը: Ավտոգործարանը դարձավ աշխատանքի և որակի բարելավման վիթխարի լաբորատորիա:

1971 թ. ավտոգործարանի բազայի վրա ստեղծվեց արտադրական միավորում: Ներկայումս Ի. Ա. Լիխաչովի անվան Մոսկվայի ավտոգործարանը սովետական ավտոմոբիլային արդյունաբերության ամենախոշոր արտադրական միավորումներից է, որի կազմում, բացի գլխամասային գործարանից, մտնում են երկրի տարբեր շրջաններում գտնվող 15 մասնագիտացված գործարաններ:

Ավտոմատացման տեխնիկական մակարդակով Լիխաչովի անվան ավտոգործարանն աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը: Միավորումը թողարկում է ԶԻԼ—130 և ԶԻԼ—131 մակնիշի բեռնատար, ԶԻԼ—114 և ԶԻԼ—117 մակնիշի առաջնակարգ մարդատար մեքենաներ, տնային էլեկտրասառնարաններ, ավտոմեքենաների պահեստամասեր, պատրաստի հանգույցներ ու մասեր, հատուկ և ոչ ստանդարտ սարքավորումներ, ինչպես նաև սեփական կարիքների համար ամեն տեսակ սարքեր և կտրող ու չափող անհրաժեշտ գործիքներ: Գործարանն ունի ձուլման ու դարբնոցային, սառը մամլման և ավտոխցիկային, մեխանիկական մշակման և հավաքման արտադրություններ, գործիքաշինական, նորոգման, արտադրամոնտաժային, էներգետիկական և տրանսպորտային արտադրամասեր:

Գլխամասային գործարանում արտադրության հիմնական տեսակը մասսայական-հոսքայինն է: Նախապատրաստման արտադրամասերում խոշոր սերիական արտադրություն է, իսկ օժանդակ և մարդատար ավտոմեքենաների արտադրամասերում՝ փոքր սերիական և անհատական արտադրություն:

Ներգրավվելով ձեռնարկությունն օրինակելի վիճակում պահելու շարժման մեջ, ավտոգործների կոլեկտիվը հանդես եկավ արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման արմատավորման նախաձեռնությամբ:

Տեխնիկական վերազինումը տարվում է արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն արմատավորման և այդ հիման վրա արտադրական պրոցեսների, օժանդակ և տրանսպորտապահեստային աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման միջոցով: Այժմ ավտոգործարանում կան 23 կոմպլեքսային մեքենայացված արտադրամաս, 41 տեղամաս, շահագործման են հանձնվել ավելի քան 1.020 ավտոմատ և հոսքային-մեքենայացված գծեր, տրանսպորտային կոնվեյերների ընդհանուր երկարությունն անցնում է 156 կիլոմետրից: Տրանսպորտապահեստային և մյուս օժանդակ աշխատանքների մեքենայացման մակարդակը հասցվել է 92 տոկոսի:

Իրականացվել են ավտոմատացման ու մեքենայացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման մի շարք միջոցառումներ, որոնք նպաստում են ոչ միայն արտադրանքի ավելացմանը, այլև ձուլման, կաղապարման, ներկման որակի խիստ բարելավմանը:

Գործարանային և արտադրամասային արհմիութենական կոմիտեների գործունեության երկրորդ կարևորագույն ուղղությունը սոցիալական բնույթի կարևոր հարցերի լուծումն է, աշխատանքի և հանգստի լավագույն պայմանների ստեղծումը: Մեր հիմնական արտադրամասերը գտնվում են լուսավոր ու ընդարձակ շենքերում, որտեղ ստեղծվել են կենցաղային հարմարավետ պայմաններ, գործում են ժամանակակից սարքավորումներով ճաշարաններ, կիրառվում է մթերքների պատվիրման սիստեմը, կազմակերպվել է կիսաֆաբրիկատների վաճառքը: Առանձին ճաշարաններում տրվում է բուժպրոֆիլակտիկ սնունդ: Մշտական աշխատանք է տարվում կոլեկտիվի անդամների բնակարանային պայմանների բարելավման համար: Ամեն տարի ավտոգործներին հատկացվում է մոտ 47 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: Բանվոր-ծառայողները, սոցապահովագրության և ձեռնարկության միջոցների հաշվին, ստա-



նում են սանատորիաների, հանգստյան տների ու պանսիոնատների ուղեգրեր՝ զեղչ գներով կամ անվճար: Ձեռնարկությունը սանատորիաներ ունի Եսենտուկիում, Մոսկվայի մոտ, Տիշկովոյում, սանատորիա-պրոֆիլակտորիում՝ Սմոլենսկի մարզում, հանգստի տուն՝ Մոսկվայի մոտ, պանսիոնատ՝ Ղրիմում, տուրիստական բազա՝ Պենզայի մարզում: Պանսիոնատ է կառուցում Օրյոլի մարզում: Ուղեգրերի ընդհանուր քանակը տարեկան հասնում է 20 հազարի:

Օրինակելի դառնալու շարժման զարգացումը պահանջում է բարելավել կադրերի հետ տարվող աշխատանքը, ստեղծել նրանց որակավորման և պրոֆեսիոնալ վարպետության բարձրացման առավել արդյունավետ պայմաններ: Միավորման յուրաքանչյուր բանվոր, ինժեներատեխնիկական աշխատող ու ծառայող կարող է բարձրացնել իր որակավորումը, կրթությունը, ստանալ երկրորդ մասնագիտություն: Դրա համար միավորումն ունի ուսումնական լայն բազա: Ուսման տարբեր օղակներում սովորում են միավորման մոտ 25 հազար բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու ծառայողներ: Նրանցից մոտ վեց հազարը կրթություն են ստանում ստացիոնար ուսումնական հաստատություններում: Գործարանի տեխնիկական ուսուցման բաժնին կից գործում են գործարան-բուհի ցերեկային և երեկոյան բաժիններ, երկու տեխնիկում (ավտոմեխանիկականի ցերեկային ու երեկոյան և մեքենաշինականի հեռակա բաժինները): Կազմակերպվել են նաև որակի բարձրացման բազմազան դասընթացներ, վարպետների և վարորդների դպրոցներ: Տարեկան ավելի քան 1000 պատանիներ ու աղջիկներ ստանում են զանազան մասնագիտություններ ԶԻԼ-ին կից պրոֆտեխնիկական ուսումնարանում:

Լավ պայմաններ կան գիտության և արտադրության կապի ընդլայնման ու ամրապնդման համար: Ներկայումս գործարանում աշխատում են գիտությունների 56 դոկտոր և թեկնածու: Գիտահետազոտական աշխատանքներ են տարվում 60 տարբեր լաբորատորիաներում: ԶԻԼ-ը ամուր կապեր է հաստատել երկրի գիտահետազոտական այլ ինստիտուտների հետ:

Օրինակելիության արժանանալու շարժման երրորդ, բայց ոչ պակաս կարևոր ուղղությունը ավտոգործների կոմունիստական դաստիարակության ուժեղացումն է, աշխատավորների արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացումը, նրանց ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործումը:

Արհմիության գործարանային և արտադրամասային կոմիտեներն իրենց ջանքերն ուղղում են բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների շրջանում սոցիալիստական մրցության լայն ծավալմանը՝ «Բարձրացնել արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի» նշանաբանով:

Արտադրամասերի, մասնաշենքերի, բաժինների և վարչությունների կոլեկտիվներում ավելի լայն աջակցության են արժանանում ու տարածվում ներքին ռեզերվների լրիվ օգտագործմանն ուղղված հայրենասիրական նախաձեռնությունները, ինչպես օրինակ՝ «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» ու «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» և այլն: Դրա շնորհիվ գործարանում բարձրացավ ինչպես առանձին բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների, այնպես էլ ամբողջական բրիգադների, տեղամասերի, մասնաշենքերի, բաժինների և վարչությունների կոլեկտիվների աշխատանքի արդյունավետությունը:

Ամսեամիս, եռամսյակից եռամսյակ, կիսամյակից կիսամյակ, սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելիս, հաղթող են ճանաչվում նոր ստորաբաժանումներ: Երևան են գալիս կոմունիստական աշխատանքի հարվածայինների, արտադրության առաջավորների ու նորարարների նոր անուններ: Նրանք բարձրացնում են իրենց մասնագիտական վարպետությունը, պայքարում են մետաղի և նյութերի տնտեսման, սարքավորումների նկատմամբ խնամքով վերաբերվելու, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և արտադրության կուլտուրան բարձրացնելու համար:

Արհմիութենական կոմիտեն արտադրամասերի ու բաժինների հաշվետու ժողովներում, իր աշխատանքի վերլուծության և կոլեկտիվ պայմանագրերի

մասսայական ստուգումների հիման վրա, սիստեմատիկաբար մշակում և իրականացնում է սոցմրցության կազմակերպման ու ղեկավարման բարելավման միջոցառումներ։ Սոցիալիստական մրցությունն անընդհատ ծավալվում է։ Լայնորեն տարածվում են հայրենասիրական նոր նախաձեռնությունները։

Գործարանի սոցիալիստական մրցության մեջ ավտոհավաքման մասնաշենքի փականագործ-վարորդների՝ Յ. Կրանիչևի, Ա. Կիզևևի, Ն. Ալեքսևևի և ուրիշների նախաձեռնությամբ ծնունդ է առել և զարգանում է տասներորդ հնգամյակի առաջադրանքները Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի օրը կատարելու վերաբերյալ հայրենասիրական հիանալի շարժումը։ Մեր ավտոգործների նախաձեռնությունը լայն տարածում է գտել ամբողջ երկրում։ Արդեն գործարանի 5.400 բանվորներ ընդգրկվել են այդ մրցության մեջ։ 29 հազար բանվոր, 1.500 բրիգադների, հերթափոխությունների, տեղամասերի կոլեկտիվներ մրցում են «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» նշանաբանով։ Անհատական և կոմպլեքսային ստեղծագործական պլաններով մրցում են ավելի քան 7 հազար ինժեներատեխնիկական աշխատողներ։ 3.860 ինժեներներ ու տեխնիկներ աջակցություն են ցույց տալիս այն բանվորներին, որոնք ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ։ Ցանկանալով արժանավայել նշանավորել ՀամԼԿԵՄ XVIII համագումարը՝ 22 հազար երիտասարդ ավտոգործներ մրցությանը մասնակցեցին «ՀամԼԿԵՄ 60-ամյակին՝ երիտասարդության հարվածային աշխատանքը» նշանաբանով։

Լիխաչովի անվան ավտոգործարանում, ինչպես նաև երկրի բոլոր ձեռնարկություններում ու կազմակերպություններում բանվորներն ակտիվորեն մասնակցում են հասարակական զանազան կազմակերպությունների հանձնաժողովների, խորհուրդների, բյուրոների աշխատանքին, հասարակական ստուգատեսներին, մրցանակաբաշխություններին։ Այս ամենը նրանց աշխատանքային ակտիվության բավական բարձր մակարդակի վկայությունն է։

Աշխատավորների ակտիվության առավել ցայտուն արտահայտությունը ժողովներին նրանց մասնակցությունն է, կոլեկտիվ պայմանագրերի լայն քննարկումը և ընդունումը։

Բանվորների աշխատանքային ակտիվությունը դրսևորվում է նաև կոմունիստական աշխատանքի դպրոցների պարապմունքներում, որոնցում ամեն տարի սովորում է մոտ 20 հազար մարդ։ Օրինակ, կոմունիստական աշխատանքի դպրոցներում մեծ հետաքրքրությամբ անցան «Աշխատաժամանակի իմ ռեզերվները» թեմայով գործնական պարապմունքները։ Յուրաքանչյուր ունկնդիր պարապմունքի նախօրյակին կատարեց իր աշխատանքային օրվա ինքնալուսանկարում և լրացրեց հատուկ քարտեր։ Այնուհետև պարապմունքի ժամանակ տեղի ունեցավ ինքնաստուգման քննարկում, երբ յուրաքանչյուր բանվոր սեփական աշխատանքին նայում է իր աշխատանքային ընկերների աչքերով։

Արտադրության կառավարման մեջ բանվորների գործնական ընդգրկման կարևոր ձև են մշտական գործող խորհրդակցությունները։ Դրանք նպաստում են բանվորների ստեղծագործական նախաձեռնությունների համակողմանի զարգացմանը, գործարանի կյանքի կարևորագույն հարցերի լուծման նպատակով դրանց օգտագործմանը, արտադրության բարձր արդյունավետության ապահովմանը, իրենց և ընդհանուր աշխատանքի արդյունքների նկատմամբ բանվորների շահագրգռության բարձրացմանը, արտադրության վերահսկողության իրականացման գործում ավտոգործների ներգրավմանը։

Մշտական գործող արտադրական խորհրդակցությունները բանվորների մեջ մշակում են ղեկավարման ու տնտեսավարման հմտություններ, օգնում կենսագործելու լենինյան պատգամներն այն մասին, որ բոլոր աշխատավորները պետք է դառնան կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գիտակից մարտիկներ, գործեն պետականորեն, դրսևորեն իրենց ընդունակությունները, նախաձեռնությունը, տնտեսավարման արվեստը։

Գործարանում սիստեմատիկաբար անցկացվում են հատուկ ստուգատեսներ ու ռեյդեր և մասսայական ստուգումներ։ Օրինակ, տնտեսման ու խնայողության համագործարանային ստուգարքին մասնակցել են ավելի քան 23 հա-



զար բանվորներ։ Նրանց արած 2.400 առաջարկությունների արմատավորումից տնտեսվել է 6 միլիոն 860 հազար ռուբլի։

Աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործմանը նվիրված ստուգատեսն անցկացնելիս հետազոտվել է մոտ 32 հազար 800 աշխատատեղ, բանվորներից ստացվել է 19 հազար 600 առաջարկություն։ Դրանց իրականացումը կոլեկտիվին հնարավորություն է տվել աշխատողների պլանային թիվը իջեցնել 1.300 մարդով։

Ամեն տարի գործարանի բոլոր արտադրամասերում ու մասնաշենքերում տեղի է ունենում էլեկտրաէներգիայի և վառելանյութի խնայողության ստուգատես, որին մասնակցում է ավելի քան 4.500 մարդ։

Հասարակական հանձնաժողովների և խորհուրդների գործունեությանը ակտիվորեն մասնակցող բանվորները հոգատարություն են դրսևորում ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունավետության բարձրացման նկատմամբ, որը և վկայում է նրանց աշխատանքային ակտիվության բարձր մակարդակի մասին։

Արտադրական-մասսայական աշխատանքի հանձնաժողովներն ու խորհուրդները բանվորներին մասնակից են դարձնում արտադրական ընթացիկ և հեռանկարային պլանների մշակմանը, ինչպես նաև կապիտալ շինարարության, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլանների և կոլեկտիվ պայմանագրերի քննարկմանը, օգնում են բանվորներին սոցիալիստական պարտավորությունների մշակման գործում, ստուգում են դրանց կատարումը և համապատասխան բաժինների ու ֆունկցիոնալ ծառայության հետ համատեղ ամփոփում սոցիալիստական մրցության արդյունքները, ի հայտ բերում հաղթողներին ու ետ մնացողներին։

Աշխատավարձի սիստեմի և աշխատանքի նորմավորման կատարելագործման վերաբերյալ առաջարկությունների մշակման, աշխատանքի վարձատրման սահմանված պայմանների կիրառման նկատմամբ մշտական վերահսկողության ապահովման գործում բանվոր-ծառայողներին ներգրավելու համար ստեղծված են աշխատավարձի և աշխատանքի նորմավորման և այլ հանձնաժողովներ։

Ավտոգործների հասարակական-քաղաքական ակտիվության դրսևորման բարձրագույն ձևը աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը նրանց մասնակցությունն է։ Գործարանում մոտ 38,5 հազար մարդ կրում է «Կոմունիստական աշխատանքի հարվածային» բարձր կոչումը, իսկ այդ շարժմանը մասնակցում է 64 հազար մարդ։

Մեծ աշխատանք է տարվում արտադրության մարդկանց ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման համար։ Գործարանի մշակույթի պալատը կուլտուր-մասսայական աշխատանքի բազան է, ավտոշինարարների հանգստի կենտրոնը, Մոսկվայում այդ տիպի խոշորագույն հիմնարկությունը։ Այն ունի 1.000 տեղանոց թատրոն, լսարան, համերգասրահ, մանկական թատրոն, պարասրահ, 700 հազար անուն գրքերով գրադարան, աստղադիտարան և պլանետարիում։ Մշակույթի պալատին կից գործում են ժողովրդական թատրոն, կուլտուրայի համալսարան, ժողովրդական կրկես, սիմֆոնիկ նվագախումբ, բալետային դպրոց, հետաքրքրական հանդիպումների, շախմատի-շաշկու ակումբներ և այլն։ Ամեն օր մշակույթի պալատ է հաճախում մոտ ութ հազար մարդ։

Գեղարվեստական ինքնագործունեությանը մասնակցող ավտոշինարարների թիվն անցնում է 3.000 մարդուց։ Մշտապես կատարելագործվում է գեղարվեստական ինքնագործունեության հետագա զարգացման նպատակով տարվող աշխատանքը։ Արտադրամասային գեղարվեստական ինքնագործունեության 54 կոլեկտիվներում ընդգրկված են մոտ 1.500 բանվոր-ծառայողներ։ Մշակույթի պալատի 22 կոլեկտիվներում և նրա մասնաճյուղերում զբաղվում է ևս 1.000 մարդ։

Ինչպես մշակույթի պալատի, այնպես էլ արտադրամասային գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվները համերգային մեծ գործունեություն են ծավալում արտադրամասերի կարմիր անկյուններում, գործարանի հանրակացարաններում, Մոսկվայի համերգասրահներում։ Բարելավվել է համերգների ցանկը։ Բարձրացել է կատարման մակարդակը։ Ամեն տարի կազմա-

*կերպվում են ավելի քան 600 համերգ, ներկայացում և առանձին ելույթներ, որոնց ունկնդրում է 445 հազար մարդ։*

*ԶԻԼ-ը ունի նաև սպորտային հիմնարկությունների լայն ցանց։ «Տորպեդո» սպորտային ակումբը մեր երկրի ֆիզիկական կուլտուրայի հնագույն կոլեկտիվներից է և իր շարքերում ունի «Աշխատանք» կամավոր ընկերության ավելի քան 24 հազար անդամ։ Ակումբում զբաղվում են սպորտի 26 ձևով։ Սպորտային բոլոր ձևերում և առողջապահական աշխատանքներում ընդգրկված են 19 հազար ավտոգործներ։ Մոտ 100 հազար մասնակիցներ ամեն տարի մրցության են դուրս գալիս ձմեռային և ամառային սպարտակիադաներում։*

*Սպորտային ակումբն ունի 23 հազար տեղանոց ստադիոն, ֆուտբոլային դաշտերով, վոլեյբոլի, բասկետբոլի, գորոդկիի հրապարակներով, թենիսի կորտերով, հոկեյի սահադաշտով, թեթև ատլետիկայի՝ ռետինաբետոնային ծածկով մարզադահլիճով։ Ավտոշինարարների տրամադրության տակ են նաև ըմբշամարտի նոր դահլիճները, ավտոմատացված հրաձգարանը, որոնք հանդերձավորված են տեխնիկայի վերջին խոսքով։*

*«Տորպեդո» ֆուտբոլային թիմը երկրի եռակի չեմպիոն է, ՍՍՀՄ հնգակի գավաթակիր և երկրի առաջնության վեցակի մրցանակակիր։ «Տորպեդո» ակումբի կոլեկտիվը մեծ աշխատանք է ծավալում ֆիզկուլտուրայի ու սպորտի զարգացման, ուսումնամարզական պրոցեսի անցկացման անհրաժեշտ նյութական բազայի հարստացման համար։*

*Մեզ մոտ ֆիզկուլտուրան ամենից առաջ ավտոգործարանցիների առողջության ամրապնդման, նրանց աշխատունակության բարձրացման, համակողմանի և ներդաշնակ զարգացման միջոց է։ Այդ իսկ տեսակետից ելնելով էլ իրենց աշխատանքն են կազմակերպում գործարանի հասարակական ու մարզական կազմակերպությունները։*

*Վերլուծելով գործարանը մայրաքաղաքի օրինակելի ձեռնարկության վերածելու նպատակով տարվող աշխատանքը, անհրաժեշտ է նշել նրա շարունակ մեծացող նշանակությունը։ Ընթացիկ տարվա ամռանը Մոսկվայում տեղի կունենան օլիմպիական խաղեր։ Այդ պատճառով մայրաքաղաքի սոցիալ-տնտեսական զարգացման և նրա բնակիչների կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծմանը զուգընթաց, սոցիալիստական մրցության նոր ձևը՝ Մոսկվան օրինակելի քաղաք դարձնելու շարժումը, կնպաստի նաև օլիմպիական խաղերի հաջող նախապատրաստմանն ու անցկացմանը։*

*Կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ մենք հաջողությամբ կլուծենք մեր առջև ծառացած խնդիրները և մեր ավանդը կներդնենք Մոսկվա քաղաքը օրինակելի դարձնելու պատվավոր ու պատասխանատու գործում։*

---



# ԳՅՈՒՂԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՀԻՄՔԸ

**Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր

*ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ նյութական արտադրության զարգացման խնդիրների լուծման հաջողությունը մեծապես պայմանավորված է այդ արտադրության մասնակիցների և նրանց ընտանիքների սոցիալական պահանջմունքների բավարարմամբ։ Եվ դա հասկանալի է. որքան բարձրանում է մարդկանց նյութական բարեկեցությունը, այնքան ավելի է կարևորվում հոգևոր պահանջմունքների բավարարման նշանակությունը, առանց որի անհնար է մտածել անհատի բազմակողմանի, ներդաշնակ զարգացման, գյուղի և քաղաքի միջև սոցիալ-տնտեսական էական տարբերությունների հաղթահարման մասին։ Իսկ դա նշանակում է, որ մարդկանց փոխհարաբերությունները, կենցաղը և կուլտուրան մշտապես պետք է լինեն արտադրության ղեկավարների, կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումում շեշտվեց, որ գյուղի աշխատավորների բնակարանային և կենցաղային կարիքների, կուլտուրական պահանջմունքների բավարարման մասին այդ կազմակերպությունները պետք է հոգան ոչ պակաս չափով, քան հոգում են արտադրության զարգացման մասին։*

*Պլենումում նշվեց, որ պետական և կոլտնտեսային կապիտալ ներդրումները ոչ-արտադրական նշանակություն ունեցող օբյեկտներում, գլխավորապես սոցիալական ոլորտում, 1965—1977 թթ. ընթացքում կազմեցին ավելի քան 40 մլրդ ռուբլի, որը հավասար է սովետական իշխանության ողջ պատմության ընթացքում այդ ոլորտում կատարած ներդրումների $^3/_4$-ին։ Այդ թիվը վկայում է, որ սոցիալական ոլորտի կապիտալ ներդրումներն առանձնապես արագ են ավելացել վերջին 10—12 տարիներին։*

*Ոչ-արտադրական ոլորտում նյութական բարիքներ չեն ստեղծվում, բայց կասկած լինել չի կարող, որ այդտեղ ստեղծվում և իրացվում են հսկայածավալ հոգևոր արժույթներ (կամ բարիքներ), որոնք հասարակության բոլոր անդամների բարեկեցության բաղկացուցիչ մասն են։ Այս տեսակետից էլ ոչ-արտադրական հիմնական ֆոնդերը հասարակության հոգևոր հարստության ավելացման և անհատի բազմակողմանի զարգացման նյութական հիմքն են։*

*Ի՞նչն է մարդուն կապում նրա բնակավայրին՝ լինի դա գյուղ, թե քաղաք։ Ամենից առաջ, իհարկե, աշխատանքը և նյութական վաստակը։ Սակայն ոչ միայն դա։ Որքան էլ կարևոր են զուտ տնտեսական նկատառումները, այսօր դրանք միակը, հաճախ նույնիսկ վճռականը լինել չեն կարող։ Սոսկ «հացի խնդիրը» չէ, որ որոշում է այսօր մարդկանց կենսամակարդակը. ոչ պակաս կարևոր է հոգևոր բարիքների, անհատի սոցիալական առաջընթացի հնարավորությունների առկայությունը։ Իսկ դա անմիջականորեն առնչվում է հասարակության ոչ-արտադրական ոլորտի զարգացման հետ։*

Նկատի առնելով հիմնական ոչ-արտադրական ֆոնդերի սոցիալական կարևորությունը, բերենք մի քանի թվեր երկրի և մեր հանրապետության ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի և դրանց կազմում արտադրական և ոչ-արտադրական ֆոնդերի հարաբերակցության մասին։

Աղյուսակ 1

ՍՍՀՄ և ՀՍՍՀ հիմնական ֆոնդերը և դրանց կառուցվածքը

| | ՍՍՀՄ (միլիարդ ռուբլի) | | ՀՍՍՀ (միլիոն ռուբլի) | |
|---|---|---|---|---|
| | 1965 | 1978 | 1965 | 1978 |
| Հիմնական ֆոնդեր ընդամենը | 601 | 1540 | 4501 | 12931 |
| Հիմնական ոչ-արտադրական ֆոնդեր | 241 | 534 | 2004 | 4920 |
| Վերջինիս տեսակարար կշիռը՝ տոկոսներով | 40,1 | 34,7 | 44,5 | 38,1 |

Նշված տարիների ընթացքում ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում արտադրական ֆոնդերն աճել են ավելի արագ, քան ոչ-արտադրական ֆոնդերը, որի հետևանքով հիմնական ֆոնդերի ընդհանուր ծավալում ոչ-արտադրական ֆոնդերի տեսակարար կշիռը նկատելի չափով նվազել է։ Այնուամենայնիվ, դրանց բաժինը բավական մեծ է. ՍՍՀՄ հիմնական ֆոնդերում՝ շուրջ 35, ՀՍՍՀ-ում՝ 38,1 տոկոս։

Թեև ոչ-արտադրական ֆոնդերի տեսակարար կշիռը 1965—1978 թթ. որոշ չափով նվազել է, հիմքեր կան ենթադրելու, որ այդ ֆոնդերի դերը հետագայում կմեծանա։ Այս ենթադրությունը բխում է հետևյալ նկատառումներից։ Նախ, հեռանկարում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը զուգընթաց ավելանալու է ազատ ժամանակը, որի շնորհիվ կմեծանա հոգևոր բարիքների ստեղծման ու սպառման, հետևաբար և ոչ-արտադրական ոլորտի ու դրա նյութական հիմքը կազմող ֆոնդերի նշանակությունը։

Երկրորդ, առևտրի վիճակագրությունը վկայում է, որ ժողովրդական սպառման ապրանքների մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր աճի պայմաններում ոչ պարենային ապրանքների շրջանառությունն անհամեմատ ավելի արագ է մեծանում, քան պարենային ապրանքներինը։ Այսպես, ՍՍՀՄ-ում 1965—1978 թթ. ժողովրդական սպառման ապրանքների վաճառքը պետական և կոոպերատիվ առևտրի ոլորտում ավելացել է 2,3 անգամ, այդ թվում՝ պարենային ապրանքներինը՝ 2, իսկ ոչ պարենային ապրանքներինը՝ 2,7 անգամ։ Մեր հանրապետությունում պարենային և ոչ պարենային ապրանքների վաճառքն ավելացել է համապատասխանաբար 2,5 և 3,4 անգամ։ Այդ միտումը հատկապես ցայտուն է դառնում, երբ համեմատում ենք ավելի երկարատև ժամանակաշրջանի վերաբերյալ տվյալները (տե՛ս «Народное хозяйство СССР в 1978 году»,стр. 407, «Народное хозяйство Арм.ССР в 1978 году», стр. 161)։

Հազիվ թե հարկ լինի ապացուցելու, որ եթե պարենային ապրանքների սպառումը բավարարում է մարդու ֆիզիոլոգիական պահանջմունքները, որոնք որոշակի սահման ունեն, ապա ոչ պարենային ապրանքներինը, որոշակի իմաստով, դուրս է զուտ նյութական պահանջմունքների շրջանակից և արդեն առնչվում է մարդկանց սոցիալ-կուլտուրական պահանջմունքների բավարարման հետ, որոնց սահմաններն անհամեմատ մեծ են։ Ահա թե ինչ են վկայում քաղաքի և գյուղի աշխատավորների ընտանեկան բյուջեների տվյալները ՍՍՀՄ-ում. եթե 1940 թ. արդյունաբերական բանվորի ընտանիքի ընդհանուր եկամուտների շուրջ 54 տոկոսը ծախսվել էր սննդամթերքների և 17,5 տոկոսը սոցիալ-կուլտուրական ու կենցաղային ծառայությունների վրա, ապա 1978 թվականին սննդամթերքի ծախսերի բաժինը 32 տոկոս էր, իսկ սոցիալ-կուլտուրական և կենցաղային ծառայություններինը, ընդհակառակը, ավելացել և կազմել է 22,8 տոկոս։

Իհարկե, միշտ չէ, որ սոցիալ-կուլտուրական ծախսերի տեսակարար կշիռը



անշեղորեն բարձրացել է. վերջին շրջանում՝ 1965—1978 թթ. հիշյալ ծախսերի բաժինը բանվորի ընտանիքի եկամուտների մեջ փոքր ինչ նվազել է (24,2 տոկոսից՝ 22,8 տոկոսի)։ Սակայն երկար ժամանակաշրջանի առումով, օրինակ, 1940 կամ 1950 թթ. համեմատ, սոցիալ-կուլտուրական նպատակով կատարած ծախսերի ավելացման միտումը միանգամայն ակնհայտ է։

Այդ են հաստատում նաև կոլտնտեսային ընտանիքի բյուջեի տվյալները. 1940—1978 թթ. այդ ընտանիքի ծախսերի մեջ սննդամթերքի բաժինը 67,3 տոկոսից իջել է մինչև 34,4 տոկոս, իսկ սոցիալ-կուլտուրական և կենցաղային ծախսերի բաժինը, ընդհակառակը, ավելացել է 4,4-ից մինչև 14,9 տոկոս «Народное хозяйство СССР в 1978 году», стр. 391—392)։

Վերջապես, տեղին է նշել, որ ազգային եկամուտի սպառման ֆոնդը, որպես բնակչության կենսամակարդակի վճռական աղբյուր, գոյանում է ո՛չ միայն բնակչության անձնական եկամուտներից, որոնք բաշխվում են աշխատանքի վարձատրության կարգով, այլև սպառման հասարակական ֆոնդերի հաշվին, որոնց զգալի մասը իրացվում է ոչ-արտադրական ոլորտի ծառայությունների ձևով։ Այս կարգի եկամուտները նույնպես առաջանցիկ տեմպերով են ավելանում։ Այսպես, մեր երկրի բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները 1965—1978 թթ. ավելացել են 1,8 անգամ, մինչդեռ սպառման հասարակական ֆոնդերից ստացած վճարումներն ու արտոնությունները բնակչության մեկ շնչի հաշվով այդ ժամանակաշրջանում ավելացել են 2,2 անգամ (նույն տեղը, էջ 390)։

Ընդ որում, հիշյալ վճարումների ու արտոնությունների մոտ 50 տոկոսը ոչ դրամական (ոչ կանխիկ) բնույթ ունեն։ Դրանք այն արտոնություններն են, որոնք կապված են ուսուցման, կադրերի պատրաստման և որակավորման բարձրացման ապահովման, բուժսպասարկման և բուժօգնության բարելավման, նախադպրոցական հիմնարկությունների, մարզական և այլ օբյեկտների ընդլայնման հետ։ Ինչպես երևում է այդ թվարկումից, սպառման հասարակական ֆոնդերից ստացվող իրական եկամուտների պատկառելի մասը գոյանում և իրացվում է ոչ-արտադրական ոլորտում։ Այստեղից բխում է, որ ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը աստիճանաբար ավելի ու ավելի է առնչվում ոչ-արտադրական ոլորտի ըստ ամենայնի ընդլայնման, ուստի և՝ հիմնական ոչ-արտադրական ֆոնդերի ավելացման հետ։

Այսպիսով, եթե մարդու զուտ նյութական, օրինակ՝ սննդի, հագուստի, բնակարանի և այլ պահանջմունքները, որքան էլ դրանք մեծ լինեն, այսուհանդերձ որոշակի սահման ունեն, ապա ոչ նյութական, հոգևոր պահանջմունքները խիստ դժվար է սահմանագծել։ Համենայնդեպս, անհատի նյութական պահանջմունքների համեմատությամբ, նրա հոգևոր պահանջմունքների շրջանակը շատ ավելի մեծ է և անընդհատ աճի միտում ունի։ Այստեղից հետևում է, որ հասարակության ոչ-արտադրական ֆոնդերը ևս անընդհատ աճելու են ո՛չ միայն բացարձակ, այլև հարաբերական առումով, այսինքն՝ դրանց տեսակարար կշիռը հիմնական ֆոնդերի ընդհանուր ծավալի մեջ աստիճանաբար մեծանալու է։

Գյուղատնտեսության զարգացման խնդիրները քննարկելիս սովորաբար ընդունված է այդ ճյուղի արտադրանքը համադրել արտադրաֆոնդերի, առավելապես հիմնական արտադրաֆոնդերի հետ, դրանով իսկ գյուղատնտեսությունից ստացվող արդյունքը վերագրվում է միայն այդ ֆոնդերի օգտագործմանը։ Ինչ վերաբերում է ոչ-արտադրական հիմնական ֆոնդերին, ապա առաջին հայացքից թվում է, թե դրանք որևէ առնչություն չունեն գյուղատնտեսության զարգացման խնդիրների հետ։ Ավելին, անցյալում քիչ չեն եղել դեպքեր, երբ այս կամ այն կոլտնտեսությունում ոչ-արտադրական օբյեկտների (կուլտուրայի տուն, ակումբ, մարզական օբյեկտներ և այլն) շինարարությունը համարվել է չարդարացված շռայլություն, որը, իբր, խանգարում է արտադրության զարգացմանը։ Արտադրական և ոչ-արտադրական ֆոնդերի նման հակադրումն այսօր էլ դեռ հաղթահարված չէ լիովին։

Սակայն շեշտենք, որ նման տեսակետը ո՛չ միայն սխալ մտածելակերպի արդյունք է, այլև ունեցել է օբյեկտիվ պատճառ, այն է՝ ժողովրդական տնտեսության նյութական ռեսուրսների սահմանափակությունը։ Երբ հասարակու-

Սևանի ավազանում՝ ընդամենը 500 ռուբլու և այլն։ Այդ նշանակում է, որ այսօր մեր հանրապետության լեռնային շրջաններում, գյուղատնտեսության մեկ աշխատողի հաշվով, 2,5 անգամ ավելի քիչ հիմնական ոչ-արտադրական ֆոնդեր, հետևապես և նույն չափով ավելի քիչ սոցիալ-կուլտուրական նպատակների հատկացվող միջոցներ ունենք, քան Արարատյան տնտեսական շրջանում։

Ինչպես տեսնում ենք, գյուղի բնակչության սոցիալ-կուլտուրական ֆոնդերով ապահովվածության առումով, հանրապետության լեռնային և հարթավայրային շրջանների միջև գոյություն ունի մեծ խզում։ Եվ դա լեռնային շրջանների բնակչության միգրացիայի, հատկապես գյուղից երիտասարդ կադրերի արտահոսքի հիմնական պատճառներից մեկն է։

Գյուղական բնակչության արտահոսքը դեպի քաղաք, որն ընդհանուր առմամբ օրինաչափ երևույթ է, մեր հանրապետության կոնկրետ պայմաններում հաճախ անցանկալի հետևանքների է հանգեցնում ինչպես լեռնային շրջաններում, որոնք դատարկվում են բնակչությունից, այնպես էլ հարթավայրային շրջաններում ու խոշոր քաղաքներում, ուր տեղի է ունենում բնակչության չափից ավելի կենտրոնացում՝ հարուցելով մի շարք բարդ խնդիրներ։

Նկատի ունենալով այս հանգամանքը, հանրապետության կառավարությունը որոշակի միջոցներ է ձեռնարկում լեռնային շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման համար, որի նպատակն է լուծել բնակչության զբաղվածության խնդիրը տեղում։ Ինչ խոսք, որ լեռնային գյուղերում բնակչության ամրակայելու վճռական միջոցը արդյունաբերության և տրանսպորտի զարգացումն է։ Սակայն դա միակ պայմանը չէ։ Արդյունաբերական ձեռնարկությունների տեղաբաշխումը, որոշ չափով լուծելով զբաղվածության հարցը լեռնային շրջաններում, միաժամանակ չի կարող լուծել սոցիալական և կուլտուրական բազմաթիվ այլ հարցեր։ Լեռնային շրջանների պրոբլեմը սոցիալ-տնտեսական բարդ պրոբլեմ է, որի լուծումը հաճախ նույնիսկ պետք է սկսել ոչ թե գործարանի, այլ կուլտուրայի տան կամ մարզահրապարակի շինարարությունից։

ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության կառավարությունը վերջին տարիներին լուրջ միջոցներ են ձեռնարկել մի շարք շրջաններում ինչպես արդյունաբերական ձեռնարկությունների, այնպես էլ օդանավակայանների կառուցման, ճանապարհների բարեկարգման, կուլտուրական օբյեկտների, կապի և հեռուստատեսային ցանցի ընդլայնման նպատակով։ Սրանք մեծ մասամբ հիմնական ոչ-արտադրական ֆոնդերի ներդրումներ են, իսկ ավելի ճիշտ՝ սոցիալական ֆոնդերի կամ ռեսուրսների ավելացման ներդրումներ, որոնց դերը դժվար է գերագնահատել։ Դրանք ո՛չ միայն բարձրացնում են լեռնային շրջանների բնակչության զբաղվածության աստիճանը, որը, իհարկե, չափազանց կարևոր է, այլև ստեղծում են հարազատ վայրերում տեղի բնակչության մնալու և աշխատելու, այդ վայրերը շենացնելու բարենպաստ հոգեբանական մթնոլորտ։

Ինչպես հայտնի է, 1978 թ. հունիսին ՍՍՀՄ կառավարությունը հատուկ որոշում ընդունեց գյուղում բնակարանային շինարարության և կադրերի ամրակայման մասին։ Որոշման մեջ նշվում է, որ գյուղում բնակարանային շինարարության տեմպերը դեռևս ցածր են, պատշաճ ուշադրություն չի նվիրվում անհատական բնակելի տների շինարարությանը, դրանք հաճախ կառուցվում են առանց կոմունալ հարմարությունների և չեն համապատասխանում ժամանակակից ճարտարապետության պահանջներին։ Էական թերություն է նաև այն, որ շատ տնտեսություններ անհրաժեշտ օժանդակություն ցույց չեն տալիս իրենց անդամներին անհատական տներ կառուցելու գործում։ Որոշմամբ նշվում են այն միջոցառումները և արտոնությունները, որոնք բնակարանային շինարարության զարգացման միջոցով կնպաստեն գյուղում կադրերի ամրակայման խնդրի լուծմանը։ Այդ հարցը վերջերս մեկ անգամ ևս դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության հատուկ ուշադրության առարկա, որն արտահայտվեց «Գյուղական բնակարանային շինարարության համար փայտե պանելային տների և տեղական նյութերից կառուցվող տների փայտե դետալների կոմպլեկտների գործարանային արտադրության հետագա զարգացման մասին» որոշման մեջ։ Այդ որոշմամբ կարևոր միջոցառումներ են նախատեսվում երկրի գյու-



ղական վայրերում ինդուստրիալ բնակարանային շինարարության արտադրական բազայի համակողմանի զարգացման համար, որոնց կենսագործումը մեծապես կնպաստի գյուղական վայրերի հետագա բարեկարգմանը և գյուղի սոցիալական զարգացման խնդիրների լուծմանը։

Նշված որոշումներն ամբողջովին վերաբերում են նաև մեր հանրապետությանը, հատկապես նրա լեռնային շրջաններին։ Այդ շրջանների շատ գյուղերում անհատական բնակելի տների կառուցումը զգալի դժվարությունների հետ է կապված։ Հասկանալի է, որ կառավարության նոր որոշման հետևողական և արագ կենսագործումը հատկապես կարևոր նշանակություն է ստանում հենց լեռնային շրջանների, դրանցում բնակչության և աշխատուժի ամրակայման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումի և դրա հետ կապված մյուս որոշումների հետևողական կենսագործումը պահանջում է զգալի չափով ավելացնել սոցիալական ասպարեզում կատարվող ժողովրդատնտեսական ներդրումները գյուղում, որի նպատակն է արագորեն բարելավել գյուղական բնակչության սոցիալական պահանջմունքների բավարարման նյութական պայմանները։

Գյուղի սոցիալական պրոբլեմների լուծման տնտեսական հիմքը գյուղատնտեսության արտադրաուժերի զարգացմանը համընթաց հիմնական ոչ-արտադրական ֆոնդերի ավելացումն է։ Քանի որ զարգացման արդի փուլում գյուղատնտեսական ձեռնարկությունները մեծ ծախսեր են կատարում արտադրության տեխնիկական վերազինման նպատակով, ապա նրանք միշտ չէ, որ կարող են անհրաժեշտ միջոցներ հատկացնել նաև ոչ-արտադրական ֆոնդերի ընդլայնմանը։ Այս առումով համամիտ ենք այն կարծիքին, որ միայն գյուղատնտեսական ձեռնարկությունների հաշվին նման հատկացումներ կատարելը կարող է դանդաղեցնել քաղաքի և գյուղի բնակչության կենսական և աշխատանքային պայմանների մերձեցման պրոցեսը։ Բացի դրանից, միայն սովխոզների և մանավանդ կոլտնտեսությունների սեփական միջոցներին ապավինելը կարող է հանգեցնել նրան, որ կմեծանա սոցիալ-տնտեսական պայմանների տարբերացումը նաև առանձին գյուղական շրջանների ու գոտիների միջև։ Որպեսզի դա տեղի չունենա, պետք է զգալի օգնություն ցույց տրվի գյուղին՝ ոչ-արտադրական ֆոնդերի ավելացումը ֆինանսավորելու միջոցով (տե՛ս «Вопросы экономики», 1978, № 8, стр. 76)։

Չթերագնահատելով զուտ արտադրական-տնտեսական հարցերի լուծման առաջնահերթ կարևորությունը, այժմ անհրաժեշտ է արմատապես լուծել գյուղի սոցիալ-կուլտուրական հասունացած խնդիրները։ Ինչ խոսք, արտադրական նպատակով կատարած ներդրումներն անմիջական, այսպես ասած, շոշափելի արդյունք են տալիս, որով և հաշվարկում ենք դրանց ետգնման ժամկետը և տնտեսական արդյունավետության մյուս ցուցանիշները։ Մինչդեռ սոցիալական ասպարեզում ներդրումներն անմիջական նյութական արդյունք չեն տալիս և դժվար է հաշվարկել դրանց տնտեսական արդյունավետությունը, ավելի ճիշտ, առայժմ չունենք այդ հաշվարկի շատ թե քիչ ընդունելի մեթոդներ։ Սակայն կասկած չկա, որ սոցիալական ներդրումները ոչ պակաս համակողմանի ազդեցություն են գործում գյուղական կյանքի վրա։

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին կուսակցության ու կառավարության ընդունած որոշումները վերստին շեշտեցին տնտեսական ու սոցիալական լծակների մեծ դերը ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրների հաջող լուծման գործում։ Կյանքը վկայում է, որ սոցիալական հարցերի լուծումը ո՛չ միայն հասարակական արտադրության զարգացման արդյունք է, այլև դրա անհրաժեշտ օբյեկտիվ պայմանը։ Գյուղատնտեսական արտադրության զարգացումը կարող է հաջողությամբ ընթանալ, եթե այն զուգորդվի գյուղի բնակչության սոցիալ-կուլտուրական և կենցաղային պայմանների պլանաչափ բարելավման հետ։

Գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումների կենսագործումը պահանջում է կոմպլեքսայնորեն զարգացնել ինչպես գյուղի արտադրական ու ոչ-արտադրական ոլորտները, այնպես և արտադրական ու ոչ-արտադրական ֆոնդերը։

# ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՈՒ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Գ. Ե. ԹԵՐԼԵՄԵԶՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*ՄԵՐ ԵՐԿՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ զարգացումը մեծապես պայմանավորված է սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում և օղակներում տնտեսական մեխանիզմի կատարելագործման ու կառավարչական աշխատանքի արդյունավետության բարձրացման խնդիրների հաջող լուծմամբ։ Իրականացնելով սովետական հասարակության պետական, տնտեսական և սոցիալական զարգացման ղեկավարումը, ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրում տնտեսավարման մեթոդների կատարելագործմանը, ժողովրդական տնտեսության կառավարման բարելավմանը։ Կուսակցության XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց. «...վճռական օղակը դառնում է կազմակերպումը, այսինքն էկոնոմիկայի կառավարման հետագա կատարելագործումը բառիս ամենալայն իմաստով»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 87)։*

*Կառավարման կատարելագործման նպատակով ՍՄԿԿ XXV համագումարի դիրեկտիվների իրականացման գործում խոշոր քայլ հանդիսացան ՍՄԿԿ Կենտկոմի «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին», ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշումները։*

*Արդի փուլում էկոնոմիկայի առջև ծառացած խնդիրների հաջող լուծումը պահանջում է արմատապես բարելավել կառավարման ու պլանավորման ինֆորմացիոն ապահովվածությունը։ Ձեռնարկությունների, կազմակերպությունների և կառավարման ու պլանավորման մարմինների տեղեկատվության ու ինֆորմացիայի համակարգի կատարելագործումը կառավարչական գործունեության արդյունավետության բարձրացման աշխատանքների բաղկացուցիչ մասն է։*

*Կառավարման ու պլանավորման ինֆորմացիոն ապահովումն ըստ էության տեղեկատու նյութերի հավաքման, վերամշակման, պահպանման ու հաղորդման, դրանց համակողմանի վերլուծության ու գնահատման հիման վրա կառավարչական որոշումների ընդունման, այդ որոշումները կատարողին հասցնելու և ապա կատարման նկատմամբ վերահսկողություն իրականացնելու աշխատանքների մի ամբողջ կոմպլեքս է։*

*Ճանաչողական պրոցեսը մարդկային գիտելիքների բոլոր բնագավառներում կատարվում է ինֆորմացիայի միջոցով, որի օգտագործմամբ մարդն*



*իմաստավորված գործունեություն է ծավալում հասարակական կյանքի տարբեր ոլորտներում։ Իրազեկությունը չափազանց անհրաժեշտ է կառավարչական անձնակազմին, առանց որի հնարավոր չէ արդյունավետ կառավարել ենթագերատեսչական համակարգերի գործունեությունը։ Վ. Ի. Լենինը նկատել է, որ «կառավարելու համար հարկավոր է ձեռնհաս լինել, հարկավոր է լիովին ու մանրամասնորեն գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան...»* (Երկեր, *հ. 30, էջ 547)։*

*Ընդ որում, անհրաժեշտ է նշել, որ ղեկավարի և կառավարչական ողջ անձնակազմի քաջատեղյակության, ձեռնհասության նկատմամբ պահանջներն աստիճանաբար մեծանում են՝ կառավարվող օբյեկտների թվի ավելացման, լուծվելիք խնդիրների բնույթի բարդացման համեմատ։*

*Արդի փուլում ժողովրդական տնտեսության ծավալների և զարգացման դինամիկայի մասին պատկերացում կազմելու համար բերենք մի քանի տվյալներ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության վաթսունական և յոթանասնական թվականների զարգացման վերաբերյալ։ Հանրապետության բնակչությունը վերջին 18 տարում ավելացել է 1,3 մլն մարդով և այժմ անցել է 3 միլիոնից։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվն այդ ժամանակամիջոցում ավելացել է 2,5 անգամ և 1978 թվականին կազմել է 1,1 մլն մարդ։ Նշված ժամանակաշրջանում նյութական արտադրության ճյուղերի հավաքական հանրային արդյունքն աճել է ավելի քան 4, իսկ ազգային եկամուտը՝ 4,5 անգամ։ Ազգային հարստության բաղկացուցիչ մասը՝ հանրապետության հիմնական ֆոնդերը, 1961—1978 թթ. ընթացքում աճել են 4,5 անգամ, այդ թվում արտադրական հիմնական ֆոնդերը՝ 5 և արդյունաբերական արտադրական ֆոնդերը՝ 6 անգամ։ Կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 200 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Տրանսպորտի բոլոր տեսակների ապրանքաշրջանառությունը մեծացել է ավելի քան 4 անգամ։ Ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կազմել է 13 մլրդ ռուբլի, որը 5 անգամ ավելի է, քան ժողովրդական տնտեսության մեջ ներդրված է եղել Հայաստանում սովետական իշխանության առաջին 40 տարում։*

*Արդի փուլի տնտեսական զարգացման բնորոշ գիծը ո՛չ միայն կառավարվող օբյեկտների ավելացումն է, այլև արտադրության համակենտրոնացումն ու խոշորացումը։ Արտադրության համակենտրոնացմանը զուգահեռ մեծ աշխատանք է տարվում դրա մասնագիտացման ու կոոպերացման նպատակով, որի շնորհիվ ընդլայնվում են կապերը արդյունաբերության և ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի ձեռնարկությունների ու կազմակերպությունների, ինչպես նաև առանձին տերիտորիալ-արտադրական համալիրների միջև։ Ուստի և այժմ յուրաքանչյուր կառավարվող և կառավարող օբյեկտից պահանջվում է լուծել անհամեմատ ավելի բարդ տնտեսական խնդիրներ։*

*Իր հերթին կառավարման ներսում լուծման ենթակա խնդիրների ծավալի մեծացումն ու բարդացումը պայմանավորում են ինֆորմացիայի ծավալի նկատամբ պահանջմունքների աճը։ Ավելի խիստ պահանջներ են ներկայացվում ինֆորմացիայի կազմի, բովանդակության և աշխատանքների կազմակերպման նկատմամբ, որոնք կապված են տվյալ նպատակի համար անհրաժեշտ տեղեկությունների հավաքման, վերամշակման, կուտակման ու պահպանման հետ։*

*Հանրային արտադրության և հասարակական կյանքի կառավարման ամեն մի մակարդակում անհրաժեշտ է որոշակի ծավալի, կազմի ու բովանդակության ինֆորմացիա, որը հնարավորություն է ընձեռում օբյեկտիվորեն գնահատելու արտաքին պայմաններն ու գործերի վիճակը կառավարվող օբյեկտներում։ Այդ կապակցությամբ չափազանցություն չի լինի, եթե ինֆորմացիան անվանենք աշխատանքի գործիք՝ կառավարչական գործունեության համար։*

*Որոշումների նախապատրաստման պրոցեսին նախորդում է կառավարչական մի շարք ֆունկցիաների կատարում, որոնք սերտորեն կապված են ինֆորմացիայի զանազան տեսակների ու դրանց շարժման հետ։ Դրանք են՝ դիրեկտիվ, պլանային և նորմատիվային, մեթոդական և տեղեկատու բնույթի,*

գործունեության տվյալ ճյուղի հետ անմիջական առնչություն ունեցող՝ գիտության, տեխնիկայի և էկոնոմիկայի հասումների, անհրաժեշտ քանակությամբ ռեսուրսների առկայության ու դրանք ձեռք բերելու հնարավորության, այդ ռեսուրսների մեկ միավորի ձեռք բերման համար կատարվող ծախսերի մակարդակի, կառավարվող օբյեկտների գործերի փաստական վիճակի վերաբերյալ ինֆորմացիաները և այլն։ Զանազան տեսակի ինֆորմացիոն նյութեր հավաքելուց հետո դրանք սիստեմավորվում են, վերամշակվում, իսկ անհրաժեշտության դեպքում՝ նաև վերակազմվում հետագա խնդիրներին համապատասխան։

Եվ, վերջապես, շատ կարևոր են եղած ինֆորմացիաների համակողմանի ուսումնասիրումը, վերլուծումը և գնահատումը, նպատակ ունենալով սպառիչ տեղեկություններ ստանալ կառավարվող օբյեկտների գործերի վիճակի, արտաքին պայմանների առկայության և այն գործոնների մասին, որոնց ազդեցության տակ ձևավորվել են այս կամ այն ցուցանիշները, երևույթների ու իրադարձությունների զարգացման դինամիկությունն ու միտումները, դիրեկտիվ խնդիրների բնույթը և դրանց կատարումն ապահովող պայմանների առկայությունը, ինչպես նաև հավաքված ինֆորմացիայի ծավալի ու կազմի մեջ պարունակվող ուրիշ տեղեկություններ։

Այսպիսով, յուրաքանչյուր կառավարչական որոշում նախապատրաստելու և ընդունելու համար, անկախ դրա նշանակությունից ու բնույթից, անհրաժեշտ է ինֆորմացիոն նախապատրաստություն, որը բազա է հենց կառավարչական որոշումների բովանդակությունը և դրանց ընդունումը հիմնավորելու համար։

Դրա հետ մեկտեղ, կառավարչական այն որոշումները, որոնք նախապատրաստվել և ընդունվել են ելակետային ինֆորմացիայի ողջ զինանոցի առավելագույն օգտագործման հիման վրա, այլ բան չեն, քան նոր ստեղծված ինֆորմացիա, որը կառավարվող օբյեկտներին տրվում է դիրեկտիվ ցուցումների, հրամանների, հրահանգչական-մեթոդական նյութերի, կոնտրոլ թվերի, պլանային ցուցանիշների ձևով։

Ինչպես տեսնում ենք, կառավարող և կառավարվող համակարգերը կապակցված են ինֆորմացիայի միջոցով։ Կառավարվող օբյեկտներից արտադրատնտեսական գործունեության վիճակի, ռեսուրսների առկայության ու դրանց ձեռքբերման հնարավորությունների և այլնի մասին ինֆորմացիան հաղորդվում է կառավարող համակարգին, որտեղ այդ տվյալները, այլ արտաքին աղբյուրներից ստացված ինֆորմացիայի հետ, օգտագործվում են ներգործության հրահանգներ մշակելու համար, որոնք այնուհետև ուղարկվում են կառավարվող օբյեկտները։

Կառավարման գործողության ոլորտն ընդգրկում է հանրային արտադրության ու հասարակական կյանքի բոլոր կողմերը, և, հետևաբար, այդ նպատակով օգտագործվող ինֆորմացիայի ծավալը, կազմը և բովանդակությունը չափազանց ընդարձակ են ու բազմակողմանի։ Այստեղ մենք կանդրադառնանք միայն այդ պրոբլեմի մի քանի հարցերի լուսաբանմանը։

Ժողովրդական տնտեսության և դրա առանձին ճյուղերի զարգացման կառավարման բոլոր օղակներում ու մակարդակներում օգտագործվող ինֆորմացիայի ընդհանուր ծավալի մեջ ամենամեծ տեսակարար կշիռը պատկանում է տնտեսական ինֆորմացիային։ Այն պարունակում է կոլեկտիվների արտադրական-տնտեսական գործունեության ընթացքը և արդյունքները, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների առկայությունն ու օգտագործման աստիճանը, արտադրության, աշխատանքի պայմանները բնութագրող տեղեկություններ, արտադրության և աշխատանքի արդյունավետության կազմակերպական ապահովման, տնտեսական կապերի վիճակի, դրանց փոփոխման հեռանկարների մասին տեղեկություններ և այլն։

Այսպիսով, տնտեսական ինֆորմացիան այն բազմազան տեղեկությունների ամբողջությունն է, որով բնութագրվում է ճյուղի և տերիտորիալ-արտադրական համալիրների, ձեռնարկությունների, կազմակերպությունների տնտեսական զարգացման վիճակը՝ արտադրատնտեսական գործունեության նախապատրաստման ու իրականացման առնչությամբ։ Դրանք կարելի է արձանագրել, հաղորդել, վերակազմել, պահպանել ու օգտագործել ժողովրդական տնտեսության ու դրա առանձին օղակների կառավարման ֆունկցիաների իրականացման համար։



Տնտեսական ինֆորմացիայի բաղադրամասերն են՝ հաշվառման-վիճակագրական ինֆորմացիան, որտեղ սովորաբար նկարագրվում են արդեն կատարված իրադարձությունները, երևույթներն ու պրոցեսները, և պլանային ինֆորցիան, որտեղ երևույթները, իրադարձություններն ու պրոցեսները ենթադրվում են իրագործել ապագայում։

Տնտեսական ինֆորմացիայի կարևորագույն առանձնահատկությունը դինամիկությունն է և գործողության շղթայաձև բնույթը։ Ընդ որում, կառավարչական հիերարխիայի զանազան մակարդակներում պահանջվում են տնտեսական ինֆորմացիայի խիստ որոշակի ծավալ, կազմ և բովանդակություն՝ նկատի ունենալով ճյուղային առանձնահատկություններն ու գործունեության ոլորտը։ Դրանց օգտագործման ամեն մի մակարդակում այդ պարամետրերը որոշվում են մի շարք հիմնարար սկզբունքներ պահպանելու անհրաժեշտությամբ։ Նախ, համեմատաբար ոչ մեծ ծավալի ելակետային (նախնական) ինֆորմացիայից հարկավոր է ստանալ այն ամենը, ինչ անհրաժեշտ է հանրային արտադրության կառավարման ու ղեկավարման համար։ Տնտեսական ինֆորմացիան սպասարկում է ղեկավարման բոլոր օղակներին և բավարարում էկոնոմիկայի կառավարման առկա ոլորտները, իսկ դա նշանակում է, որ նրա սահմանները և ներքին բովանդակությունը որոշելու ժամանակ ելնում ենք այդ ինֆորմացիայի բազմանպատակ օգտագործման պահանջներից։

Ինֆորմացիայի համակարգը պարունակում է ո՛չ միայն տեղեկություններ տնտեսական կյանքի իրադարձությունների, երևույթների ու պրոցեսների մասին, որոնք ստացվում են դիտարկման միջոցով, այլև այնպիսի տեղեկություններ, որոնք չեն կարող ստացվել դիտարկման կամ հաշվարկի անմիջական ճանապարհով, այլ ստացվում են երկրորդական խմբավորման, վերլուծության ու գնահատման միջոցով։

Նշված սկզբունքները պահպանելու հետ մեկտեղ, տնտեսական ինֆորմացիայի որակական հատկանիշներն ապահովում են մեթոդական միասնությունը դրա բաղադրամասերի ու ցուցանիշների միջև, այսինքն՝ լիակատար համապատասխանությունն ու համադրելիությունը ելակետային և հետագա, պլանային և փաստացի, առաջնային և վերակազմված ինֆորմացիաների միջև։ Տնտեսական ինֆորմացիան իր կազմում պետք է արտացոլի օբյեկտիվ, ճիշտ տեղեկություններ տնտեսական իրադարձությունների, երևույթների, պրոցեսների մասին։ Այն անհրաժեշտ է հավաքել, վերամշակել ու հաղորդել՝ խստորեն պահպանելով սահմանված ժամկետները, որովհետև ուշացած ինֆորմացիան արժեզրկվում է և դառնում կամ բոլորովին անօգտակար կամ, լավագույն դեպքում, կարող է օգտագործվել ոչ ուղղակի նշանակությամբ՝ կիրառման ոլորտի զգալի նեղացմամբ։ Խիստ կարևոր են ինֆորմացիայի պարզությունը և մատչելիությունը, հակիրճությունը, հագեցվածությունը և կոմպլեքսայնությունը։

Տնտեսական ինֆորմացիայի էական առանձնահատկությունը նոր հաղորդում, տեղեկություններ պարունակելն է։ Ընդ որում, նորության հասկացությունը հարաբերական է այն իմաստով, որ ինֆորմացիան նոր է նրանց համար, ովքեր այն ստանում ու ընկալում են առաջին անգամ։

Վերը նշված սկզբունքների ու որակական հատկանիշների պահպանման նշանակությունն ավելի հրատապ է դարձել արդի պայմաններում՝ տնտեսական ինֆորմացիայի ձևավորման ու օգտագործման աշխատանքների ողջ կոմպլեքսի վրա գիտատեխնիկական առաջընթացի ազդեցության կապակցությամբ։ Այժմ արագ տեմպերով արմատավորվում են ինֆորմացիայի հավաքման, մշակման, կուտակման, որոնման, հաղորդման ու օգտագործման մեքենայացված ու ավտոմատացված սիստեմները։ Ներկայումս մեր հանրապետությունում գործում

են 78 հաշվողական կենտրոններ ու կազմակերպություններ, որտեղ գերազանցապես օգտագործվում են 3-րդ և 4-րդ սերունդների հաշվիչ մեքենաներ։

1975 թ. համեմատությամբ ԷՀՄ պարկը մեր հանրապետությունում մեծացել է 70 տոկոսով։ Ընդ որում, այդ ժամանակամիջոցում ո՛չ միայն ավելացել է շահագործման մեջ գտնվող մեքենաների թիվը, այլև բարձրացել է դրանց բեռնվածության միջին մակարդակը։

Հաշվառման-հաշվողական աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման հետ միաժամանակ ի հայտ են գալիս նոր պահանջներ ինֆորմացիայի հոսքի կազմակերպման, դրա բովանդակության և որակի բարելավման, ինչպես նաև ինֆորմացիայի շարժման բոլոր փուլերում կարգապահության պահպանման նկատմամբ։

Ամենից առաջ կարևոր է կարգավորել և սահմանել տնտեսական ինֆորմացիայի ձևավորման ու օգտագործման պրոցեսների հետ կապված գործողությունների համաժամանակությունը և հաջորդականությունը, այդ բնագավառի մեքենայացումն ու ավտոմատացումը՝ միաժամանակ նկատի ունենալով, որ ինֆորմացիոն համակարգի գործողության ալգորիթմի ամեն մի խախտում նվազեցնում է դրա օգտագործման արդյունավետության ցուցանիշները։

Մեքենայացված և ավտոմատացված ինֆորմացիոն համակարգի գործողության արդյունավետությունը զգալի չափով պայմանավորված է դրա բաղադրամասերի՝ գրաֆիկի պահպանման, ինֆորմացիայի հավաքման, հաշվառման ու հաղորդման կազմակերպման, վերամշակման ու վերակազմման, պահպանման ու որոնման կապակցվածության աստիճանով։ Համակարգի բաղադրամասերի կապակցվածության խախտումը բացասաբար է ազդում տնտեսական ինֆորմացիայի շարժման համաչափության վրա և դառնում ինֆորմացիայի ձգձգման պատճառ։

Դրա հետ մեկտեղ, մեքենայացված և ավտոմատացված ինֆորմացիոն համակարգերի գործողության պայմաններում անհանդուրժելի են դառնում պետական և ներհամակարգային հաշվետվությունների ներկայացման սահմանված ժամկետների խախտման փաստերը։ Չէ՛ որ հաշվառման-հաշվողական աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման կարևորագույն պայմաններից մեկը ինֆորմացիան շրջանառության մեջ դնելու պահին ելակետային (առաջնային) ինֆորմացիայի լրիվ ծավալի առկայությունն է։ Ինֆորմացիայի ամբողջության ոչ ժամանակին ու ոչ լրիվ կոմպլեկտավորումը ձգձգում է մեքենայացված ինֆորմացիոն համակարգերում օգտագործվող ինֆորմացիայի լրիվ կազմի ապահովումը։

Վիճակագրության ինֆորմացիոն համակարգի ծառայություններից օգտվում են ոչ միայն վիճակագրական մարմինները։ Այն դարձել է հաշվառման-հաշվողական աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման տերիտորիալ կենտրոն, որի ծառայություններից, տնտհաշվարկային հիմունքներով, օգտվում են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ։ Ուստի տնտեսական ինֆորմացիայից պահանջվում է ամբողջականություն ու հավաստիություն, կրկնության բացառում, իսկ այն հայթայթող մարմիններից՝ ինֆորմացիայի հոսքի արագացում և հանրային արտադրության կառավարման ու պլանավորման նպատակով դրա օգտագործման պոտենցիալ հնարավորությունների մեծացում։

Տնտեսական ինֆորմացիայի մեծ պահանջարկը պայմանավորված է թվարկված հատկանիշներից յուրաքանչյուրի նշանակության բարձրացմամբ և ժողովրդական տնտեսության կառավարման ու պլանավորման կատարելագործման պրոցեսի վրա դրա ազդեցության աճով։

Այսպես, տնտեսական պրոցեսների կամ ռեսուրսների առկայության և դրանց շարժման մասին ոչ լիարժեք ինֆորմացիան զրկում է կառավարչական որոշումների նախապատրաստման ու ընդունման ժամանակ առավել արդյունավետությամբ ինֆորմացիա օգտագործելու հնարավորությունից և կարող է պատճառ դառնալ, որ սխալ կամ աղավաղում թույլ տրվի տնտեսական գործու-



նեության այն մասի գնահատման ժամանակ, որի վերաբերյալ մեր ինֆորմա-
ցիան սպառիչ չէ։ Այդ իսկ պատճառով նման պայմաններում նախապատրաստ-
ված և ընդունված կառավարչական որոշումը բավականաչափ հիմնավորված
չէ, այսինքն, դրանում այս կամ այն չափով առկա է պայմանականությունը,
որն անկասկած իջեցնում է նման որոշման օգտակարությունը և դժվարացնում
դրա իրականացումը։

Ներկայումս առանձնապես անհանդուրժելի են տնտեսական ինֆորմացիայի
անհավաստիության փաստերը՝ անկախ դրանց առաջացման պատճառներից։
Սխալներն ու աղավաղումները ինֆորմացիան դարձնում են ապակողմնորոշող,
իսկ դրա օգտագործումը հղի է տնտեսական վրիպումներ թույլ տալու վտանգով։

Մեր պրակտիկայում, ցավոք, դեռևս չեն վերացել տնտեսական ինֆորմա-
ցիայի առանձին ցուցանիշների ու տարրերի կրկնորդման փաստերը՝ դրանց
ստացման զանազան աղբյուրներում։ Դա մի կողմից հանգեցնում է ինֆորմա-
ցիայի հավաքման, վերամշակման ու հաղորդման վրա ուժերի, միջոցների ու
ժամանակի անտեղի ծախսումների, մյուս կողմից՝ պատճառ է դառնում հաշվե-
տվության կամ այլ ինֆորմացիայի միևնույն ցուցանիշների խառնաշփոթու-
թյան։ Այս իմաստով բնորոշ է կապիտալ շինարարության պետական պլանի
կատարման ընթացքի վերաբերյալ տվյալների օրինակը։ Այդ ինֆորմացիան
ստացվում է երկու աղբյուրից՝ կապալառու կազմակերպություններից, որոնք
իրականացնում են շինարարությունը և պատվիրատու կազմակերպություններից,
որոնց համար կատարվում են շինարարական աշխատանքները։ Կապալառու
կազմակերպությունների տվյալներով հանրապետությունում շինմոնտաժային
աշխատանքների պլանը 1978 թվականին կատարվել է 103,5 տոկոսով, իսկ
պատվիրատուների տվյալներով՝ միայն 98,7 տոկոսով։

Տնտեսական ինֆորմացիայի կրկնորդման վերացումը կնպաստի զանազան
կառավարչական ծառայությունների ֆունկցիաների հստակ սահմանազատմա-
նը և կբարձրացնի կառավարչական գործունեության արդյունավետությունը։

Մեքենայացված և ավտոմատացված ինֆորմացիոն համակարգերի անցնելու
հետ մեկտեղ ռեալ հնարավորություններ են ընձեռվում բազմիցս օգտագործելու,
այսպես կոչված, մշտական ինֆորմացիան, այսինքն՝ այն ինֆորմացիան, որը
չի պարունակում նոր հաղորդումներ կամ տեղեկություններ, մասնավորապես
այնպիսի ցուցանիշներ, որոնք բնութագրում են տնտեսական պրոցեսները հաշ-
վետու ժամանակաշրջանին նախորդած ժամանակում, ինչպես նաև պլանային,
նորմատիվային, տեղեկատու և այլ կարգի ինֆորմացիաներ։ Այդ հնարավորու-
թյան օգտագործումը հավաքման ենթակա ինֆորմացիայի ծավալի կրճատման
էական ռեզերվ է, և, հետևաբար, կնպաստի աշխատանքների արժեքի իջեցմանը
և ինֆորմացիայի հոսքի արագացմանը։

Ընդ որում, հավաքվող ինֆորմացիայի ծավալի կրճատումը՝ դրա կազմից
«պայմանականորեն մշտական» մասը հանելու միջոցով, բոլորովին չի ազդի
ելնող ինֆորմացիայի ծավալի ու բովանդակության վրա, քանի որ այդ պայ-
մանական-մշտական մասը օգտագործման համար արդեն պատրաստ է և նոր
ստացվող ինֆորմացիայի համակարգի մեջ դրա միաձուլումը իրականացնում
է մեքենայացված ու ավտոմատացված եղանակով։

Տնտեսական զարգացման արդի փուլում պակաս կարևոր չէ ինֆորմացիայի
հոսքի արագացման պրոբլեմի լուծումը։ Արտադրանք թողարկողների ու սպա-
ռողների տնտեսական կապերի ընդլայնման պայմաններում ուժեղանում է
օպերատիվ վերահսկողությունը և միջամտությունը արտադրության ընթացքին,
կրճատվում են արտադրանքի նորացման ժամկետները, փոփոխվում է պա-
հանջարկը արտադրատեսակների նկատմամբ։ Այս գործոնները հանգեցնում
են կառավարչական որոշումները նախապատրաստելու և դրանք կատարողնե-
րին հասցնելու ժամկետների կրճատման կենսական անհրաժեշտությանը։ Պա-
հանջվում է ժամանակին ու օպերատիվ ներգործություն ապահովել կառավար-
վող օբյեկտների արտադրական-տնտեսական գործունեության ընթացքի վրա։

Եվ, վերջապես, հարկավոր է հարստացնել տնտեսական ինֆորմացիայի
կազմն ու բովանդակությունը, բարձրացնել դրանց օգտակարության ու արդյու-

նավետության մակարդակը՝ ելնելով այն խնդիրներից, որոնք լուծվելու են տնտեսական ինֆորմացիայի օգտագործմամբ:

Ամեն մի կոնկրետ դեպքում, տնտեսական ինֆորմացիան պահանջում է տարբեր ծավալ, կազմ, բովանդակություն, ստույգության աստիճան, մանրամասնություն, ստացման ժամկետներ և պարբերականություն: Թվարկված հատկանիշներից յուրաքանչյուրն անմիջական ազդեցություն ունի ամբողջ տնտեսական ինֆորմացիայի արժեքի, ձևավորման ու օգտագործման վրա, ուստի այդ պարամետրերի կոնկրետացման ժամանակ կարևոր նշանակություն ունի դրանց համադրումն այն արդյունքի մեծության հետ, որ ենթադրում ենք ստանալ այդ ինֆորմացիայի օգտագործման միջոցով, այսինքն, անհրաժեշտ է որոշել այդ բնագավառի աշխատանքի ծավալի օգտակարության և արդյունավետության մակարդակը մինչև դրա իրականացումն սկսելը:

Ընդ որում, հարկավոր է նկատի ունենալ, որ ինֆորմացիայի ծավալի մեծացումը, դրա կազմի ընդլայնումը, բովանդակության հարստացումը, ճշգրտության ու մանրամասնության աստիճանի բարձրացումը և ժամկետների արագացումը հանգեցնում են ինֆորմացիայի արժեքի թանկացման և, հետևաբար, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում այդ պարամետրերի փոփոխման մասին որոշման ընդունումը պետք է պայմանավորվի դրանց օբյեկտիվ պահանջով:

Այնուամենայնիվ , պարամետրերի փոփոխությունն ունի օգտագործման ենթակա ինֆորմացիաների օգտակարության ու արժեքավորության բարձրացման միտում, քանի որ այդ պարամետրերից յուրաքանչյուրի ու դրանց բոլորի բարելավումը նպաստում է այն բանին, որ ստացվեն ավելի ճշգրիտ ու բովանդակալից ինֆորմացիաներ ու դրանք սպառողին հասցվեն սահմանված ժամկետում: Որքան ավելի է ճգճգվում ինֆորմացիայի հաղորդումը, այնքան ավելի է այն արժեքազրկվում, հնանում ու դառնում ոչ պիտանի կառավարչական գործունեության համար:

Ինֆորմացիայի կատարելագործումը և կառավարման ու պլանավորման մարմինների պահանջների բավարարման բնագավառում դրա դերի բարձրացումը մեծապես կնպաստի ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործմանը և տնտեսական մեխանիզմի արդյունավետ գործունեությանը:

---



# ՓԻԼԻՍՈՓԱՆԵՐԻ ԵՎ ԳԵՆԵՏԻԿՆԵՐԻ ՄԻ ԲԱՆԱՎԵՃԻ ԱՌԹԻՎ

Ն. Պ. ԴՈՒԲԻՆԻՆ
ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս

**ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅԱՆ** և, մասնավորապես, մարդու գենետիկայի նոր հաջողություններն այնպիսին են, որ որոշ մարդիկ ենթադրում են, թե իբր հասել է այն ժամանակը, երբ մարդու պրոբլեմի հարցում կենսաբանությունը մարտահրավեր է նետում փիլիսոփայությանը: Չբացասելով սոցիալական միջավայրի ազդեցությունը՝ գտնում են, որ մարդու սոցիալական հատկությունները ծագել են ոչ թե որպես պատմության արգասիք, այլ homo sapiens տեսակի կենսաբանական ձևավորման պրոցեսներում: Ուստի և մարդու անհատականության մեջ ավելի խոր ու հիմնական է համարվում նրա կենսաբանական անհատականացումը, իսկ սոցիալական պայմանները դիտվում են որպես արտաքին միջավայր, որով և պայմանավորված է անհատի կենսաբանական բնածին հատկանիշների դրսևորման աստիճանը: Մարդը, որպես սոցիալական երևույթ, համարվում է երկու գործոնների՝ ժառանգականության և միջավայրի գործողությունների ածանցյալ: Ժառանգականությունն իբր դնում է մարդու ինչպես մարմնական, նույնպես և հոգևոր բոլոր առանձնահատկությունների հիմքը: Հայտարարվում է, որ մարդը, իր ստացած գենետիկական ծրագրին համապատասխան, ի ծնե ունի անհատական տարբերություններ— ինչպես մարմնական, նույնպես և հոգեբանական առանձնահատկություններ: Միանգամայն տրամաբանական է, որ ըստ այս հայեցակետի, նոր մարդու ստեղծումը, իբր, հնարավոր է միայն մարդկության գեների փոփոխման դեպքում, քանի որ գեները, իբր, էությունն են, իսկ մարդկանց սոցիալական հատկանիշները՝ սոսկ երևույթ:

Վերջին տարիներս մեր մամուլում ծավալվեց և այժմ էլ շարունակվում է բանավեճը սոցիալականը և կենսաբանականը մարդու մեջ հարցի շուրջ: Երկու գործոնների տեսությունն այս բանավեճում արտացոլվեց մարդու էության սահմանման մեջ, որի համաձայն, իբր, մարդու էությունը բիոսոցիալական է, որ նրա ներքին ուժերը կապակցված են բիոսոցիալական միասնությամբ: Մարդու բիոսոցիալական էության ընդունումն իսկ փոխում է փիլիսոփայության հիմնական հարցի դիալեկտիկամատերիալիստական սկզբունքները: Այսպիսի լուծումը շփոթում է գիտակցությունն ու մատերիան, ենթադրում, որ մարդու մտածողությունը կենսաբանական, այսինքն՝ նյութական պրոցես է:

## ՄԱՐԴՈՒ ՎԱՐՔԻ ԳԵՆԵՏԻԿԱՆ

Դիմենք մարդու գենետիկայի ռեալ հաջողություններին: Մարդու զարգացման վրա նրա գեների ազդեցության հիմնական տվյալները ներկայացված են Մարկ Կյուզիկի ընդարձակ ամփոփագրում, ուր տեղեկություններ են բերվում 2.336 մուտանտային գեների մասին: Դրանցից 2.028 մուտացիաները, այսինքն՝ 87 տոկոսը կազմում են զարգացման անոմալիաների (անկանոնությունների) դեպքերը՝ ժառանգական հիվանդությունների տեսքով, որոնք արտահայտվում են մարսողության, արյան շրջանառության, շնչառական և այլ ներքին օրգանների ախտահարմամբ, ներքին սեկրեցիոն գեղձերի, մաշկի, կենտրոնական նյարդային համակարգության, զգայական օրգանների, արյան, հյուսվածքային անհամատեղելիությամբ, 310-ը՝ 13 տոկոսը, ներկայացված են բիոքիմիական, ֆիզիոլոգիական, իմունոլոգիական ու կազմաբանական՝ արտաքուստ չեզոք փոփոխություններով: Մուտացիաների կե-

նից ավելին 138,9 (60 տոկոսը) դոմինանտային են:

Մարդու 2.336 մուտացիաների մեջ նկարագրված չէ և ոչ մի մուտանտ, որը տարբերեր նորմալ ինտելեկտը կամ սոցիալական նորմալ վարքագծի առանձնահատկությունները: Գիտությունը ոչ մի տվյալ չունի ինտելեկտի, խղճի, բարության, փոխօգնության զգացման, աշխարհայացքային միտումների և այլնի ժառանգականության մասին: Հայտնի են ուղեղի ժառանգական վնասվածքների դեպքեր, որոնք հանգեցնում են հոգեկան հիվանդությունների, սակայն սա որակապես այլ բնագավառ է բընականոն վարքի համեմատությամբ: Այս դեպքերը կլինիկայի կամ բժշկական գենետիկայի ուսումնասիրության առարկան են: Հայտնի է նաև, որ բժշկական գենետիկայի տվյալները հնարավորություն չեն ընձեռում հասկանալու բնականոն վարքագծի գենետիկան: Այդ տվյալները վկայում են, որ ուղեղի բնականոն զարգացման համար անհրաժեշտ է գենետիկական նորմալ ծրագիր, սակայն բժշկական գենետիկայի տվյալները ոչինչ չեն ասում այն մասին, թե նորմալ զարգացման պայմաններում ինչպես կձևավորվի անձի վարքագիծը նրա ողջ կյանքում: Քանի որ մարդու ուղեղի խանգարումները հետևանք են որոշակի գործողության առանձին գեների «վնասման» ազդեցության, դրանց ժառանգումը դիսկրետային է (ընդհատվածային), որը սերունդներին է փոխանցում վարքի աննորմալության տարբեր ձևերը: Այս դեպքում տարրալուծման միջոցով ուսումնասիրվում են մարդու քրոմոսոմներում տեղակայված գեները, հայտնաբերվում են ուղեղի արատներ հարուցող ֆիզիոլոգիական ու բիոքիմիական մեխանիզմները:

Խորապես ուսանելի է մարդու ինտելեկտի ժառանգականությունն ապացուցելու փորձերի պատմությունը: 1883 թ. Ֆ. Գալտոնը հայտարարեց, թե մարդկանց ինտելեկտուալ օժտվածությունը տվյալ անհատի կենսաբանական անձնական հատկանիշն է: Այս գաղափարը դարձավ ռասիստական հայացքների և Գալտոնի ստեղծած եվգենիկայի հիմքը: XX դարում հազարավոր աշխատություններ նվիրվեցին ինտելեկտի գենետիկան հասկանալու փորձերին, մասնավորապես լայն ճանաչում գտավ հոգեբանական տեստերի (ստուգանիշի) կիրառումը կոեֆիցիենտների (գործակիցների) սիստեմում: Սակայն մինչև օրս, Գալտոնի հայտարարությունից 100 տարի անց, գիտականորեն ապացուցված չէ, որ ինտելեկտուալ օժտվածությունը կազմավորվում է ինտելեկտուալության հատուկ գեների ամբողջականությամբ:

Հարց է ծագում. պատահակ՞ան է արդյոք կամ մեթոդական դժվարությունների արդյո՞ւնք է այն փաստը, որ գիտությունը մինչև օրս տվյալներ չունի մարդու բնականոն վարքագծի տարբերությունների կամ նրա ինտելեկտուալ տարբերությունների ժառանգականության վերաբերյալ: Հայտնի է, որ մեծ հաջողություններ կան կենդանիների վարքի գենետիկայի ասպարեզում: Մրջյունների ու մեղուների վարքի օրինակով ցույց է տրված, թե խմբակեցության անդամների փոխգործողություններով վարքի ինչպիսի բարդ ձևերի կարելի է հասնել կենսաբանական ժառանգականության միջոցով: Ժառանգաբար ամրակայված բնազդներն ու ռեակցիաները առանձնյակների ու նրանց խմբերի վարքի ստերեոտիպի (նույնատիպության) հիմքն են: Կենսաբանական ժառանգականության վերափոխմամբ է իրականանում գենետիկորեն ամրակայված արտացոլման ձևերի էվոլյուցիան:

## ԻՆՏԵԼԵԿՏԸ, ՈՒՍՈՒՑՈՒՄԸ, ԳԻՏԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Արտացոլման տեսության համար (քանի որ այն նկատի ունի օբյեկտիվ իրականության արտացոլումը ուղեղի կողմից) էական է այն փաստը, որ ուղեղի և զգայական օրգանների ֆիլոգենետիկ զարգացումը զուգահեռ չի ընթացել: Արտաքին աշխարհի ազդակներն ընդունող զգայական օրգաններն առաջացել են ավելի վաղ, քան հատակ տարբերակված ուղեղային կառուցվածքները: Նյարդային համակարգություն չունեցող պարզագույն օրգաններն արդեն զգայուն են լույսի, ջերմության, շփումների, քիմիական նյութերի նկատմամբ: Ձկներն ունեն հաշալավ զարգացած աչքեր, հոտառություն, ճաշակելիքի օրգաններ, մաշկային զգացողություն և ածանրության ուժը, շարժումն ու ձայնային պալիքներն ընկալող ներքին ականջ (լաբիրինթ), չնայած նրանց ուղեղի զարգացումը բավական ետ է մնում կաթնասունների ուղեղից:

Այսպիսով, միջավայրի ազդեցությունը հանգեցնում է զգայական օրգանների առաջանցիկ էվոլյուցիային, որն ստեղծում է ուղեղի կատարելագործման անհրաժեշտություն: Այսպես, օրինակ, աչքի ցանցաթաղանթում զգայական սկզբնական օրգանների առաջացումը էվոլյուցիայի ընթացքում նախորդել է ուղեղի թաղանթի համապատասխան կատարելագործմանը:

Արտաքին միջավայրի գործոնների շարքում, որոնցում տեղի է ունեցել օրգանիզմների էվոլյուցիան, կարևոր տեղ են գրավում տարածությունն ու ժամանակը. կենդանիների հոգեբանության մեջ այդ պարամետրերի զգայումը մեծապես հարստացրել է նրանց ներքնաշխարհի ձևավորումը՝ որպես օբյեկտիվ իրականության չգիտակցված արտացոլում: Կաթնասուններ ուղեղի էվոլյուցիայի ուսումնասիրությունները ցույց են տվել, որ տեղի է ունեցել ուղեղի մեծության բացարձակ ու հարաբերական աճ, հյուսվածքաբանական և կառուցվածքային տարբերակում, մեծացել է գրգիռի հաղորդման արագությունը: Կենդանիների առանձին դասերի մոտ նեյրոնների թվի ֆիլոգենեզային աճին զուգընթաց տեղի է ունեցել դրանց ձևաբանական և գործառնական մասնագիտացում: Նյարդային և, հատկապես, կենտրոնական նյարդային համակարգության ֆիլոգենեզային զարգացումն ապահովել է կենդանիների բնազդային, ժառանգաբար ամրապնդված վարքի առավել բարձր արտահայտությունը, մեծացրել նրանց վարժվելու հնարավորությունները:

Բնազդային վարքի առկայությունը Դեկարտին առիթ տվեց 300 տարի առաջ սահմանելու ռեֆլեքս հասկացությունը, որպես նյարդային համակարգության հիմնական գործողություն, որի համաձայն ազդանշան ստանալիս օրգանիզմի վարքը պատճառի և հետևանքի փոխներգործության արգասիք է: Նման տեսակետը Դեկարտին հնարավորություն ընձեռեց կենդանուն համարելու մեքենա, որի գործունեությունը պայմանավորված է միջավայրի ազդակների հարուցած ռեֆլեքսներով:

Սակայն գիտության զարգացման պրոցեսում ակնհայտ դարձավ, որ կենդանիներին հիմնականում բնորոշ է կոմպլեքսային վարքի բարդ ձևը, երբ ոչ-պայմանական ռեֆլեքսներն ու բնազդները դրսևորվում են որպես ընդհանուր վարքի տարրեր: Կենսափորձի կուտակումն ապահովվում է հետք-արտացոլումների ձևավորմամբ, պայմանական ռեֆլեքսների ստեղծումից և կենդանիների ներքնաշխարհի կոմպլեքսային բարդ փոփոխություններից հետո:

Վարքի այդ ձևը հիմնովին ուսումնասիրել է Ի. Պ. Պավլովը: Նա ցույց է տվել, թե այս կամ այն գենոտիպի առկայության դեպքում արձագանքող կենդանու մոտ ինչպես են ոչ-պայմանական ռեֆլեքսները կորցնում իրենց միանշանակությունը: Պարզվել է, որ կենդանու կենսափորձը հանգեցնում է այն բանին, որ տվյալ ոչ-պայմանական ռեֆլեքսը կարող է երևան գալ որպես պատասխան ո՛չ միայն մեկ հնացած, այլ օրգանիզմին սկզբնապես ոչ հատուկ մի շարք տարբեր ազդանշանների: Այս դեպքում տեղի է ունենում ամրակայում, երբ կենսաբանորեն արհեստական գրգռիչը ձեռք է բերում և պահպանում ոչ-պայմանական ռեֆլեքս հարուցող հատկություն:

Պայմանական այն ռեֆլեքսների գումարը, որոնց առկայությունն զգալիորեն շատացնում է օրգանիզմների վարքի ռեակցիաները, Ի. Պ. Պավլովն անվանել է առաջին ազդանշանային համակարգ: Պայմանական ռեֆլեքսների կոմպլեքսի բնական ձեռքբերումն ունի հարմարվողական, նպատակային բնույթ: Այս կոմպլեքսը, բնորոշելով տեսակային վարքի առանձնահատկությունները, վերստին առաջանում է յուրաքանչյուր սերնդի մեջ, լինելով կենդանիների տվյալ տեսակի սերնդի պարտադիր պահպանված ապրելակերպը: Քանի որ ոչ-պայմանական ռեֆլեքսների դրսևորումը բազմազան է, պայմանավորված ազդակների բնույթով, կենդանու վիճակով... և, քանի որ կենսապայմաններին համապատասխան շատ ավելի արագ են բարդանում ռեֆլեքսները, ապա կենդանիների վարքը ազդանշանային առաջին համակարգում բարդ է՝ հարմարվելով տվյալ միջավայրին:

Այս ամենը ցույց է տալիս, որ վարքի հարմարվողականության հիմքը ուղեղի առաձգականության զարգացումն է: Էվոլյուցիային զուգընթաց աճում, ավելի բարդ ու բազմազան են դառնում միջնեյրոնային կապերը: Սինապսները կարող են լինել գրգռող կամ արգելակող, գործարկող և մոդուլավորող, որի շնորհիվ ներվաբջջային համալիրները ձեռք են բերում շարժողական վիթխարի հնարավորություններ՝ ինֆորմացիայի մշակման համար:

Նյարդային պրոցեսների շարժունության, որպես հոգեկան հարմարվողականության, հիմքը գրգռման և արգելակման պրոցեսների փոխներգործությունն է: Ի. Պ. Պավլովը ցույց տվեց, որ ուղեղի մեծ կիսագնդերի թաղանթի աշխատանքի սիստեմայնությունը, շարժունությունը, աշխատանք, որն առաջանում է բնակատեղի պայմանների հերթագայումից, արդյունք է գրգռման ու արգելակման պրոցեսների հերթագայման:

Պայմանական ռեֆլեքսների ու դրանց բարդացման հիման վրա, ընհուպ մինչև ըմբռնման ու ընդհանրացման երևան գալը, վարքը ձևավորող գործոններից էական նշանակություն ունի ծնողների կողմից երեխաներին ուսուցելը: Նմանվելով ծնողներին, ընդունելով նրանց վարքի ձևերը, երեխաները վերարտադրում են այն պայմանական ռեֆլեկտոր ռեակցիաները, որոնք մինչ այդ ձեռք են բերել ծնողներն իրենց անձնական կյանքի փորձ: Յուրաքանչյուր սերնդի ամեն մի ներկայացուցիչ հասուն վիճակում, միջավայրի ազդանշանների ազդեցությամբ, ձեռք է բերում պայմանական ռեֆլեքսների իր սեփական համակարգը, որոնք նա կարող է սովորեցնել իր սերունդներին: Ակնբախ է, որ ուսուցումը պահանջում է հիշողություն, որի մակարդակը նույնպես բարձրացել է ստորակարգից դեպի բարձրակարգը կատարվող էվոլյուցիայի ընթացքում: Կրկնակի ներգործությունների դեպքում բարձ-

բակարգ կենդանիների մոտ ուսուցումը հանգեցնում է պատճառային մտավոր կապերի օգտագործման և դրա հիման վրա՝ հետևանքների չգիտակցված կանխագուշակման: Դեռևս 1921 թ. Կոլերը փորձով ցույց տվեց, որ Շիմպանզեի մոտ առկա են ըմբռնումը և ընդհանրացնելու հնարավորությունը (տե՛ս **В. Коллер. Исследование интеллекта человекообразных обезьян. М., 1930**):

Կապիկը սովորել է բամբուկե փայտի օգնությամբ ծառից բանան պոկել (ըմբռնում): Այնուհետև փայտը չէր հասնում բանանին: Ջանալով բանան ձեռք բերել, կապիկն անսպասելիորեն մի փայտը կցեց մյուսի ծայրին և վերցրեց բանանը (ընդհանրացում): Իհարկե, և՛ ըմբռնումը, և՛ ընդհանրացումը կենդանիների մոտ հիմնված է միայն փորձի վրա: Նրանք որսում են իրադարձությունների ճշտությունը, որը և հանգեցնում է զուգորդական շղթաների ստեղծման, որոնք ներառում են և ապագա հետևանքները: Նման կանխատեսումը հեռու է ապագա գործողության համար ուղեղում ստեղծվող այն իդեալական մոդելից, որը հատուկ է մարդուն և սոսկ պայմանականորեն կարող է ըմբռնում նշանակել:

Ինչպես նշել է Ա. Ն. Սևերցևը, կենդանիների հոգեկան գործունեությունը, կենսափորձի կուտակումը տեղի են ունենում առանց նրանց ժառանգականության փոփոխության, այսինքն՝ նույն բնածին ունակությունների առկայությամբ. հոգեկանը մեծ մասամբ ժառանգականության վրա խարսխված մի վերնակառույց է՝ անհատական փորձի ձևով (տե՛ս **А. Н. Северцев. Эволюция и психика. М., 1922**):

Յու. Գ. Տրոշկինան, համաձայնելով Ա. Ն. Սևերցևի հետ, քննարկելով հիշողության ֆիլոգենեզի հարցերը, գրել է. «Մենք... համոզված ենք, որ ուղեղն այնպիսի ապարատ է, որն ստեղծվում է էվոլյուցիայի ընթացքում, ի լրումն գենետիկական ապարատի. եթե տեսակային փորձը կուտակվում, ամրակայվում և հաղորդվում է քրոմոսոմային ապարատի միջոցով, ապա անհատական փորձը կուտակվում, պահպանվում և փոխանցվում է այլ անհատների ուղեղի աշխատանքի և նրանց հետ կապված էֆեկտների միջոցով» (**Ю. Г. Трошкина. Филогенез функций памяти. Изд-во ЛГУ, 1978**):

Ինչ վերաբերում է կենդանիներին, ապա ըստ Պավլովի, անձնական փորձի ձեռքբերման այդ բոլոր երևույթները և դրա վերարտադրությունը սերնդե-սերունդ գտնվում են առաջին ազդանշանային համակարգի շրջանակներում: Բնական է, որ ծնողները երեխաներին սովորեցնելիս և երեխաների անձնական փորձի ընթացքում միջավայրի նույն ազդանշանների ազդեցությամբ, որպիսիք եղել են նախորդ սերունդների օրոք, ի պատասխան ստացված ազդանշանների, տեղի է ունենում պայմանական ռեֆլեքսների համանման կոմպլեքսի և ներաշխարհի նկարագրի վերարտադրություն: Այսպիսով, սերունդների միջև առաջանում է ֆունկցիոնալ հաջորդականություն, որոնց օրոք առաջին ազդանշանային համակարգի շրջանակներում սերնդե-սերունդ ապահովվում է առանձնահատուկ վարքագծի վերարտադրությունը:

Այս երևույթը Մ. Ե. Լոբաշևն առաջարկել է անվանել ազդանշանային ժառանգականություն: Ժառանգման այս տիպի առանձնահատկությունն այն է, որ վարքի որոշակի նշաններն առաջանում են սերունդների մեջ այն նույն ազդանշանների կրկնության դեպքում, որոնք ազդում են առանձնյակի օնտոգենեզի վրա: Այս տերմինի հեղինակը գրել է. «Ազդանշանային հաղորդումը չի կարող ժառանգական կոչվել բառիս բուն իմաստով, քանի որ այն պայմանավորված չէ գեներով» (**М. Е. Лобашев. Генетика. Изд-во ЛГУ, 1967, стр. 601**):

Գիտակցությունը երևան է եկել միայն հոմինիդների, այսինքն՝ մարդու նախահայրերի՝ Homo sapiens տեսակի մոտ, էվոլյուցիայի ընթացքում: Ոչ մի կենդանի չունի ուղեղում ծագած մոդելի նախամտածված, նպատակային գործողությունների ունակություն: Վարքի ձևավորման ընթացքում կենդանիների վարժեցման միտքն արտահայտվել է շատ վաղուց: Իմացության արդի փուլը ցույց է տալիս վարքի բարդ ձևերի առկայությունն այն կենդանիների մոտ, որոնք ընդունակ են որսալու բնության մեջ պատճառական տարրական փոխկապերը: Հենվելով կենսափորձի վրա, որի ստեղծման գործում կարևոր է ամրակայումը, որի ընթացքում ազդանշանային նշանակություն են ձեռք բերում կենսաբանորեն ոչ էական գրգռիչները, հիշողության շնորհիվ կենդանիները ձեռք են բերում արտաքին աշխարհի ներքին մոդելը, որը հնարավորություն է ընձեռում նրանց՝ ընդունելու ճիշտ որոշումներ միջավայրի տարբեր, ինչպես և նոր պայմաններում ունեցած վարքի մասին:

Կենդանիների հոգեբանության ողջ բարդությամբ հանդերձ նրանց վարքագիծը դուրս է գիտակցական գործունեության սահմաններից: Դրա համար հիմք է ծառայում պատճառական կապերի աղոտ զգացողությամբ ամրակայված հավանական կռահումը: Նման վարքի ժամանակ ռեակցիաների քանակական կողմը գենետիկորեն դետերմինավորված է, սակայն հարմարված վարքի համակարգում ռեակցիան առաջանում է օրգանիզմի և միջավայրի փոխներգործության առանձնահատկությունների շնորհիվ: Այս ամենը ցույց է տալիս, որ եթե առաջ վարժեցնել ասելով նկատի ունեին սոսկ պայմանական ռեֆլեքսների առաջացումը, ապա մեր օրերում վարժեցում հասկացությունը, այսինքն՝ կենդանու կյանքի փորձը, ներառում է ներքնաշխարհի մոդելի ձեռքբերումը և դրա հիման վրա՝ բանական գործունեության առկայությունը: Բանական գործունեություն հասկացությունը պայմանական է: Ի տարբերություն խելքի, այն չի պարունակում գիտակցության ճանաչում: Բանական գործունեությունը՝ դա կենդանիների կողմից նրան շրջապատող աշխարհի պատճառական կապերի էմպիրիկ ըմբռնումն է, և հիշողության շնորհիվ այդ փորձի օգտագործումը հին և նոր պայմաններում: Սակայն չի կարելի մոռանալ, որ ամեն դեպքում կենդանիների բանական գործունեությունը որակապես տարբերվում է մարդու գիտակցական գործունեությունից: Այս առնչությամբ հիշենք սկզբունքային կարևորություն ունեցող այն փաստը, որ նորածինները ևս զուրկ են գիտակցությունից: Միայն մարդկանց ու նրանց աշխարհի հետ երեխայի փոխգործողությունների աճին զուգընթաց նրա մեջ ծագում է գիտակցությունը, նա սկսում է մտածել նաև ինքնագիտակցության միջոցով, առանձնացնել իրեն շրջապատող աշխարհից:

Չնայած նրան, որ մարդը սոցիալական էակ է, շատ հեղինակներ ենթադրում են, որ նրա համար ևս պահպանվում է ժառանգականության ու շրջապատի փոխներգործության նույն տիպը: Նրանք գտնում են, որ ծըննվելիս գեների տարբերությունը անդրադառնում է մարդու հոգևոր բոլոր կողմերի վրա, որ մարդկանց վարքագիծը կենսաբանորեն ծրագրվածի և սոցիալապես ձեռք բերվածի ինչ-որ միջինն է: Ըստ այդ տեսակետի, մարդու սոցիալական վարքի մեջ շատ բան իբրև թե կենսաբանորեն ամրակայված է: Ֆ. Գալտոնը խոսել է խղճի ժառանգման մասին: Վ. Էֆրոիմսոնը ենթադրում է, որ մարդու ինքնազոհաբերման վարքագիծը և նրա հոգու այլ վեհ արտահայտությունները, իբր, կենսաբանորեն դետերմինավորված հատկանիշներ են (**В. П. Эфроимсон. Родословная альтруизма, Новый мир, № 10, 1971**): Դ. Բելյաևը գտնում է, որ անհատի հոգեկան կերտվածքի բոլոր գծերն ունեն իրենց գենետիկական բաղադրատարրը (**Д. К. Беляев. Проблемы биологии человека... Природа, № 6, 1976**):

Տեղին է հիշել Կ. Մարքսի խոսքերը. Սարդը կատարում է ջուլհակուհու գործողությունները հիշեցնող գործողություններ, մեղուն ևս մեղրամոմե նոր բջիջների կառուցմամբ ամաչեցնում է ճարտարապետներից ոմանց: Բայց ամենավատ ճարտարապետն ամենալավ մեղվից սկզբից իսկ տարբերվում է նրանով, որ մոմեղեն բջիջներ պատրաստելուց առաջ, նա այն պատրաստում է գլխում: Աշխատանքի պրոցեսի վերջում ստացվում է արդյունքը, այսինքն՝ կատարյալը, որն արդեն այդ պրոցեսի սկզբում կար մարդու պատկերացման մեջ (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 189):

Մարքսի այս խոսքերն ամենայն պարզությամբ բնութագրում են մարդկանց վարքի հիմքերը: Այդ վարքը բնորոշվում է գիտակցությունը ձևավորող մարդկային ապրելակերպի պահանջմունքներով: Նորածինը գիտակցություն չունի և չի խոսում: Յուրաքանչյուր մարդու մեջ այն ծագում է հասարակական հարաբերությունների, կյանքի սոցիալական հիմքերի, աշխատանքային ու բարոյական պարտքի ազդեցությամբ, որոնք ձևավորվում են ողջ սոցիալական ծրագրով, այսինքն՝ պատմության, մտածողության, լեզվի փորձով, կենսաբանականի վրա խարսխված մարդկային այս ողջ հոգևոր վերնաշենքը որակապես տարբերում է նրան կենդանուց: Ակներև է, որ եթե գիտակցությունն ու մարդկային ապրելակերպը ամրակայված չեն նրա բնության մեջ, ապա բնական հարց է ծագում. ի՞նչ խոսք կարող է լինել սոցիալապես պայմանավորված մարդկային վարքի ձևերի գենետիկայի մասին:

Քանի որ մարդու վարքը ձևավորվում է սոցիալական ծրագրով, ապա այն իր կառուցվածքով և մարդու ապրելակերպին համապատասխանությամբ չի կարող գրանցված լինել գենետիկական ծրագրում: Հարցը կարող է վերաբերել միայն մարդկանց նեյրոդինամիկական և պսիխոդինամիկական առանձնահատկություններին: Չնայած դեռևս ապացուցված չէ, թե ինչ չափով և ինչպես են դրանք ժառանգվում, սակայն պետք է հուսալ, որ այդպիսի տվյալներ կստացվեն: Մարդկանց գիտելիքներն էական են ուղեղի գործունեության մեջ ոչ-պայմանական ռեֆլեքսների ու դինամիկայի բնորոշման համար: Սակայն այս ռեակցիաները սոսկ տարրական պայմաններ են մարդկանց վարքի առանձնահատկությունների ձևավորման սոցիալապես պայմանավորված այն պրոցեսների համար, որոնք զարգանում են լեզվի ու մտքի միասնության հիման վրա: Մարդու անձնավորությունը, նրա վարքը ձևավորվում են գիտակցության հակասությունների ստեղծագործական պրոցեսում, որը ներառում է հուզական-զգացմունքային ոլորտը: Այս բոլոր կատեգորիաները խորթ են կենդանիներին:

Այսպիսով, ճիշտ չեն մարդու վարքի գենետիկա տերմինը, և մարդու վարքի գենետիկայի հասկացության ու կենդանու վարքի գենետի-

կայի ուսմունքի միջև զուգահեռ անցկացնելու ու դրա հիման վրա էտոլոգիան (կենդանու վարքաբանությունը) և հոգեբանությունը (մարդու վարքաբանությունը) կամրջելու փորձերը:

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆԻ ԵՎ ԿԵՆՍԱԲԱՆԱԿԱՆԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ինչպես տեսանք, գոյություն չունի և չի կարող ունենալ այնպիսի գիտություն, ինչպիսին է մարդու՝ սոցիալապես պայմանավորված վարքի գենետիկան, որովհետև մարդու վարքը, որպես սոցիալական երևույթ, կենսաբանության առարկա չի հանդիսանում: Կենսաբանական օրենքներին չեն ենթարկվում այնպիսի հասկացություններ, ինչպիսին են՝ գիտակցությունը, մտածողությունը, նպատակամղված աշխատանքը, խիղճը, բարոյականությունը, բարոյագիտությունը, գեղագիտական զգացումը, ապագայի գիտակցումը, սեփական ես-ի գիտակցումը, ստեղծագործությունը:

Կարո՞ղ ենք արդյոք խոսել մարդկային այդ հատկությունների սոցիալական ու կենսաբանական միասնության մասին, որոնք հատուկ են նրան՝ որպես որակական նոր երևույթ կյանքի պատմության մեջ:

Վերջին ժամանակներս ավելի ու ավելի է տարածվում այն մտայնությունը, թե մարդը միջին տեղում է իր կենսաբանական ու սոցիալական բոլոր յուրահատկություններով՝ ընդհուպ մինչև նրա հոգևոր կյանքի բարձրագույն մակարդակը: Այդ է «նոր» գիտության՝ սոցիոբիոլոգիայի բովանդակությունը: Ժառանգականությունը համարելով մարդու բոլոր առանձնահատկությունների պարտադիր բաղադրիչը, անհարկի ընդգրկելով նաև մոլեկուլյար գենետիկայի՝ տվյալ հարցի հետ բնավ չկապվող հաջողությունները, լայնորեն տարածվում են հակամարքսիստական ռեակցիոն հայացքներ մարդու հոգեկան հատկանիշների գենային սահմանումների մասին:

Իրականում, սոցիալականի ու կենսաբանականի փոխներգործությունը մարդու մեջ մատերիայի շարժման տարբեր մակարդակների ներգործությունն է, երբ կենսաբանականը հանդես է գալիս որպես նախադրյալ ճիշտ այնպես, ինչպես անօրգանական աշխարհի օրենքներն անհրաժեշտ են, բայց դրանք չեն կազմում կյանքի երևույթների էությունը:

Նման փոխներգործության բնույթը լավ է երևում նորածնի ուղեղի գիտակցությամբ ու մտածողությամբ օժտված ուղեղի համադրության ժամանակ: Նորածնի ուղեղը քիմիական մի բարդ կոմպյուտեր է, որի զարգացումը սահմանված է մարդու գենետիկական ծրագրով: Ունա՞կ է արդյոք այդպիսի ուղեղն ինքն իրեն գիտակցություն ծնել: Ո՛չ, այդպիսի ունակություն այն չունի: Հասարակական հարաբերություններից դուրս այն մնում է կենսաբանական սիստեմի մակարդակում, որն ինքն իրեն անկարող է դառնալու մարդու վարքի բարձրագույն ձև: Լավ հայտնի է, որ առանց ալգորիթմների, որով մարդու միտքն ստիպում է էլեկտրոնային «ուղեղին» գործել, կոմպյուտերը մնում է սոսկ իբրև մետաղակույտ: Նույնպիսի վիճակում է նաև նորածնի ուղեղը հասարակական-աշխատանքային պրակտիկայից դուրս:

Իհարկե, փոխներգործության պրոցեսներն այս դեպքում անչափ բարդ են՝ էլեկտրոնային կոմպյուտերի մեջ ալգորիթմների ներմուծման համեմատությամբ: Բացի դրանից նորածնի «քիմիական» կոմպյուտերը հասարակական պրակտիկ գործունեության ազդեցությամբ ընդունակ է նպատակայնորեն ձևավորվել և իր ծավալով մեծանում է վեց անգամ: Այս բոլոր պրոցեսները ղեկավարում է ուղեղը ձևավորող սոցիալական ծրագիրը:

Բոլոր դեպքերում մարդկանց հոգևոր նորմալ զարգացման մեջ առաջատար է սոցիալական ծրագրի ազդեցությունը. այն ցույց է տալիս, որ մարդը հասարակական հարաբերությունների արգասիք է: Սրա հիման վրա միայն, հակասությունների օբյեկտիվ և սուբյեկտիվ դիալեկտիկայի դեպքում է ծագում ստեղծագործությունը՝ մարդու մտածողության բարձրագույն շարժիչը, որից զուրկ են կենդանիները: Մարդու մեջ ամենից առաջ բնական է այն, ինչ վերաբերում է զգայական ճանաչողությանը և ուղեղի գործունեության դինամիկական կողմին: Զգայական ճանաչողությունն իրականանում է զգացողության հինգ օրգանների՝ տեսողության, լսողության, հոտառության, համի և ճաշակելիքի զգայարանների միջոցով, որոնցով մարդը կապվում է արտաքին աշխարհի հետ: Այս զգայական ոլորտի բոլոր տարրերը ենթարկված են կենսաբանական տարբերակումների: Յուրաքանչյուր մարդ յուրովի է տիրապետում այս զուգակցումներին: Հետևաբար, կենսաբանականն իր կնիքն է դնում զգացողության , ընկալման և մտապատկերի վրա: Սակայն իմացության օբյեկտիվությունը չի սահմանափակված զգայական ճանաչողության աստիճանով. այն ձեռք է բերվում միայն աբստրակտ մտածողության և պրակտիկայի հետ նրա զուգորդման միջոցով: Հիշենք լենինյան այն միտքը. կենդանի հայեցողությունից դեպի վերացական մտածողություն և դրանից՝ դեպի պրակտիկան. այսպիսին է ճշմարտության իմացության, օբյեկտիվ ռեալականության իմացության դիալեկտիկական ճանապարհը:



Վերացարկումը առարկաների ու երևույթների կոնկրետ ընկալումը չէ. այն մարդու խելքի ստեղծագործական ունակությունն է, որը ծագել է որպես անցյալում բազմիցս կրկնված աշխատանքային պրոցեսների ու գիտելիքների ամրապնդում: Սոցիալական ծրագրում առկա պատմության կնիքը մտածող մարդուն թելադրում է ստեղծագործական վերացարկման ուղին:

Այսպիսով, աշխարհի և հասարակության օրենքների ճանաչումը հենվում է կենսաբանականի վրա, կենսաբանականը դրա համար զգայական բնագավառ է, նեյրոդինամիկան սոսկ նախադրյալն է, բայց ոչ բուն պրոցեսը: Հետևաբար, անհատն իր աշխարհայացքով ձևավորվում է սոցիալական գործոններով: Նույնը վերաբերում է նաև մարդու զգացմունքային էությանը: Իհարկե, ուրախության, վախի զգացումը և այլ հույզեր անմիջականորեն կապված են զգայական և նեյրոդինամիկական ոլորտների հետ, սակայն դրանց մարդկային էությունն ունի սոցիալական բովանդակություն: Բայց մի բան պարզ է. մարդու բնական, կենսաբանական նախադրյալների ուսումնասիրության մեջ վիթխարի նշանակություն ունեն գենետիկայի, մոլեկուլյար կենսաբանության, ֆիզիոլոգիայի, բիոքիմիայի, անատոմիայի, էթիոլոգիայի (պատճառագիտության), մասամբ ոչ պայմանական վարքի վերլուծության տվյալները և այլն: Այս տվյալները հույժ կարևոր են մարդու գենետիկական ինֆորմացիայի պահպանման, բժշկագիտության, նորմալ երեխաների ուսուցման ու դաստիարակման, արատավոր երեխաների մտավոր թերզարգացածությունը վերացնելու, պրոֆեսիոնալ կողմնորոշման հարցերի լուծման համար և այլն: Մարդու գենետիկական ծրագրի և սերունդների առողջության պահպանման հետ մեկտեղ, բավական մեծ են մարդուն շրջապատող միջավայրի պայմանների պահպանման հետ կապված խնդիրները: Ուղեղի մոլեկուլյար գենետիկայի զարգացման շնորհիվ կբացահայտվեն հիշողության ասոցիատիվ ներվաբջիջների ռեզերվները, գենետիկական ծրագրի փոփոխությունները դրանց մեջ, նեյրոդինամիկական պրոցեսների էությունը և այլն: Այդ մեծ նշանակություն կունենա հասկանալու համար, որ մարդկանց մտածողության հիմքը նյութական է:

Այս բոլոր հարցերը, ցավոք, առայժմ անբավարար են մշակված: Բացառիկ մեծ նշանակություն ունի մարդու զարգացման պրոբլեմը նրա կենսաբանական նախադրյալների էության ուսումնասիրման և դրանք մտածողությունը խթանելու համար օգտագործելու, հիվանդությունների նկատմամբ օրգանիզմի դիմադրողականությունը բարձրացնելու նպատակով: Այդ կարևոր է նաև մարդու ֆիզիկական զարգացման, ինչպես և սոցիալական ունակությունների պրոֆեսիոնալ կողմնորոշման հարցում օրգանիզմի հնարավորությունների, դաստիարակության ընթացքում մարդու տարիքային առանձնահատկությունների, տիեզերքի յուրացման և այլ բնագավառների ուսումնասիրության համար:

Այս տվյալները պետք է ներառվեն դաստիարակության և առողջապահության կազմակերպված համակարգի մեջ երեխայի ծննդյան առաջին իսկ օրից՝ ֆիզիկապես ու բարոյապես առողջ, ներդաշնակ, լիարժեք անձնավորության ձևավորման նպատակով: Այս ամենը ցույց է տալիս, որ արդիականության կարևորագույն խնդիրներից է մարդու ուսումնասիրությունը կենսաբանական ու սոցիալական գիտությունների կցման տեղում:

Սոցիալ-կենսաբանական պրոբլեմի էությունը կենսաբանականի և սոցիալականի դիալեկտիկական փոխներգործությունն է: Օրգանական էվոլյուցիայի պսակն է մարդը, սակայն նա մարդ է դարձել միայն այն բանի շնորհիվ, որ նրա բնական ուժերը նախադրյալներ են դարձել հասարակության պատմության համար: Մարդն ինքը դրա շնորհիվ դարձել է դրա արգասիքն ու հետևանքը: Մարդու էության փիլիսոփայական սահմանումը ցույց է տվել, որ նրա էությունը միասնական է, այն սոսկ կենսաբանական էակ չէ, այլ նաև հասարակական հարաբերությունների արգասիք: Նրա գոյավորումը պահանջում է կենսաբանական նախադրյալներ, բայց նրա օրենքները, բովանդակությունն ու առաջընթացը անկախ են կենսաբանության օրենքներից:

## ՄԻԱՍՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՄԱՐԴՈՒ ՄԱՍԻՆ

Մեր մամուլում մարդու պրոբլեմի քննարկման ժամանակ արծարծվում է մարդու մասին միասնական գիտության ստեղծման հարցը: Մարդը բնական ու հասարակական շատ գիտությունների՝ փիլիսոփայության, սոցիոլոգիայի, բարոյագիտության, մանկավարժության, հոգեբանության, բժշկության, ֆիզիոլոգիայի, գենետիկայի, բջջաբանության... ուսումնասիրության օբյեկտն է:

Սակայն մարդու մասին գիտությունը ծագում է մեր աչքի առաջ շնորհիվ այն բանի, որ ներկայացնում է սինթետիկ, կոմպլեքսային նշանակությունը մի օբյեկտի՝ մարդու, որպես սոցիալական մի երևույթի, որն ընդգրկում է կենսաբանականի ու սոցիալականի դիալեկտի-

# ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ԲՆԱԿԱՆ ԱՌՀԱՎԱՏՉՅԱՆ

**Ա. Պ. ՀԱՅՐԻՅԱՆ**
Բժշկական գիտությունների
դոկտոր

**ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ** ու սովետական կառավարությունը հետևողականորեն իրականացնում են միջոցառումների լայն ծրագիր՝ ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման, նրա կուլտուրական ու հոգևոր աճող պահանջմունքների բավարարման նպատակով: Զգալիորեն բարձրացել է սովետական ժողովրդի կենսամակարդակը: Այդ ցայտուն կերպով նկատվում է նաև գյուղական բնակչության շրջանում: Բարելավվել են նրա բնակարանային-կենցաղային պայմանները, բարձրացել է կուլտուրական մակարդակը: Գյուղի աշխատավորների եկամուտների, նրանց նյութական բարեկեցության անշեղ աճը դրսևորվում է ժամանակակից ապրելակերպում, բնակարանային ու կենցաղային պայմաններում, որոնք այժմ հաճախ քիչ են տարբերվում քաղաքի բնակչության կենսապայմաններից: Գյուղի բնակչության նյութական բարեկեցության ու կենսամակարդակի բարձրացման շնորհիվ նշանակալիորեն վերափոխվել է գյուղական ընտանիքի կենցաղը: Գյուղական բնակչության կենսապայմանների բարելավումը, անշուշտ, սոցիալ-տնտեսական բարենպաստ հիմք է ստեղծում մարդկանց առողջության պահպանման, նրանց ֆիզիկական զարգացման հոգևոր վերելքի համար:

Հայտնի է, որ մեր ժամանակներում խիստ նշանակալից է գիտության ու տեխնիկայի առաջընթացը: Գիտության պրոգրեսն այժմ բնութագրվում է անասելի արագ տեմպերով, նրա նվաճումների շնորհիվ մարդկանց առօրյա կյանքը դառնում է առավել հարմարավետ ու հաճելի: Կասկածից վեր է, որ ապագայում մարդը կաշխատի շատ ավելի արդյունավետ, ավելի բարվոք պայմաններում և անհամեմատ կանճի ծախսված աշխատանքի համար ստացվող եկամուտը:

Սակայն այժմ արդեն ակներև են գիտության ու տեխնիկայի առաջընթացի հարուցած մի շարք բացասական հետևանքները: Գիտատեխնիկական հեղափոխությունը, իր անմիջական ու միջնորդավորված արդյունքներով թափանցելով մարդկային կենցաղի ոլորտը, փոխում է նրա կյանքի բովանդակությունն ու ռիթմը, նրան շրջապատող միջավայրը, ինչպես և՛ հիվանդությունների կառուցվածքը: Բնության մեջ ամեն ինչ փոխկապակցված է, և մարդու մշտապես ծավալվող գործունեության բերումով բնական հավասարակշռության խախտումը հաճախ հղի է այնպիսի վտանգավոր հետևանքներով, որպիսիք հնարավոր չէ միշտ կանխատեսել: Գիտատեխնիկական հեղափոխության և և ուրբանիզացիայի հետ կապված այնպիսի երևույթներ, ինչպիսիք են արտադրության ինտենսիվացումն ու ավտոմատացումը, գյուղատնտեսության քիմիացումն ու մեքենայացումը, աղմուկը քաղաքներում, ռադիոակտիվության բարձրացումը, նյարդային գերլարվածությունը, շարժումների սահմանափակությունը, դիետայի փոփոխությունը, ստրեսը, դեղամիջոցների չափից ավելի գործածությունը հանգեցրել և հանգեցնում են մարդու օրգանիզմի հիվանդագին և նախահիվանդագին վիճակների, հիվանդությունների ընթացքի ու բնույթի փոփոխությունների, հիվանդի օրգաններում ու համակարգերում հաճախացել են ախտաբանական նոր երևույթները: Նման պայմաններում բարդ ու դժվար է բացահայտել ընթացող հիվանդագին պրոցեսի էկոլոգիական սկիզբը և ախտահարված օղակը: Իհարկե, սխալ կլինի կարծել, թե մեր ժամանակներում գիտության ու տեխնիկայի առաջընթացն ամենուրեք բացասաբար է անդրադառնում մարդու օրգանիզմի վրա: Բնակչության առողջությանը վտանգ է սպառնում այն դեպքում, երբ անտեսվում են գիտատեխնիկական հեղափոխության բացասական



կողմերը, չեն ձեռնարկվում նախազգուշական միջոցներ:

Մարդու կանխամտածված արտադրական գործունեության հետևանքով առաջացած աղտոտումից արտաքին միջավայրի պահպանությունը նոր պրոբլեմ չէ. այն միշտ եղել է բժշկության ու առողջապահության անհետաձգելի խնդիրներից մեկը:

Մարդու աշխատանքը, իբրև նրա գոյության ու զարգացման անհրաժեշտ պայման, տարբեր մարզերում հարուցել է շրջակա միջավայրի փոփոխություններ: Բայց վերջին երկու-երեք տասնամյակներում հարաճուն մասշտաբներով մեծացել է գիտատեխնիկական հեղափոխության արդյունքը հանդիսացող մարդակային գործունեության բացասական ներգործությունը զարգացած արդյունաբերական երկրներում, որտեղ նման ազդեցությունները հասնում են մարդկության համար վտանգավոր չափերի: Այլ միջոցներին զուգընթաց, բնական միջավայրի աղտոտման գործում առանձին տեղ են գրավում կենսաոլորտ մուծվող քիմիական տարբեր նյութերի մշտապես աճող չափերը: Այժմ ողջ աշխարհում օգտագործվում են տարեկան 2 մլն տոննա տարբեր պեստիցիդներ, քիմիկոսներն ամեն տարի սինթեզում են 250 հազար նոր նյութեր, որոնցից 500-ը ներդրվում է պրակտիկայում: Քիմիական գիտությունը մարդուն տրամադրել է ավելի քան 500 հազար նյութեր, որոնց զգալի մասը պատճառ է դառնում քիմիական ծագում ունեցող տարբեր հիվանդությունների առաջացման ու տարածման. դրանց շարքին կարելի է դասել քաղցկեղային հիվանդությունները, ալերգիկ երևույթները, ժառանգական անոմալիաները, վիժումները, աննորմալ հղիությունները և այլն: Այս առումով մարդկանց առողջության համար հատկապես վտանգավոր են արտաքին միջավայրում դանդաղ քայքայվող, երկարակյաց բիոցիդները: Դրանցից շատերը մինչև օրս բավարար չափով ուսումնասիրված չեն կամ բժշկության կողմից ամենևին ուսումնասիրված չէ դրանց կենսաբանական ազդեցությունը մարդկանց օրգանիզմի վրա: Բժշկության անհետաձգելի խնդիրը դրանց ախտաբանական ներգործության մակարդակի ուսումնասիրումն ու բացահայտումն է: Ժամանակակից պայմաններում հրատապ է նաև վնասակար նյութերի թույլատրելի բաղադրելիության գիտական հիմնավորված նորմաների մշակումը:

Արտասահմանյան շատ հետազոտողներ հայտնում են այն կարծիքը, թե անխուսափելի է էկոլոգիական աղետը՝ կապված արդյունաբերության անկասելի աճի, ինդուստրացման և ուրբանիզացման պրոցեսների հետ, որոնք XX դարի գիտատեխնիկական հեղափոխության ուղղակի և անուղղակի արդյունքն են:

Սովետական Միությունում, ուր ապահովված է գիտատեխնիկական հեղափոխության և տնտեսության վարման սոցիալական ներդաշնակությունը, գիտական առաջընթացի ու տեխնիկայի հնարավորություններն ամբողջովին ծառայեցվում են բնակչության շահերին, բոլոր պայմանները կան դրանց հետևանքների և շրջակա բնության պահպանման հակասությունների հաղթահարման համար: Դրա վկայությունն են մեր երկրում ձեռնարկված մի շարք միջոցները, մասնավորապես **ՍՄԿԿ և ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդի որոշումը Վոլգա և Ուրալ գետերի ջրավազանները չմաքրված հոսող ջրերի աղտոտումից պահպանելու միջոցառումների մասին, կուսակցության ու կառավարության որոշումները Կասպից ծովը աղտոտումից պահպանելու, Բայկալ լճի հարստությունների ռացիոնալ օգտագործման ու պահպանության մասին, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի՝ 1969 թվականին հաստատած օրենքները առողջապահության մասին, **ՍՍՀՄ** հողային և ջրային օրենսդրության հիմունքները, բնության պահպանության հետագա բարելավման և բնական պաշարների ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին **ՍՍՀՄ** Գերագույն սովետի որոշումը (1972 թ.) և մեր կուսակցության ու կառավարության մշակած այլ որոշումներ ու փաստաթղթեր: **ՍՍՀՄ** նոր սահմանադրությունում նշված են բնական պաշարների ռացիոնալ ու հոգածու օգտագործման, շրջակա միջավայրի պահպանության ծրագրեր՝ հանուն սովետական մարդկանց առողջության պահպանման:

Նման ծրագրերի համապետական սոցիալական քաղաքականության մակարդակով կենսագործումը, որ պահանջում է վիթխարի միջոցներ, հնարավոր է միայն սոցիալիստական հասարակության մեջ, որ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն ի սպաս են դրվում ժողովրդին, աշխատավորների կենսապայմանների բարելավմանը: Այդ ոգով են համակված **Լ. Ի. Բրեժնևի՝ ՍՄԿԿ XXV** համագումարում արտասանած խոսքերը. «Սոցիալական խնդիրներից ամենակարևորը հոգատարությունն է սովետական մարդկանց առողջության նկատմամբ»: Նման անդուլ հոգատարության նոր, վառ վկայությունն են կենդանական աշխարհի պահպանության ու օգտագործման մասին և մթնոլորտային օդի պահպանության մասին **ՍՍՀՄ** օրենքների նախագծերը, որ հրապարակվեցին վերջերս:

«Մթնոլորտային օդը,— կարդում ենք նախագծում,— շրջակա բնական միջավայրի կենսականորեն կարևոր հիմնական տարրերից է»:

Ուստի և մեր պետությունը մեծ նշանակություն է տալիս դրա պահպանմանը, վերականգնմանը, վիճակի բարելավմանը: Նոր օրենսդրության նպատակն է ապահովել լավագույն պայմաններ սովետական մարդկանց կյանքի, նրանց աշխատանքի, կենցաղի, հանգստի ու առողջության պահպանության, նյութական արտադրության և կուլտուրայի հետագա զարգացման համար, կանխել շրջակա միջավայրին հասցվող վնասները:

Գիտատեխնիկական առաջընթացը, առողջապահության զարգացումը մեր երկրում բխում են սոցիալիստական հասարակության տնտեսական օրենքից, դրանք համապատասխանում են սովետական մարդու առողջության պահպանման և ներդաշնակ զարգացման խնդիրներին:

Այնուամենայնիվ, մեր՛ ժամանակներում, երբ գիտատեխնիկական հեղափոխությունը, արդյունաբերության աճը, ինդուստրացումն այնքան համատարած են դարձել, որ որոշակի պայմաններում կարող են բացասաբար անդրադառնալ մարդկանց առողջության վրա՝ անկախ տեղից և հասարակական ֆորմացիայից, ուր կենսաբանական պրոցեսի բնական օրենքները հնարավոր չէ կասեցնել, առավել հրատապ են դառնում ամեն մի կոնկրետ դեպքում պահանջվող գերզգուշությունը և նախազգուշական անհրաժեշտ միջոցների ձեռնարկումը:

Մթնոլորտային օդի պահպանության մասին ՍՍՀՄ նոր օրենքի նախագծով նախատեսվում է սահմանել մթնոլորտային օդում աղտոտող նյութերի առավելագույն թույլատրելի խտությունների նորմատիվներ: Վերջիններս «պետք է համապատասխանեն մարդկանց առողջության պահպանության շահերին, բացառեն շրջակա բնական միջավայրին, ինչպես նաև ժողովրդական տնտեսությանը վնաս հասցնելը»:

Նման կարևոր հարցերով, դրանց տարբեր կողմերի ուսումնասիրությամբ զբաղվում են նաև բժիշկները, գենետիկները, սոցիոլոգները, սովետական առողջապահության ստրատեգները ու տակտիկները: Այսպես, միայն գյուղի հիգիենայի ուսումնասիրությամբ (կապված շրջակա միջավայրի աղտոտման հետ) վերջին տարիներս մեր երկրում զբաղվում են գիտահետազոտական 30 ինստիտուտներ, բժշկական բուհերի 23 ամբիոններ, տեխնիկական ու նախագծային մի շարք ինստիտուտներ և տարբեր բնույթի այլ հաստատություններ: Այժմ ավելի քան 70 գիտական հաստատություններ ուսումնասիրում են արտադրական վնասների և շրջակա միջավայրի անբարենպաստ գործոնների ազդեցությունը կնոջ օրգանիզմի առողջության և յուրահատուկ ֆունկցիաների վրա՝ արտաքին միջավայրի անբարենպաստ բոլոր ազդեցությունները վերացնելու կամ նվազագույնի հասցնելու նպատակով:

Սույն հոդվածով ցանկանում ենք անդրադառնալ այս բարդ ու հրատապ հարցի տարբեր կողմերին: Մեր աշխատանքի փորձի և հանրապետության գյուղատնտեսական արտադրության հետ կապված ժամանակակից գյուղական կյանքի բազմամյա ուսումնասիրությունների հիման վրա ցանկանում ենք ուշադրություն հրավիրել արտաքին միջավայրի այն գործոններին, որոնք որոշակի պայմաններում կարող են վնասել մարդկանց առողջությանը: Այս ամենը, անշուշտ, կարևոր է և հրատապ մեր հանրապետության համար, եթե նկատի ունենանք նրա փոքրատարածությունը, բնական պայմանների յուրահատկությունը և բնակչության խտությունը: Չպետք է անտեսել նաև հանրապետության գյուղատնտեսության զարգացման ուղղությունը, թունաքիմիկատների և քիմիական պարարտանյութերի մեծաքանակ օգտագործումը, ինչպես և այն, որ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ զգալի տեղ են գրավում քիմիական արդյունաբերությունն ու գունավոր մետաղագործությունը և շրջակա միջավայրի աղտոտման պոտենցիալ ունեցող այլ ճյուղեր:

Երկար տարիներ աշխատելով գյուղում և ուսումնասիրելով պրակտիկ բժշկի գործունեությանն առնչվող տարբեր երևույթներ, բնակչության, մասնավորապես երեխաների ու կանանց առողջական վիճակը, մենք նկատել ենք, որ վերջին տարիներին գյուղական վայրերում համեմատաբար հաճախ են ծնվում ժառանգական և բնածին արատներով երեխաներ, ավելի հաճախ են գրանցվում վաղածին հղիության դեպքեր: Այսպես, միայն մեր (Արմաշի) բուժտեղամասի տարածքում, որն ընդգրկում է մոտ 4.000 բնակչությամբ երեք գյուղ, վերջին երկու տասնամյակում 22 ընտանիքներում ծնվել են երեխաներ՝ գենետիկ տարբեր հետևանքներով և բնածին անոմալիաներով: Այս ամենը մեզ դրդեցին զբաղվելու նման երևույթների ուսումնասիրմամբ: Ընդ որում, մեր առջև կոնկրետ խնդիր էինք դրել՝ պարզել, թե գյուղական բնակչության սոցիալ-տնտեսական միջավայրը, ժամանակակից կենցաղն ու աշխատանքը որևէ դեր խաղո՞ւմ են ախտածին սերնդի աշխարհ գալու գործում, կա՞ արդյոք որոշ առանձնահատկությունների ու իրավիճակների օրինաչափ ընդհանրություն այն ընտանիքներում, ուր ծնվում են այդպիսի երեխաներ: Հարկ է պարզաբանել. ազդո՞ւմ է արդյոք ժամանակակից



աշխատանքը կնոջ բեղմնավորության շրջանում. գյուղատնտեսության քիմիացումը (զանազան պեստիցիդների կիրառմամբ) վտանգավոր գործոն չէ՞ ապագա մոր ու նրա երեխայի համար: Եվ, վերջապես, նախնական նյութերի հիման վրա պարզել բացառապես ընտանեկան-ժառանգական գործոնի տեսակարար կշիռը գենետիկական հիվանդությունների առաջացման գործում, ապա նաև՝ այդպիսի ընտանիքներում ժառանգական ախտածնության ո՞ր տոկոսն է առնչվում շրջակա միջավայրի աղտոտման հետ:

Սոցիոլոգիական հետազոտման ժամանակ ուսումնասիրվում է այն ընտանիքը, որն ունի բնածին և ժառանգական անոմալիայով երեխա: Նախնական նյութի ժողովման համար մշակել ենք վիճակագրական հատուկ ձև— «Բնածին և ժառանգական հիվանդություններով երեխա ունեցող ընտանիքի բժշկասոցիալական հետազոտության հարցաթերթիկ»: Տվյալ դեպքում մեր հետազոտության առարկան ոչ թե հիվանդն է, այլ նրա առողջ ու հիվանդ ծնողները, ինչպես և սոցիալ-կենցաղային պայմանները: Նախնական նյութի հավաքման այսպիսի ձևը հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն լրիվ տեղեկություններ ստանալու ուսումնասիրվող հիվանդությունների մասին, այլև ընտանեկան-ժառանգական գործոններին զուգընթաց պարզելու սոցիալ-կենցաղային, արտադրական և արտաքին միջավայրի այլ հանգամանքներ, որոնք ժամանակակից կենսապայմաններում վճռական դեր են խաղում այդ բազմապատճառ հիվանդության առաջացման գործում:

Փաստական մեծաքանակ նյութի վերլուծությամբ ստացված պատասխանների հանրագումարը համակողմանի լուսաբանում է տվյալ թեմատիկային վերաբերող հարցերը: Ժողովված փաստական տվյալների ամփոփումից պարզվում է, որ գրանցված բնածին անոմալիայի դեպքերի միայն 16,5 տոկոսն է բացատրվում ներընտանեկան գործոնով: Ուստի հարկ է փնտրել նաև այլ, էկզոգեն բնույթի պատճառներ, որոնք, հանդիսանալով շրջակա միջավայրի արտաքին գործոններ, ներկա պայմաններում վճռական դեր են խաղում գյուղական իրականության մեջ պաթոլոգիայի նման դեպքերի առավել հաճախակի առաջացման գործում: Այս առնչությամբ հարկ եղավ օգտվել հետազոտության նաև այնպիսի ձևերից, ինչպիսին է պատմական և բժշկաաշխարհագրական մեթոդը:

Ինչպես միշտ, այս դեպքում ևս պատմական մեթոդի կիրառումը հիմնավորվում է նրանով, որ պատմական տվյալ հատվածում կատարված ուսումնասիրությունն ավելի լրիվ է ու համոզիչ: Այդ եղանակով մեր ստացած փաստական նյութը և նախորդ տասնամյակների որոշակի ժամանակահատվածը բնութագրող տվյալների համեմատությունը սոսկ վիճակագրական նշանակություն չունի: Եվ, վերջապես, ունենալով համանման համեմատելի նյութ, կարելի է առավել ճիշտ գնահատել ժողովված վիճակագրական տեղեկությունները:

Ընտանիքների սոցիոլոգիական հետազոտության հարցերն ուսումնասիրելիս, օգտվելով հետազոտության պատմական մեթոդից, ստացել ենք մի շարք կարևոր տվյալներ: Կիրառվել է նաև հետազոտության բժշկաաշխարհագրական մեթոդը, մասնավորապես՝ քարտեզագրությունը: Համապատասխան քարտեզների օգնությամբ կարելի է պարզել ուսումնասիրվող երևույթների բնորոշ շատ կողմեր, ինչպես՝ տարածման սահմանները, ինտենսիվությունը և այլն:

ՀՍՍՀ վարչական քարտեզի վրա պայմանական նշաններով առանձնացրել ենք գյուղական այն շրջանները, ուր զարգացած են խաղողագործությունը, պտղաբուծությունը, ծխախոտագործությունը և բանջարաբուծությունը, որտեղ լայնորեն օգտագործվում են ժամանակակից պեստիցիդները և քիմիական պարարտանյութերը:

Գյուղի աշխատավորների առողջության, հղի կանանց առողջավիճակի վրա գյուղատնտեսության մեջ լայնորեն օգտագործվող քիմիական նյութերի պտղամետ ազդեցության հետ առնչվող պաթոլոգիկ երևույթների հաճախականության ու բնույթի բացահայտման նպատակով սխեմա-քարտեզի վրա ըստ շրջանների նշվում է հսկողության տակ գտնվող հղիների ծննդաբերության, ինչպես և տոկսային հարաբերությամբ, վաղաժամ ծնունդների, մեռելածնության, նորածինների մահացության և բնական արատներով ծնվածների թիվը: Ուսումնասիրելով քարտեզ-սխեմայի արդյունքները՝ հնարավոր է պարզել գենետիկական հիվանդությունների էկոլոգիական ասպեկտները, դրանց սոցիալական պայմանավորվածությունը:

Հետազոտելով հղիության ու ծննդաբերության շրջանի բացասական երևույթները, դրանք դիտել ենք որպես միասնական շղթայի առանձին օղակներ: Օրգանիզմի վրա ներգործող վնասակար ազդեցությունների տարբեր կողմերն ու փուլերը յուրաքանչյուրի մոտ միատեսակ և միաժամանակ չեն երևան գալիս, այլ պայմանավորված են զանազան գործոններով՝ կապված նման արտասովոր ու լարված իրավիճակում կնոջ օրգանիզմի հարմարվողական մեխանիզմի, դիմադրողունակության հետ:

Մեր հետազոտության հիմնական փաստա-

կան նյութն ընդգրկում է հանրապետության բոլոր շրջանների ավելի քան 1.000 ընտանիք: Ստացված արդյունքների հիման վրա կարելի է ասել, որ, չնայած բազմապատճառ են գենետիկական հիվանդությունները, սակայն թունաքիմիկատների մասսայական օգտագործումը գյուղատնտեսության բնագավառում (ուր արտադրապրոցեսներում դեռևս մեծ մասամբ կանայք են զբաղված), ինչպես և աշխատանքային ու անձնական հիգիենայի կանոնները չպահպանելը բացասաբար են անդրադառնում այդ ասպարեզի աշխատողների, հատկապես կանանց առողջության վրա:

Հետևելով գենետիկական հիվանդություններով ծնվող երեխաների թվի աճին և հենվելով գիտական գրականության մեջ ամփոփված հետազոտությունների արդյունքների վրա, կարելի է եզրակացնել, որ էմբրիոտրոպ հատկություններ ունեցող պրեպարատներ պարունակող թունաքիմիկատների լայն ու սիստեմատիկ օգտագործումը, հիգիենայի կանոնները չպահպանելու պայմաններում, կարող է պատճառ դառնալ վաղաժամ ծննդի, բնածին գենետիկական հիվանդությունների, մեռելածնության, վիժումների, թերքաշ ծնվածների:

Այսպիսով, մարդու օրգանիզմի վրա ժամանակակից պեստիցիդների ազդեցությունն ուսումնասիրելիս հարկ է նկատի ունենալ հատկապես դրանց էմբրիոտրոպ հատկությունը: Ժամանակակից պեստիցիդների բացասական ազդեցության հարցի սոցիալ-հիգիենիկ ուսումնասիրության ժամանակ պետք է ամենից առաջ մշտական հսկողության տակ պահել կնոջ ու պտղի առողջական վիճակը, վերջինիս աճն ու զարգացումը: Այդ է պահանջում գյուղատնտեսական աշխատանքներում մասսայականորեն զբաղված կնոջ, նորածինների և ապագա սերունդների առողջության պահպանումը:

Անտարբեր լինել այս ամենի նկատմամբ, նշանակում է չհոգալ ապագայի մասին: Մարդու, ընդհանրապես ապագայի մասին չնվազող հոգածության արտահայտությունն են վերոհիշյալ օրենքների նախագծերը: Մթնոլորտային օդի պահպանության մասին օրենքի նախագծի 16-րդ հոդվածում կարդում ենք. «Բույսերի պաշտպանության այն միջոցների, դրանց աճի խթանիչների, հանքային պարարտանյութերի և մյուս այն պրեպարատների ցանկը, որոնց կիրառումը թույլատրվում է տվյալ վայրի գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ, ենթակա է համաձայնեցման մթնոլորտային օդի պահպանության պետական վերահսկողության, հատկապես լիազորված մարմինների հետ՝ ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենսդրությամբ սահմանվող կարգով»: Այնուհետև նշվում է, որ գյուղատնտեսության մեջ գործադրվող նոր պրեպարատներ ստեղծելիս պետք է մշակվեն մթնոլորտային օդում դրանց առավելագույն թույլատրելի խտությունների նորմատիվները, դրանց մնացորդային քանակությունները սահմանելու մեթոդները:

Մարդկանց ներկա և ապագա սերունդների, նրանց շրջապատող միջավայրի, բուսական ու կենդանական աշխարհի պահպանումը, բարելավումն ու վերականգնումը համապետական, համաժողովրդական կարևորագույն գործ է, որի կատարմանը ամենայն պատասխանատվությամբ պետք է ձեռնամուխ լինեն ամենքը:



# ՊԱՏՐԱՍՏ՝ ՇԱՐՔԱՅԻՆ ԼԻՆԵԼՈՒ

**Վ. ՍԵՐԵԲՐՅԱՆՆԻԿՈՎ**
Ավիացիայի գեներալ-մայոր, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

**ԵՐԲԵՄՆԻ ՄԵԾ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ** մայրաքաղաքը, թվում է, չէր կորցրել իր հմայքը: Մանավանդ, 1932 թվականին Վիեննայի վրա թանձրացող աշնանային երեկոյի աղջամուղջը անտեսանելի էր դարձնում շենքերի պատերի վրայի գնդակների հետքերը՝ բանվորների հակաֆաշիստական ցույցի արյունալի գնդակոծման հիշատակը: Այն ժամին, երբ թատրոնները, կինոդահլիճները, զվարճալիքի բազում հաստատությունները լայնորեն բացել էին իրենց դռները, քաղաքի խաչմերուկներից մեկում հանդիպեցին երկուսը: Նրանցից մեկը, հագուստից դատելով, կոմերսանտ էր: Գեղեցիկ, արտահայտիչ դիմագծերը և կրակոտ վարվելակերպը մատնում էին, որ նա հարավցի է: Երկրորդը՝ բարձրահասակ, լայնաթիկունք, նըման էր սկանդինավցու: Սակայն երկուսն էլ խոսում էին գերմաներեն: Արտասանվել էր միայն երկու կարճ նախադասություն: Նրանք լուռ մտան խաղաղ նրբանցքը, ուր գտնվում էին ազնվականների առանձնատները:

Ո՛չ անտարբեր հայացքով նրանց ուղեկցող զբոսաշրջիկները, ո՛չ իրենց գործին շտապող վիեննացիները, ոչ ոք չէր կարող ենթադրել, թե նրանցից երիտասարդը բուլղարացի Իվան Վինարովն է: Իսկ մյուսը՝ բանվորագյուղացիական կարմիր բանակի շտաբի հետախուզական վարչության պետ Յան Կարլովիչ Բերզինը:

Չնայած մեծ վտանգին, այն ժամանակ նա հաճախ էր նման ուղևորություններ կատարում դեպի արտասահման: Բերզինն անհրաժեշտ էր համարում տեղում ծանոթանալ արագ փոփոխվող քաղաքական իրադրությանը, ուսումնասիրել այն պայմանները, որոնցում աշխատում էին իր օգնականները, անձամբ շնորհավորել արժանավորներին:

Բայց այս գործուղումն առանձնահատուկ հանգամանքների հետևանք էր: Իվանի հետ ունեցած զրույցից և գաղտնի բնակարանում կարճատև գիշերելուց հետո կրկին ճանապարհ ընկավ Գերմանիա, ուր հասունանում էին տագնապալի իրադարձություններ: Բանվոր դասակարգը պառակտված է: Սոցիալ-դեմոկրատների ղեկավարությունը չի կամենում անսալ կոմունիստների՝ հակաֆաշիստական միասնական ճակատ ստեղծելու կոչերին: Վայրագություններ էին կատարում գրոհիչները, գանահարելով ձախ ակտիվիստներին, ցրելով աշխատավորների միտինգները: Կառավարող շրջանները, բանկիրներն ու ֆաբրիկանտներն ավելի ու ավելի բացահայտ են պաշտպանում Հիտլերին: Ինքը՝ այդ երբեմնի եֆրեյտորը, մյունխենյան գարեջրատների հերոսը, քաղաքական ոչնչություն է,— մտածում էր Բերզինը: Բայց նրա թիկունքին կանգնած են Գերմանիայի. ԱՄՆ-ի, Անգլիայի ամենազոր կոնցեռնները, որոնց տերերը պատրաստ են ամեն ինչ անել՝ խեղդելու համար սոցիալիզմի առաջին պատվարը մոլորակի վրա:

Յան Կարլովիչը, անշուշտ, գուշակ չէր: Այն ժամանակ նա չէր կարող իմանալ՝ որքան ծանր կլինի մեզ համար գալիք պատերազմը, որքան վիթխարի և անդառնալի կլինեն մեր հաղթանակի հետևանքները, ինչպես չէր կարող ենթադրել, որ իր միակ որդին՝ Անդրեյը, որ այդ ժամանակ սովորում էր դպրոցում և անհամբեր սպասում հայրիկին, կսպանվի ռազմաճակատում, և կընդհատվի Բերզինների տոհմը: Բայց այն, որ երկիրը պետք է պատրաստվի համաշխարհային ռեակցիայի նոր հարձակմանը, ինչպես և այն, որ հատկապես այստեղ՝ Եվրոպայի կենտրոնում է ծնվում պատերազմի նոր և ամենավտանգավոր օջախը, որ Հիտլերի իշխանության գլուխ անցնելը ռեալ է դարձնում այդ պատերազմի վտանգը, Բերզինը գիտակցում էր շատ ավելի հստակ, քան այն ժամանակ շատերը: Այդ ամենը հարկադրում էին նորովի վերաբերվել իր ղեկավարությանը հանձնված վարչության խնդիրներին: Անհրաժեշտ է հատկապես Գերմանիային առավելագույն ուշադրություն հատկացնել, հատկապես այստեղ պետք է ուղղել գլխավոր ուժերը:

Սպասվում են նոր անքուն գիշերներ վարչության առանձնատան ընդարձակ աշխատասենյ-

յակում, նոր, երկարատև անջատում մերձավոր ընկերներից, օգնականներից, իսկ կարճ ռադիոհաղորդումների ընդմիջումներին ոչնչով սրտից չես վանի տագնապը այն մարդկանց համար, ում հետ այդքան ապրել, տառապել ես: Ի՞նչ արած, այդպիսին է հետախուզության պետի ծառայությունը: Չէ՛ որ նա, դեռևս այն ժամանակ, արդեն ոչ սկսնակ չեկիստ, հասկանում էր, թե որքան ծանր է լինելու իր ճակատագիրը, երբ տվեց իր համաձայնությունը Ֆելիքս Էդմունդովիչին, իր նշանակման առթիվ:

Հեղափոխության երկաթյա ասպետը կարողանում էր իր զինակիցների շրջանում հանճարեղորեն ճանաչել այն մարդկանց, որոնց ուժերից վեր չէր անմարդկային ծանրությունը, վիթխարի պատասխանատվությունը: Նրանց, ում կարելի է հանձնարարել ամենադժվար գործը, գիտենալով, որ չեն ձախողի: Ձերժինսկին չսխալվեց և Բերզինի հարցում: Նրանց հանդիպման պահին, Պետրոգրադում, Յան Կարլովիչն արդեն կոփված մարտիկ էր, մեկը նրանցից, որ կազմում էին բոլշևիկների լենինյան գվարդիայի ոսկե ֆոնդը: Հետագայում՝ 1922 թ., լրացնելով ՌԿ(բ)Կ անդամների համառուսաստանյան ցուցակագրման բլանկը, Բերզինը կգրի. «Գործադուլներին մասնակցել եմ 7 անգամ, քաղաքական փողոցային ցույցերին՝ 9, անլեգալ ժողովներին ու միտինգներին՝ անհաշիվ, մայովկաներին՝ ամեն տարի, զինված ապստամբություններին ու պարտիզանական գործողություններին՝ 7 անգամ»: Հատկապես նման հեղափոխականների մասին է գրել Ֆ. Է. Ձերժինսկին հարազատներին ուղղած նամակներից մեկում. «Նման մարդկանց հոգում սրբազան կրակ կա, որը երջանկություն է պարգևում նույնիսկ ողջակիզվելիս»: Եթե Բերզինին հարցնեին, թե ինչն է իրեն երջանկացրել, հավանաբար նա կպատասխաներ կարճ ու պարզ— հեղափոխությունը: Թող որ նա՝ լեգենդի նման այդ մարդը սոսկ մասնիկն էր ռուսական պրոլետարիատի դժվարին ու փառապանծ ուղու՝ երկու դարաշրջանների սահմանագծին: Խորհելով Յան Կարլովիչի արտասովոր ճակատագրի մասին, առավել ցայտուն ես պատկերացնում, թե ինչու հեղափոխությունները կեղեքվածների ու ճնշվածների տոնն են:

Յ. Կ. Բերզինի իսկական անունը, հայրանունն ու ազգանունն են՝ Պետեր Յանովիչ Կյուզիս: Ծնվել է նա 1889 թվականի նոյեմբերի 29-ին, Ռիգայի գավառի Յաունպիլսի շրջանի Կլիգեն խուտորում, բատրակի ընտանիքում: Պատանի Պետերի վրա մեծ ազդեցություն է ունեցել նրա մեծ եղբայրը՝ հյուսն Յանը, որ վաղ էր հարել հեղափոխական շարժմանը: Կյուզիսների բոլոր երեխաները՝ երկու տղաները և աղջիկները՝ Քրիստինան և Պաուլինան, դարձան կոմունիստներ:

Տարրական դպրոցում արդեն Պետերը դրսևորեց փայլուն ընդունակություններ, որի շնորհիվ նրան հաջողվեց ընդունվել Կուլդիգի Մերձբալթյան ուսուցչական սեմինարիան: Զուր էին ջանում մանկավարժները դաստիարակել իրենց աշակերտներին որպես ինքնակալության հավատարիմ ապաստավորներ, պահպանել երիտասարդ ուղեղները ժամանակի «վտանգավոր» ազդեցություններից: Սեմինարիայի պատերից դուրս կատարվող իրադարձությունները չէին կարող չհուզել ապագա գյուղական ուսուցիչներին, որ մեծ մասամբ գյուղացիների, բատրակների զավակներ էին: 1904 թվականի վերջին ողջ Լատվիայով մեկ տարածվել էր իր թափով չտեսնված գործադուլային շարժում, գործադուլներն սկսել էին քաղաքական բնույթ կրել: Մերձբալթիկայում, ինչպես և ողջ երկրում, գյուղացիական հուզումներ էին բռնկվել:

1904 թ. աշնանը պատանի Պետեր Կյուզիսը դառնում է սեմինարիայի սովորողների՝ զորանոցային ռեժիմի և ռեակցիոն դասատուների դեմ տեղի ունեցող ելույթների կազմակերպիչներից մեկը: Այդ ժամանակ իսկ նա ընկնում է անվստահելիների ցուցակի մեջ: Շուտով Կյուզիսը կապ է հաստատում սոցիալ-դեմոկրատական ընդհատակյա խմբակի հետ: Գիշերները կարդում է մարքսիստական թռուցիկներ ու գրքույկներ, «Искра» և «Циня» («Պայքար») լրագրերը, որոնց ազդեցությամբ ձևավորվում են նրա հեղափոխական համոզմունքները:

1905 թվականի գարնանը Պետեր Կյուզիսը զատկի արձակուրդներին գալիս է ծնողների մոտ՝ Յաունպիլս: Շատ բան էր փոխվել փոքրիկ քաղաքում: Գավառային հին կառավարչության փոխարեն ընտրված էր իշխանության նոր հեղափոխական օրգան՝ սովետի դեր կատարող գյուղացիական կարգադրիչ կոմիտե: Պետերը գլխովին նետվում է հեղափոխական աշխատանքի ոլորտը, մարտական ջոկատների շարքերում պայքարում ընդդեմ պատժիչների ու ոստիկանների: Շատ տարիներ անց, հիշելով իր երիտասարդությունը, Յան Կարլովիչը կասի. «...Այն ժամանակ ես ապրում էի հեղափոխական էքստազի մեջ»: Քաղաքական պայքարի առաջին դասերը երիտասարդ հեղափոխականն ստացել է լատիշ բանվորներից, որոնց 1905 թվականի սխրանքն այնպես բարձր է գնահատել Լենինը: Լատիշական պրոլետարիատը, նշել է Վլադիմիր Իլյիչը, «ընթանում էր զինված ապստամբության ավանգարդում, նա ամենից ավելի էր աջակցում շարժումն ամենաբարձր աստիճանին, այսինքն՝ ապստամբության աստիճանին հասցնելուն: Նա ավելի, քան ուրիշ որևէ մեկը, ցարիզմի և կալվածատերերի դեմ մղվող հեղափոխական մեծ պայքարի մեջ է քաշում լատիշ գյուղատնտեսական պրոլետարիատին ու լատիշ գյուղացիությանը» (ԵԼԺ, հ. 19, էջ 376):



Ծավալուն ապստամբության շրջանում էլ հենց Պետեր Կյուզիսը ընդունում է իր կյանքի գլխավոր որոշումը, 1905 թվականի վերջին նա ընդունվում է բոլշևիկների կուսակցության շարքերը:

Լատվիայում հայտարարված էր պաշարողական վիճակ, ուժգնանում էր կառավարական տեռորը: Պատժիչները հետևում էին այն ջոկատին, որի շարքերում մարտնչում էր Պետերը: Թշնամու դեմ մղած մարտում, ընկերների նահանջը քողարկելիս, Կյուզիսը ծանր վիրավորվեց: Կազակները ձերբակալեցին նրան: Անխուսափելի մահապատժից պատանուն փրկեց միայն այն, որ նա դեռևս տասնյոթ տարին չէր բոլորել:

Երկար տարիների բանտարկություն: Ընկերները գաղտնի Պետերին են հանձնում Մարքսի, Լենինի աշխատությունները: Հետո Բերզինը կհիշի, որ հեղափոխական տեսության ուսումնասիրությանը նա ինչպես հարկն է ձեռնամուխ է եղել միայն բանտում:

1909 թվականին Պետեր Կյուզիսը բանտից դուրս է գալիս իբրև կոփված, տոկուն մարտիկ: Նա դառնում է կուսակցական աշխատանքի կազմակերպիչներից մեկը Ռիգայում:

Ոստիկանական խուզարկությունների զեկույցներում քսանամյա հեղափոխականը շուտով ներկայացվում է որպես «սոցիալ-դեմոկրատիայի ամենահայտնի գործիչներից մեկը»: Ասես ի հաստատումն թշնամու այդ գնահատականի, 1911 թվականի ամռանը Ռիգայի IV շրջանը Պետեր Կյուզիսին միաձայն ընտրում է Լատիշական երկրամասի սոցիալ-դեմոկրատական կուսակցության համագումարի պատգամավոր:

Ցարական պահնորդությանը հաջողվեց գտնել աներկյուղ հեղափոխականի հետքը: Կրկին բանտ, աքսոր Իրկուտսկի նահանգի աքսորավայրերից մեկը: 1914 թվականին Պետերը փախչում է Սիբիրից: Այդ ժամանակ էլ նա փոխում է ազգանունը, անուն-հայրանունը— Յան Կարլովիչ Բերզին:

Կրկին Ռիգա: Պրոպագանդիստական աշխատանք ձեռնարկություններում, ընդհատակյա ժողովների, միտինգների կազմակերպում:

Ստիպված լինելով թաքնվել, Յան Բերզինը 1916 թվականին տեղափոխվում է Պետրոգրադ, աշխատանքի տեղավորվում գործարաններից մեկում իբրև հյուսն: Իր մտահորիզոնի, երկաթյա տոկունության, պայքարի անզուսպ տենչի շնորհիվ երիտասարդ կոմունիստը կարողացավ հեղինակություն ձեռք բերել և վայելել մայրաքաղաքի կուսակցական կազմակերպության հարգանքը: 1917 թվականի փետրվարին կուսակցության շրջկոմի անդամ Յան Կարլովիչը մասնակցում է յունկերների դեմ մղվող մարտերին: Ցարիզմի տապալումից հետո Բերզինը ղեկավարում է Պետրոգրադի լատիշական կուսակցական տպարանը, անդամն է «Պրոլետարիատա ցինյա» լրագրի խմբագրության: Հոկտեմբերի անմոռաց օրերին Յան Կարլովիչը Վիբորգյան շրջանի բոլշևիկյան կոմիտեի անդամ է: Հետագայում անկետաներից մեկի այն հարցին, թե ինչպե՞ս եք մասնակցել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությանը, նա մեծ համեստությամբ կպատասխանի. «Պետրոգրադում կատարել եմ տարբեր հանձնարարություններ»:

Փոթորկալի, տագնապահույզ ժամանակներ էին: Հակահեղափոխությունը, լայն օգնություն ստանալով դրսից, ձգտում էր ինչ գնով էլ լինի ետ շրջել պատմության անիվը: Դավադրությունը հաջորդում էր դավադրությանը: 1917 թվականի դեկտեմբերի 7-ին հեղափոխության նվաճումների պաշտպանության նպատակով ստեղծվեց Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողով (ВЧК)՝ Ֆ. Է. Ձերժինսկու նախագահությամբ: Կուսակցությունն այնտեղ աշխատելու էր ուղարկում ամենից վճռական, հաստատակամ, անկոտրում մարտիկներին, քանի որ, ինչպես շեշտել է Լենինը, ВЧК-ի գործունեության բնույթն իսկ պահանջում է վճռականություն, արագագործություն, և գլխավորը՝ հավատարմություն (տե՛ս ПСС, т. 37, стр. 173): Նրանց մեջ էր և Յ. Կ. Բերզինը: Կրկին լարված օրեր, անքուն գիշերներ, ընդհարումներ Մոսկվայում և Յարոսլավլում խռովություններ բարձրացրած էսեռների հետ:

Առնանում, ամրանում է սովետական հանրապետությունը: Ավելի ու ավելի հաճախակի են դառնում ուրախ լուրերը ռազմաճակատից: 1918 թ. դեկտեմբերին Բերզինն իմանում է, որ ստեղծվել է Լատվիայի առաջին սովետական կառավարությունը: Ամբողջ հոգով Յան Կարլովիչը ձգտում է հայրենիք: 1919 թվականի մարտին նա Ռիգայում է: Անմոռաց հանդիպումներ ընդհատակյային ընկերների, հարազատների հետ: Ափսոս, որ մայրը չապրեց մինչև այս օրերը: Շուտով Յ. Կ. Բերզինը դառնում է Սովետական Լատվիայի ներքին գործերի ժողկոմի տեղակալը: Սակայն կարճատև եղավ սոցիալիստական շինարարությունը Լատվիայում: 1919 թվականի մայիսի 22-ին գերմանական ինտերվենտների օգնությամբ կրկին Ռիգա ներխուժեցին հակահեղափոխականների ջոկատները: Արյունահեղ սպանդում ընկան Լատվիայի մոտ տասնմեկ հազար լավագույն որդիներն ու դուստրերը, որոնց հետ և

Բերզինի ընկերներն ու զինակիցները: Նույն օրն իսկ, ձեռքն առնելով հրացանը, նա կանգնեց Ռիգայի բանվորական գումարտակի շարքերում:

«Ինչպիսի՞ պաշտոն կուզեիք զբաղեցնել»— հարցրեց նրան հրամանատարը: «Ես համաձայն եմ շարքային լինելու,— պատասխանեց ժողկոմի տեղակալը»: Դժվարին, անհավասար կռվում նա ծանր վիրավորվեց: Զինվորական հիվանդանոցում մի գնդակը չկարողացան հանել նրա գանգից և այդ գնդակով էլ Բերզինն ապրեց իր ողջ կյանքը:

Դեռ վերքերը լրիվ չբուժած, Յան Կարլովիչը վերադարձավ ռազմաճակատ, կարմիր բանակի շարքերը, որպեսզի այլևս չհեռանա նրանից, մինչև վերջին շունչը մնալով նրա զինվորը:

1919 թվականի ամռանը մարտերը ծավալվեցին Պսկովի տակ: Յ. Կ. Բերզինը՝ 11-րդ դիվիզիայի քաղբաժնի պետը, գրոհի էր գնում հարձակվողների առաջին շարքերում: Ավելի ուշ, լինելով արդեն 15-րդ բանակի ВЧК-ի հատուկ բաժնի պետը, Նարվայի տակ, առաջավոր ջոկատի հետ ծանծաղուտով անցավ գետը՝ Յուդենիչի զորքերի ճանապարհը կտրելու նպատակով: Այդ մարտում նրանց ջոկատից ողջ մնացին միայն տասներեք հոգի:

1920 թվականի դեկտեմբերի 2-ին Յ. Կ. Բերզինը ծածկագիր ստացավ Ձերժինսկուց: Նրան կանչում էին Մոսկվա: Յան Կարլովիչը կանչվում էր բանվորագյուղացիական կարմիր բանակի (ԲԳԿԲ) ռեգիստրվարչության տրամադրության տակ: Բերզինն արդեն գիտեր, թե ինչ է նշանակում ռեգիստրվարչություն: Այդպես էր կոչվում կարմիր բանակի հետախուզական վարչությունը:

Շուտով նա դառնում է վարչության բաժնի պետ, ապա բանվորագյուղացիական կարմիր բանակի հետախուզական վարչության շտաբի պետի օգնականն ու տեղակալը:

Այդ նոր պարտականությունները Բերզինը պետք է յուրացներ այբ-ից՝ գտնվելով ամենաառաջավոր գծում, այնպես, ինչպես մի ժամանակ նա ռազմական գործն էր սովորում ուղղակի մարտերում: 1922 թվականին նա կատարում է իր առաջին երկարատև ուղևորությունը արտասահման՝ Բեռլին, Պրագա, Վարշավա: Հարկ եղավ արտաքինը փոխել. մոդայիկ կոստյում, քթին՝ ոսկե պենսնե: Ազգանունը՝ Դվորեցկի:

Բերզինի ծառայողական անկետայում հայտնըվում է այսպիսի գրառում. «Հարց. ինչպիսի՞ պետություններ եք ուսումնասիրել և ինչպե՞ս: Պատասխան. Արևմտյան— աշխատանքի բերումով...»: 1924 թվականի մարտին երեսունչորսամյա Յ. Կ. Բերզինը նշանակվեց հետախուզական վարչության պետ:

Սովետական երկիրն ապրում էր իր զարգացման դժվարին փուլը: Վերականգնվում էր քայքայված տնտեսությունը: Ամրապնդվում էր ՍՍՀՄ-ի միջազգային հեղինակությունը: Հաստատվել էին դիվանագիտական հարաբերություններ, ծավալվում էր առևտուրը շատ երկրների հետ: Սակայն կապիտալիստական շրջապատումը պակաս վտանգավոր չէր դառնում: Իմպերիալիստական շրջանները, պարտություն կրելով իրենց միջոցներով իսկ ապահոված սպիտակգվարդիական բանակների, անմիջական ինտերվենցիայի, տնտեսական բլոկադայի օգնությամբ սովետական իշխանությունը տապալելու փորձերում, այժմ արդեն հույսերը դնում էին ՆԷՊ-ի պայմաններում բանվորագյուղացիական պետությունը ներքուստ քայքայելու վրա: Ակտիվանում էր օտարերկրյա հետախուզության քայքայիչ աշխատանքը ընդդեմ սոցիալիզմի առաջին երկրի: Դրա հետ մեկտեղ միջազգային ռեակցիան ոչ մի վայրկյան չէր հրաժարվում հակասովետական նորանոր ինտերվենցիայի պլաններից:

Այդ ամենը լենինյան կուսակցությունից, սովետական կառավարությունից, կարմիր բանակից պահանջում էր մեծագույն զգոնություն և ամբողջ աշխարհում արագ փոփոխվող քաղաքական իրադրության լավատեղյակություն: Այս պայմաններում վիթխարի պատասխանատվություն էր ընկած հետախուզական օրգանների ուսերին, որոնք կոչված էին լինելու կարմիր բանակի աչքն ու ականջը, նրա գլխավոր պահապան դետքը: Երբ Բերզինը եկավ վարչություն, նոր-նոր կազմավորվում, իր առաջին քայլերն էր կատարում սովետական ռազմական հետախուզությունը: «Գործը նոր էր, դժվարին և պահանջում էր ո՛չ միայն երկաթյա կամք և ամուր նյարդեր, այլև՝ սթափ գլուխ, բյուրեղյա ազնվություն, չտեսնված և բացարձակ ճկունություն, անառարկելի նվիրվածություն կուսակցությանը և օրինապահություն»,— մեր երկրում հետախուզության և հակահետախուզության օրգանների ստեղծման մասին գրել է Վ. Ռ. Մենժինսկին:

Սովետական հետախուզության օրոցքին մոտ կանգնած մարդկանցից՝ Ֆ. Է. Ձերժինսկուց, Վ. Ռ. Մենժինսկուց, Յ. Կ. Բերզինից և ուրիշներից պահանջվում էր ո՛չ միայն կարգավորել հետախուզական ինֆորմացիայի ստացումն ու վերլուծությունը: Անհրաժեշտ էր ստեղծել մեր հետախուզական օրգանների գործունեության հիմնարար սկզբունքները: Նման աշխատանքի փորձ մեր կուսակցությունը չուներ: Հույս չէին դնում նաև այլ երկրների կամ հին մասնագետների համապատասխան փորձի օգտագործման



վրա, ինչպես այդ արվում էր պետական շինարարության շատ տեղամասերում: Պարզ էր, որ սոցիալիստական պետության հետախուզության խնդիրները, պարտականություններն ու մեթոդները բոլորովին տարբեր են կապիտալիստական հատուկ ծառայությունից, որի հետ վիճակված էր նրան գոտեմարտի բռնվել առանց փոխզիջման:

Վարչության կոլեկտիվը Բերզինը համարում էր կուսակցության մի մասը, իր գործը՝ համակուսակցական գործի մասը: Կուսակցական ղեկավարությունը նա համարում էր իրեն և իր ընկերներին հանձնարարված դժվարին գործի հաջողության գրավականը:

Չնայած խիստ զբաղվածությանը, հետախուզության պետը ժամանակ էր գտնում մեծ ու բազմակողմանի հասարակական աշխատանք կատարելու: Հաճախ նրան կարելի էր տեսնել Մոսկվայի Խամովնիչեսկի շրջանում, Մոսկվայի կոմիտեի հանձնարարությամբ նա զեկուցումներով հանդես էր գալիս ֆաբրիկաներում ու գործարաններում: Կուսակցական ժողովներից մեկում Յան Կարլովիչին հարցրին. իրեն հանձնարարված այդ վիթխարածավալ աշխատանքում ժամանակ գտնո՞ւմ է նա զբաղվելու իր քաղաքական մակարդակի բարձրացմամբ: «Այն աշխատանքը, որ ես կատարում եմ,— պատասխանեց նա,— ստիպում է բարձրացնել մակարդակը: Միջազգային իրադրության ասպարեզում... կարող եմ ասել, որ հասկանում եմ այն, քանի որ դա ընդգրկում է մեր անմիջական աշխատանքի հարցերը: Սոցիալիստական ներքին շինարարության հարցերի բնագավառում չեմ զգում ինձ կտրված, քանի որ իմ կուսակցական աշխատանքի միջոցով ես կապված եմ մասսաների հետ»:

Յան Կարլովիչի առաջին հոգսը կադրերի ընտրությունը, պատրաստումն ու դաստիարակությունն էր: Այն մարդիկ, որոնց նա ուշադրություն էր դարձնում, ամենից առաջ գործարանի բանվորներ ու աշխատավոր ինտելիգենցիայի ներկայացուցիչներ էին: Նրանք աչքի էին ընկնում իրենց գաղափարական հասունությամբ, բոլշևիկների կուսակցությանը նվիրվածությամբ: Նրանցից շատերը ինքնակալության դեմ մղված պայքարի ակտիվ մասնակիցներ էին, Հոկտեմբերի հերոսներ, քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում աչքի ընկած մարդիկ: Յան Կարլովիչի աշակերտներից մեկը հիշում է. նոր կադրերին, որոնց մեծ մասը պետք է սովորեր աշխատանքի ընթացքում, Բերզինը դաստիարակում էր կատարյալ ինտերնացիոնալիզմի ոգով, սովորեցնում էր գործնական աշխատանքում ծագած հարցերի լուծման ժամանակ լինել համարձակ, ինքնուրույն:

Պահպանվել են սովետական հետախույզների, նրանց վարքագծի կանոնների վերաբերյալ Բերզինի գրառում-խոհերը: Հետախուզությանը, գրել է նա, պետք են ոչ թե սոսկ հանդուգն խիզախներ, այլ արտակարգ, կարկառուն գլուխներ, հարուստ երևակայությամբ, որոնք կարողանան ինքնուրույն և արագ կողմնորոշվել ամենաբարդ իրադրության մեջ, ամենածանր մենամարտում, ամենաանելանելի թվացող դրության մեջ վայրկենապես ընդունել ճիշտ և միակ հուսալի որոշումները: Վարչության պետը հաճախ էր ասում ընկերներին. «Հետախույզը պետք է ունենա հայրենասերի ջերմ սիրտ, սառը գլուխ և պողպատյա նյարդեր»: Հենց այդպիսին էր ինքը: Այդպիսին էին նրա մերձավորագույն բարեկամներն ու աշխատակիցները՝ Օսկար Ստիգան, Լև Մանևիչը, Քրիստափոր Սալնինը, Կարոլ Սվեչևսկին, Վասիլի Դավիդովը և շատ ուրիշներ:

Մարդկանց ընտրելիս վարչության աշխատակիցները հենվում էին կուսակցական կազմակերպությունների, Կենտկոմի աշխատողների, սովետական մարմինների ղեկավարների խորհուրդների վրա: Այդպես ներկայացրին Բերզինին ջահել կարմիրբանակային օսեթին Ու. Դ. Հաջի Մամսուրովին, որ աչքի էր ընկել բանդիտների դեմ Հյուսիսային Կովկասում մղված մարտում, 1922 թվականին: Շուտով Մամսուրովը դարձավ վարչության ամենաընդունակ աշխատողներից մեկը: Սովետական Միության հերոս, գեներալ-գնդապետ Մամսուրովը իր ողջ պայծառ կյանքը նվիրեց մեր հայրենիքի պաշտպանության ու անվտանգության ամրապնդմանը:

Անտարակույս, Բերզինի մեծագույն հաջողություններից մեկն այն է, որ նա կարողացավ հանձին տաղանդավոր երիտասարդ գիտնական Ռիխարդ Զորգեի տեսնել ապագա փայլուն հետախույզին: Երկար ժամանակ հաջողությամբ աշխատելով Տոկիոյում, Զորգեի հետախուզական կազմակերպությունն օգնեց սովետական հրամանատարությանը՝ ստանալու կարևորագույն տեղեկություններ:

Կադրերի ուսուցման՝ Յ. Կ. Բերզինի ստեղծած համակարգում մեծ ուշադրություն էր նվիրվում մարքս-լենինյան պատրաստականությանը: Այստեղ ևս, ինչպես ամենուր, հետախուզական վարչության պետն ինքը օրինակ էր ցույց տալիս: Պարապելու համար մի կերպ ժամանակ գտնելով, նա սովորում էր Պրոլետարական համալսարանում:

Կարճ ժամանակամիջոցում վարչության՝ այն ժամանակվա փոքրիկ կոլեկտիվը համախմբվեց համերաշխ մարտական ընտանիքում: Եվ դրանում իր մեծ ավանդն ուներ կատարյալ կոմունիստ, հետևաբար և կոլեկտիվիստ, հե-

տախուզության պետը: «Երկար տարիներ ես աշխատել եմ նրա ղեկավարությամբ,— հիշում է Բերզինի զինակիցներից մեկը:— Սակայն ամենից քիչ նրա մասին կարող եմ հիշել իբրև պետի: Նա մեզ համար ավագ ընկեր էր՝ ամենքիս համար բաց իր սրտով: Չպահպանելով աստիճանակարգը, մենք գնում էինք նրա հետ զրուցելու, հայտնելու նրան մեզ համար ամենանվիրականը, ստանալու նրանից առույգության լիցք, հեղափոխական եռանդ: Մարդկանց հետ ունեցած հարաբերություններում նա արտակարգ համեստ էր ու հասարակ: Եվ, միաժամանակ, երբ նա իր միշտ հանդարտ, հանգիստ ձայնով ասում էր. «Պետք է անել», ամեն ոք հասկանում էր. «Այդ պիտի արվի»: «Բերզինն ասաց», և մենք պատրաստ էինք լինում. «Բերզինն ասաց», և մենք գնում էինք ուզած վտանգի դեմ: Նրա հեղինակությունն անսասան էր»:

Աշխատանքային ընկերները «Ծերուկ» էին կոչում Բերզինին. ավելի քան տարօրինակ անուն դեռևս քառասունը չբոլորած մարդու համար: Մասամբ այդպես էին կոչում նրան վաղ ճերմակելու համար. մահապարտների խցի ծանր հետքն էր այդ: Բայց բանը միայն այդ չէր: Աշխատակիցները, որոնցից շատերը Բերզինի հասակակիցներն էին, դրանով իսկ իրենց խոր հարգանքն էին մատուցում նրան: Հիշենք՝ աչքերի համար «Ծերուկ» էին կոչում մերձավորագույն զինակիցները Ֆելիքս Ձերժինսկուն:

«Ծերուկի» առանձնասենյակում տեղի ունեցող օպերատիվ խորհրդակցություններից մեկը վերջացավ կեսգիշերին: Քարտեզի մոտ նա ինքն է: Տիպիկ բանվորի կամ ձկնորսի դեմք, ճերմակ մազերի կարճ կտրվածքով: Մշտաժպիտ կապույտ աչքերը լրջացել են: Մի փոքր լռելով, Յան Կարլովիչն ասում է. «Ես հավատում եմ ձեզ, ընկերնե՛ր, որպես կոմունիստների և համոզված եմ, որ մյուս կողմում ևս, ուր էլ որ լինեք, միշտ և ամենուր դուք կմնաք կոմունիստներ, չեք զիջի ձեր դիրքերը»:

1931 թվականին ճապոնական ռազմամոլները ներխուժեցին Մանջուրիա և հասան Սովետական Միության սահմաններին: Հեռավոր Արևելքում բռնկվեց նոր համաշխարհային պատերազմի օջախը: Հաշվի առնելով Ճապոնիայի կողմից հարձակման աճող վտանգը, ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և սովետական կառավարությունն անհապաղ միջոցներ ձեռք առան: Հեռավորարևելյան կարմրադրոշ հատուկ բանակի զորքերի ուժեղացման նպատակով 1935 թվականի ապրիլին կորպուսի հրամանատար Յան Կարլովիչ Բերզինը նշանակվում է Հեռավորարևելյան կարմրադրոշ հատուկ բանակի հրամանատարի՝ Վ. Կ. Բլյուխերի տեղակալ, որին նա ծանոթ էր դեռ 1922 թվականից: Բլյուխերի խնդրանքով Հեռավոր Արևելք ուղարկված «Ծերուկի» մարտական ընկերները շատ օգնեցին նրան և՛ Չինաստանում, և՛ Չին-արևելյան երկաթուղում. տեղի ունեցած բախման ժամանակ: Յան Կարլովիչի նոր նշանակման առիթով ՍՍՀՄ պաշտպանության ժողկոմ Կ. Ե. Վորոշիլովը գրել է. «Նվիրված բոլշևիկ-մարտիկ, բացառիկ համեստ, խորապես հարգված ու սիրված բոլոր նրանց կողմից, ովքեր շփվել են նրա հետ աշխատանքի բերումով, ընկեր Բերզինն իր ողջ ժամանակը, բոլոր ուժերն ու իր ամբողջ փորձը նվիրել է իրեն հանձնարարված դժվարագույն և պատասխանատու գործին... Համոզված եմ, որ իր ապագա աշխատանքում ևս ընկեր Բերզինը լիովին կարդարացնի իր՝ բանվորագյուղացիական կարմիր բանակի լավագույն մարդկանցից մեկի, վաստակած հեղինակությունը»:

Մեկ տարի անց Իսպանիայում բռնկվեց ազգային-հեղափոխական պատերազմը— խաղաղության ու դեմոկրատիայի՝ ֆաշիզմի դեմ ուղղված առաջին խոշոր ճակատամարտը: Սովետական ժողովուրդն օգնության եկավ Իսպանական հանրապետությանը: Հանրապետական կառավարության խնդրանքով Իսպանիա առաքվեցին մթերք, զենք և գլխավորը՝ կամավորներ, զինվորական մասնագետներ: Իբրև խորհրդականներ հանրապետական բանակ եկան կարմիր բանակի հարյուրավոր հրամանատարներ, նրա հրամանատարական լավագույն կադրերը, որոնց, որպես գլխավոր զինվորական խորհրդական, գլխավորում էր գեներալ Գրիշինը— այդպիսին էր Յան Կարլովիչի նոր կեղծանունը:

Բերզինի շտաբը տեղավորված էր Վալենսիայի շրջակայքում գտնվող հին եռահարկ մի շենքում: Այստեղ էր նա քննարկում օպերատիվ պլանները, այստեղ էր հանդիպում ՍՍՀՄ-ից եկող զինվորական մասնագետներին:

Իր Իսպանիայում լինելու մասին Սովետական Միության մարշալ Ռ. Յա. Մալինովսկին հիշում է. «Շուտով ես ընկա սովետական դեսպանատուն, հետո հանդիպեցի խորհրդական Յան Կարլովիչ Բերզինին, որի մասին վաղուց շատ լավ բաներ էի լսել: «Ծերուկը», ինչպես կոչում էին նրան բոլորը, մի փոքր հոգնած էր երևում (նրան շատ հոգսեր էին բաժին ընկել), չնայած ջանում էր ցույց չտալ»:

Այո՛, հոգսերն ու դժվարություններն անպակաս էին... Օրեցօր ավելի ու ավելի շատ էին երկրի գործերին խառնվում ֆաշիստական Գերմանիան և Իտալիան: «Կոնդոր» լեգիոնի գերմանական օդաչուները օդահենություն էին անում երկնքում: Ռազմական մինիստրությունում և գլխավոր շտաբում կային շատ սպաներ ու աստիճանավորներ, որոնք դժկամությամբ էին նայում սովետական զինվորական մասնագետներին, գաղտնի ընդդիմանում էին նրանց գործունեությանը: Հանրապետության զորաշարքերը կազմալուծում էին անարխիստներն ու տրոցկիստները: Թիկունքում տեր ու տնօրինություն էր անում ֆրանկոյական «հինգերորդ շարասյունը»: Դրա փոխարեն ինչպիսի՛ ջերմությամբ ու անկեղծությամբ էին դիմավորում սովետական տանկիստներին ու օդաչուներին Իսպանիայի հասարակ մարդիկ՝ բանվորները, գյուղացիները, արհեստավորները: Ինչպե՛ս քաջաբար էին մարտնչում հանուն ազատության երեկվա հանքափորներն ու մետաղագործները, դոկերներն ու ուսանողները: Միևնույն շարքերում համատեղ պայքարում էին ինտերնացիոնալիստ-մարտիկները, նրանց հետ և Յան Կարլովիչի հայրենակիցները՝ լատիշները:

Բերզինի կողքին էին նրա հավատարիմ օգնականներ Մամսուրովը, Օլովսկին, Վաուպշասովը, Սվերչևսկին: Նրանք գլխավորում էին «Ծերուկի» ինտերնացիոնալիստական ջոկատները, որոնք գործում էին թշնամու թիկունքում: Հրդեհվեց փամփուշտի գործարանը Տոլեդոյում, խորտակվեց շարասյունը լյուֆտվաֆեի օդաչուներով: Պայթեցվում էին կամուրջները: Էստրամադուրայի, Սարագոսայի տակ, Ուէսկից հյուսիս-արևմուտք կռվում էին գեներալ Գրիշինի այն աշակերտները, որոնք հետագայում իրենց փառապանծ պարտիզանական ջոկատները տարան Ուկրաինայի և Բելոռուսիայի անտառներով:

1937 թվականի հունիսին Յան Կարլովիչը վերադարձավ հայրենիք: Կուսակցության ու կառավարության առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար նա պարգևատրվեց Լենինի շքանշանով: Կարևոր մի իրադարձություն ևս: 1937 թվականի հունիսի 9-ին Բերզինը կրկին կարմիր բանակի հետախուզական վարչության պետն է: Մեծ եռանդով և բոլշևիկյան կրքոտությամբ Յան Կարլովիչը գործի է կպչում: Այժմ նա առավել մանրակրկիտ գիտեր Հեռավոր Արևելքի իրադարձությունների մասին, ուր մոտ մի տարի գործել էր, և զինված էր Իսպանիայում ֆաշիզմի դեմ մղված պայքարի փորձով:

Յան Կարլովիչի զինակիցների՝ Մեծ հայրենականում տարած հաղթանակում մուծած ավանդի մեջ մեծ է նրանց ուսուցչի ու դաստիարակի՝ անտեսանելի ռազմաճակատի հրամանատարի բաժինը: Պատերազմի տարիներին հետախույզները պատվով կատարեցին իրենց պարտականությունը: Նրանցից շատերն արժանացան Սովետական Միության հերոսի կոչման:

Պաշտոնական լեզվով գրված պաշտոնական զեկույցներում երբեմն մարդու մասին կարող են լինել սոսկ բնութագրեր, հիշողություններ, ականատեսի պատմածներ: Մեր առջև է ՍՍՀՄ Պաշտպանության ժողովրդական կոմիսարիատի Հետախուզական վարչության պետ Յ. Կ. Բերզինի զեկույցը ՍՍՀՄ պաշտպանության ժողովրդական կոմիսար Կ. Ե. Վորոշիլովին. «1937 թ. մարտի վերջին ընդունված է իսպանացի երեխաների մի խումբ, թվով 72 մարդ... Երեխաները հանգստանալու համար տեղավորվեցին «Արտեկ» պիոներական ճամբարում... Երեխաների նշված խմբի համար... մենք ձեռնամուխ ենք եղել հատուկ մանկատան կահավորման... Մանկատնից դպրոց 10 րոպեի ճանապարհ է, ընդ որում երեխաները ոչ մի տրամվայի գիծ չեն անցնում...»:

Մի փաստաթուղթ ևս. Յան Բերզինի անունով հուշաթերթիկ 15-րդ բանակի ընկերներից, որ հանձնվել է բաժանման օրը, երբ նա մեկնում էր Մոսկվա: «Սույնով արտահայտելով մեր տխրությունը Ձեր անակնկալ մեկնելու առիթով, Ձեր, ո՛չ միայն որպես բացառիկ և անփոխարինելի պետի, այլ, հատկապես, որպես մեր ամենահարգելի ընկերներից մեկի, մենք, միաժամանակ, մեր պարտքն ենք համարում շիտակ ու բացահայտ, առանց շողոքորթելու, ասել Ձեզ՝ իբրև կոմունիստի, որ Ձեր մարդասիրական վերաբերմունքը բոլորի նկատմամբ, Ձեր գիտելիքները, փորձը, շիտակությունն ու տոկունությունը միշտ օրինակ են եղել մեզ համար ո՛չ միայն ընդհանուր, առօրյա, այլև մեր կուսակցական աշխատանքում: Ձեր մեկնումով մենք զրկվում ենք մի ընկերոջից, որը բոլոր հանգամանքներում կարողանում էր ցույց տալ այն ճիշտ ուղին, որով պետք է ընթանա ո՛չ միան հատուկ ծառայության աշխատողը, այլև ազնիվ ու գաղափարական կոմունիստը: Մենք հավատում ենք..., որ Դուք Ձեր նոր պոստում այսուհետ ևս կմնաք մեր ավագ, անկեղծորեն հարգված ընկերը»:

Անտարակույս, քաղաքացիական պատերազմի դաժանագույն մարտերում հակահետախուզության պետի համար հեշտ չէր մարդասիրություն դրսևորել: Սակայն Յան Կարլովիչի զինակիցների համար էականը հենց այս հատկանիշն էր: Այո՛, այդպիսին էր Բերզինը և՛ այն պահին, երբ Յարոսլավլում, խռովությունը ճնշելու ժամանակ, առանց երկմտանքի նետվեց գետը՝ փրկելու սուզվող կարմիր բանակայինին, և՛ երբ հոգում էր իսպանական երեխաների համար: Մարդկայնությունը, հոգու անսահման շռայլությունը ո՛չ միայն նրա առանձնահատկությունը, այլև բնավորության հատկանիշն էին: Չէ՛ որ ինչ աշխատանք էլ հանձնարարվել է նրան, ինչպիսի դաժան պայքարի էլ մասնակցել է, Բերզինը կատարել է աշխարհում ամենամարդասիրական առաքելությունը— եղել է կոմունիստ:

«Коммунист», № 17, 1979.

Գաղափարախոսական աշխատանքի էջերից

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՀԱՄԱՐ

## (ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ)

**Վ. Հ. ՂԱԶԱՆՋՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

**ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ** կոմունիստական դաստիարակության ասպարեզում կուսակցության գործունեությունը սոցիալիզմի կառուցման տարիներին կոչված էր ապահովելու ամենօրյա գաղափարական-քաղաքական ներգործությունը աճող սերնդի նկատմամբ՝ նրան դարձնելու նոր հասարակարգի ամրապնդման ակտիվ մասնակիցը: Այդ տարիներին կոմերիտմիությունը կուսակցության օգնականն էր՝ երիտասարդության քաղաքական լուսավորության կազմակերպման, հեղափոխական տեսության պրոպագանդման, այն սոցիալիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծման հետ միակցելու գործում:

Կուսակցության գաղափարական ներգործության հզոր միջոցներից էր կոմերիտական քաղաքական լուսավորության սիստեմը: Կուսակցությունը որոնում և գտնում էր կոմերիտական քաղաքական կրթության կազմակերպման, զարգացման և կատարելագործման առավել գործուն ձևեր ու մեթոդներ: Դեռևս ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում ստեղծվեցին երիտասարդության շրջանում լենինիզմի պրոպագանդման գործուն ձևեր ու մեթոդներ, կազմավորվեց քաղլուսավորության կոմերիտական սիստեմը, ամրապնդվեց քաղուսուցման կապը կյանքի, սոցիալիստական շինարարության պրակտիկայի հետ:

Սոցիալիզմի հիմքի կառուցման տարիներին կոմերիտական կազմակերպությունները ձեռք բերեցին երիտասարդության քաղաքական կրթության կազմակերպման, նրա կատարելագործման հարուստ փորձ, քաղուսուցման մեջ ներգրավվեցին կոմերիտականներին ու արտամիութենական երիտասարդությանը:

1933 թ. սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ երկրորդ հնգամյակի խնդիրների կենսագործմանը: ՍՍՀՄ-ը թևակոխեց ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման ժամանակաշրջանը: Այդ տարիներին կոմերիտմիության քաղաքական լուսավորության միասնական համակարգը հասավ նոր աստիճանի, կատարելագործվեցին նրա ձևերն ու մեթոդները:

Երիտասարդության քաղաքական կրթության ծավալման, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործման նպատակով ակտիվ աշխատանք էին տանում հանրապետության կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները:

Կոմերիտմիության քաղաքական կրթության կուսակցական ղեկավարությունն ու օգնությունն իրականացվում էին երիտասարդության քաղուսուցման գլխավոր խնդիրների, նրա ձևերի և մեթոդների սահմանման, կոմերիտական քաղլուսցանցի կոմպլեկտավորմանը պրակտիկ օգնություն ցույց տալու, քաղդըպրոցների պարապմունքների բովանդակությունը հարստացնելու, պրոպագանդիստական կադրերի ընտրության և պատրաստման ու վերապատրաստման միջոցով: Այսպես, ՀԿ(բ)Կ Կենտկոմի՝ 1932 թվականի հուլիսին հրավիրած խորհրդակցությունը առաջ քաշեց կոմունիստների, կոմերիտականների մարքս-լենինյան դաստիարակության բովանդակությունը սոցիալիզմի կառուցման նոր պայմանների և նոր պահանջների համեմատ վերակառուցելու խնդիրները (տե՛ս Ա. Աղոյան, «Մարքս-լենինյան դաստիարակության խնդիրները», Երևան, 1932 թ.):

Կոմերիտականների և արտամիութենական երիտասարդության քաղուսուցումը 1932—33 թթ. տեսական-քաղաքական բարձր մակարդակով կազմակերպելու համար ՀԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ ԼԿԵՄ բջիջների միջև անցկացվեց համահայաստանյան մրցություն:

ՀամԿ(բ)Կ Անդրերկրկոմը 1932 թ. նոյեմբերին ընդունեց «Կոմերիտմիությանը կուսակցական ղեկավարություն և օգնություն ցույց տալու մասին» որոշումը: Վերջինս կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց կոմերիտական կազմակերպությունների կուսակցական ղեկավարությունն ու օգնությունը ուժեղացնելու խնդիրների վրա: Նըկատի ունենալով կոմերիտականների մարքս-լենինյան ուսուցման կարևորությունը և այդ բնագավառում հատուկ ձեռնարկումներ մշակելու անհրաժեշտությունը, երկրային կուսկոմիտեն պարտավորեցրեց ՀամԿ(բ)Կ Անդրերկըրկոմի կուլտպրոպբաժնին և ՀամԼԿԵՄ Անդրերկըրկոմին՝ քսան օրվա ընթացքում այդ խնդրի շուրջը հրավիրել երկրամասային հատուկ կուսակցական խորհրդակցություն: Հանրապետությունների կուսակցական և կոմերիտական կազմակերպություններին օգնություն ցույց տալու նպատակով կուսակցական և կոմերիտական 15 ղեկավար աշխատողներ երկու շաբաթով գործուղվեցին տեղերը:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղարությունը 1933 թ. հունվարին, ուսումնասիրելով կուսակցական ուսուցման վիճակը հանրապետության շրջաններում, կուլտպրոպբաժնին և կուսշրջկոմներին հանձնարարեց պարբերաբար քննության առարկա դարձնել կոմերիտական քաղուսուցման հարցը, օգնություն ցույց տալ ԼԿԵՄ կազմակերպություններին քաղուսուցման կազմակերպման, պրոպագանդիստների կազմը համալրելու համար և այլն: Դրանից հետո, մարտ ամսին, ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն, շրջկոմների կուլտպրոպբաժիններին հղած շրջաբերականով, կուսկազմակերպությունների ուշադրությունն էր հրավիրում երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը վերակառուցելու և խորացնելու վրա: Այդ խնդիրը լուծելիս անհրաժեշտ էր ուղեցույց ունենալ կոմերիտմիության երրորդ համագումարում արտասանած՝ Վ. Ի. Լենինի պատմական ճառի անմահ գաղափարները[1]:

Հայաստանի կոմերիտմիությունը, Հայկոմկուսի ղեկավարությամբ, հանրապետության տնտեսական և կուլտուրական շինարարությանն ակտիվորեն մասնակցելու հետ զուգընթաց, մեծ ուշադրություն էր նվիրում կոմերիտականների, աշխատավոր երիտասարդության գաղափարական-քաղաքական դաստիարակությանն ու քաղաքական կրթությանը:

Կուսակցական կազմակերպությունների կողմից կոմերիտական քաղուսուցման նկատմամբ ցուցաբերած ուշադիր վերաբերմունքի և մշտական օգնության շնորհիվ 1932—1933 ուստարում կոմերիտականների և արտամիութենական երիտասարդության մարքս-լենինյան կըրթության նպատակով տարվող աշխատանքն ունեցավ նշանակալից հաջողություններ: Չնայած դրան՝ կուսակցությունը պահանջում էր չբավարարվել ձեռք բերածով և է՛լ ավելի առաջ մղել կոմերիտականների, աշխատավոր երիտասարդության գաղափարական-քաղաքական դաստիարակության գործը: ՀԿ(բ)Կ Կենտկոմը հանրապետության կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց կոմերիտականների քաղաքական կրթության բնագավառում նկատվող թերությունների և բացերի վերացման վրա:

Գյուղական կուսշրջկոմների կուլտպրոպբաժինները և գյուղական կուսբջիջներն սկսեցին ավելի մոտիկից զբաղվել կոմերիտական քաղաքական կրթության հարցերով: Պրոպագանդիստական կադրերով ամրապնդվեցին այն քաղխմբակները, որոնք փաստորեն անգործության էին մատնվել, կոմերիտական բջիջների գործունեությունն ուղղվեց կուսակցության և կառավարության առաջադրանքները անշեղորեն կենսագործելուն:

Կուսկազմակերպությունները հատուկ աշխատանք էին տանում պրոպագանդիստական կադրերի ընտրության ու դաստիարակության գործում: Կուսակցական այդ պատասխանատու հանձնարարությունը ստանձնում էին նրանք, ովքեր սերտորեն կապված էին արտադրության հետ, ուսումնասիրում էին քաղպարապմունքների մասնակիցների պահանջները և տիրապետում էին տեսական նյութին ու գիտելիքները ունկնդիրներին հասցնելու եղանակներին: Կուսակցական կազմակերպությունների օգնությամբ անցկացվեց կոմերիտական պրոպագանդիստների ստուգատես, որը մեծապես օգնեց բացահայտելու գործերի իրական վիճակը:

Կուսկազմակերպությունները շերտավորված մոտեցում էին ցուցաբերում պրոպագանդիստների պատրաստման գործին: Պրոպագանդիստներին ցույց տրվող մեթոդական օգնությունն ուժեղացնելու նպատակով կազմակերպվեցին պրոպագանդիստական հատուկ սեմի-

[1] *ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 21, գ. 259, թ. 78: Այսուհետև կրճատ՝ ՄԼԻ-ի ՀՖԿԱ:*

նարներ, որոնց ղեկավարներ նշանակվեցին տեսականորեն պատրաստված ու գաղափարապես կայուն մարդիկ: Պայքար ծավալվեց ունկնդիրների հոսունության դեմ և միջոցներ ձեռնարկվեցին քաղխմբակների պարապմունքների ընթացքում կարգապահությունն ամրապնդելու համար: Կուլտպրոպաշխատողների հանրապետական խորհրդակցությունը նույն թվականի սեպտեմբերի վերջին արձանագրեց, որ մի շարք շրջաններում (Մարալիկ, Արթիկ, Ծամշադին, Ախտա) կոմերիտական քաղուսուցմանը ցույց տրվող ղեկավարությունն ու օգնությունը անբավարար է: Խորհրդակցությունը կուսակցական ներքին օղակներից պահանջեց բարձրացնել երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը, կոմերիտական քաղլուսախստեմին ցույց տրվող ղեկավարության մակարդակն ու պատասխանատվությունը, կոմերիտմիությանն օգնել պրոպագանդիստական ուժերով, նյութական միջոցներով, ամենօրյա աշխատանքով:

Կոմերիտական ղեկավար ակտիվի տեսական մակարդակը բարձրացնելու նպատակով առաջարկվում էր բոլոր շրջաններում հինգ օրը մեկ ունենալ ինքնակրթության պարտադիր օր: Միևնույն ժամանակ ակտիվիստներին տրվում էին առանձին հանձնարարություններ և պահանջվում անշեղորեն կատարել դրանք: Ակտիվի համար կազմակերպվում էին հատուկ խմբակներ, տեսական կոնֆերանսներ:

1933—1934 ուսումնական տարում մի շարք միջոցառումների շնորհիվ բեկում առաջացավ կոմերիտականների քաղուսուցման ցանցում: Անցկացվում էին կոմերիտականների հասարակական-քաղաքական քննություններ, մեթոդական օգնություն էր ցույց տրվում պրոպագանդիստներին:

ՀամԼԿԵՄ Կենտկոմը 1934 թ. մայիսին կոմերիտական քաղլուսավորության կազմակերպման վերաբերյալ որոշմամբ քննադատում էր այդ գործում տեղ գտած թերություններն ու սխալները՝ կամպանիաներով տարվելը, գաղափարական աշխատանքը արհեստականորեն «արագացնելու» փորձերը (քաղհարձակումներ, քաղկարգադրություններ, քաղօլիմպիադաներ և այլն): Կուսակցությունն օգնեց այդ թերությունների վերացմանը: Չնայած այն բանին, որ կոմերիտական կազմակերպությունների կողմից կիրառվող գրոհները, էստաֆետները, օլիմպիադաները, քաղկարգադրությունները և գաղափարական-քաղաքական աշխատանքի նման ձևերը երիտասարդության շրջանում քաղաքական գիտելիքների նկատմամբ հետաքրքրություն էին արթնացնում, բայց և այնպես դրանք հեղափոխական տեսության հետևողական ուսուցման աշխատանքին տալիս էին կամպանիոն բնույթ:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն 1934 թ. նոյեմբերի 25-ին որոշում ընդունեց «Կոմերիտմիության մարքս-լենինյան դաստիարակության նկատմամբ կուսակցական ղեկավարությունն ուժեղացնելու մասին»:

Նշելով կոմերիտմիության մարքս-լենինյան ուսուցման ծավալման գործում կուսկազմակերպությունների կողմից ցույց տրվող միանգամայն անբավարար ղեկավարությունն ու օգնությունը՝ ՀԿ(բ)Կ Կենտկոմը կուսքաղկոմներին ու կուսշրջկոմներին առաջարկեց բյուրոների նիստերում քննարկել այդ խնդիրը և իրականացնել անհրաժեշտ գործնական միջոցառումներ, որոնք նպաստեին ԼԿԵՄ քաղուսուցման դրվածքի բարելավմանը: Բարձր գիտելիքներով օժտված հարյուր կուսանդամներ նշանակվեցին կոմերիտական քաղլուսցանցում աշխատելու համար, առաջարկվեց անցկացնել կոմերիտական քաղուսուցման ցանցի պրոպագանդիստների կազմի ստուգում և նրանց համար կազմակերպել սեմինարներ: Կուսհրատին առաջարկվեց կոմերիտմիության քաղուսուցման ցանցի համար հրատարակել դասագրքեր, համապատասխան մարմիններին հանձնարարվեց անհրաժեշտ ֆինանսական օգնություն ցույց տալ կոմերիտական քաղկրթության նյութական կարիքները բավարարելու համար:

1934 թ. հանրապետությունում կար 440.000 կոմերիտական, իսկ պիոներների և արտամիութենական երիտասարդության թիվը հասնում էր շուրջ 78.000-ի: Նրանցից կոմերիտմիության քաղուսուցման ցանցում ընդգրկված էր 32.282-ը, ընդ որում, կոմերիտական քաղլուսցանցի պրոպագանդիստները 1.331 հոգի էին, որոնցից ընդամենը 358-ն էին կուսակցության անդամներ և կուսակցության անդամության թեկնածուներ[1]:

Հայկոմկուսի Կենտկոմի պլենումը, 1935 թ. հունվարի սկզբին, լսելով ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտպրոպբաժնի վարիչ Լ. Արիսյանի «Մարքս-լենինյան ուսուցման վիճակի և նրա խնդիրների մասին» զեկուցումը, արձանագրեց կոմերիտական քաղուսուցման գործի անբավարար դրվածքը: Կենտկոմի որոշմամբ կուսքաղկոմներին և կուսշրջկոմներին առաջարկվում էր անմիջական վերահսկողության տակ վերցնել կոմերիտական քաղուսուցումը, ապահովել նրա ամենօրյա ղեկավարությունն ու օգնությունը: Կոմերիտմիության կարիքները հոգալու նպատակով նրա տրամադրության տակ էին դրվում լավագույն պրոպագանդիստները և անհրաժեշտ միջոցներ:

Կոմերիտականների քաղուսուցման կազմակերպումը բարելավելու և կատարելագործելու նպատակով կազմակերպվում էին հանրապետական մրցույթներ: Այսպես, 1935 թ. հունվարին «Ավանգարդ» թերթի համարներից մեկում (1935 թ., 17 հունվարի) հրապարակված են նման մրցույթներից մեկի պայմանները : Մրցույթի պայմանների համաձայն անհրաժեշտ էր քաղխմբակների միջև կազմակերպել սոցմրցություն, օգնություն ցույց տալ ետ մնացող և թույլ պատրաստված ունկնդիրներին, պարապմունքների համար հատկացնել հարմարավետ շենք: Կոմերիտական ակտիվիստները պետք է ղեկավարեին քաղխմբակները: Անհրաժեշտ էր կանոնավոր սեմինարներ անցկացնել (քաղաքում ամիսը երեք անգամ, իսկ գյուղական շրջաններում՝ 1—2 անգամ), կուսկաբինետներին կից ստեղծել պրոպագանդայի և ագիտացիայի կոնսուլտացիոն կետեր, անցկացնել ստուգողական զրույցներ, արտադրության առաջավորներից պատրաստել պրոպագանդիստական կադրեր, պարապմունքների նյութը հմտորեն կապել տվյալ ձեռնարկության կոնկրետ խնդիրների հետ:

Քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր էին օպերատիվ ղեկավարություն ցույց տալ պրոպագանդիստների և ագիտատորների պատրաստման և վերապատրաստման գործին: Նրանք եռամսյակը երկու անգամ պետք է ստուգեին մրցույթի պայմանների կատարման ընթացքը: Հաղթողը (կոմերիտմիության շրջկոմը կամ քաղկոմը) արժանանում էր պատվավոր տեղ գրավելու ՀԼԿԵՄ Կենտկոմի օրգան «Ավանգարդ» թերթի կարմիր տախտակում:

Կոմերիտական քաղաքական կրթության ձևերի և մեթոդների կատարելագործման, այն սոցիալիստական շինարարության պրակտիկայի խնդիրներին ծառայեցնելու գործում կարևոր դեր էր խաղում հանրապետական կուսակցական և կոմերիտական մամուլը: Մամուլի էջերում տպագրվում էին կոմերիտական քաղկրթության հարցերին նվիրված ծավալուն հոդվածներ, պարապմունքների ծրագրեր և պլաններ, մեթոդական ցուցումներ, լուսաբանվում էր լավագույն փորձն ու ձաղկվում աշխատանքի ստվերոտ կողմերը:

Մամուլի էջերում տպագրվում էին նաև կոմերիտական քաղլուսցանցի պրոպագանդիստների նամակները, որոնցում արծարծվում էին գաղափարական դաստիարակության հրատապ խնդիրները:

Կուսակցության պատմության ուսումնասիրությունը որպես երիտասարդության մարքս-լենինյան կրթության հիմնական ուղղություն, կենտրոնական տեղ էր գրավում կոմերիտական քաղլուսցանցում: Պայքար էր մղվում այնպիսի երևույթի դեմ, երբ կուսպատմությունն ուսումնասիրող խմբակները զանազան պատճառներով փաստորեն վերածվում էին ընթացիկ քաղաքականության խմբակների:

«Ավանգարդ» թերթի 1935 թվականի համարներից մեկում (1935 թ., 17 հունվարի) լուսաբանվում էր Մեղրի գյուղի միջնակարգ դպրոցի կուսակցության պատմությունն ուսումնասիրող կոմերիտական քաղխմբակի աշխատանքի դրական փորձը. այն թերթի կարմիր տախտակին արժանանալու թեկնածուներից էր: Հիշյալ խմբակի պրոպագանդիստն իր պարտականությունները կատարում էր բարեխղճորեն և մեծ պատասխանատվությամբ: Պարապմունքները սկսվելուց մի քանի օր առաջ նա մշակում էր թեմայի գրականությունը՝ հենվելով հիմնականում դասագրքի, իսկ որոշ դեպքերում՝ լրացուցիչ գրականության վրա: Պրոպագանդիստի պարապմունքի մեթոդը հետևյալն էր. սկզբում նա մանրամասնորեն պատմում էր թեմայի մասին, որից հետո համառոտ զեկույցներով հանդես էին գալիս ունկնդիրները, այնուհետև պրոպագանդիստը, գործադրելով տարբեր ձևեր, ընդհանրացնում էր պարապմունքը: Հաջորդ պարապմունքի թեման նախապատրաստելիս նա կազմում էր նյութի մշակման ծրագիր-պլանը, նշում հիմնական հարցերը, աղբյուրները, թեմային վերաբերող գեղարվեստական գրականությունը: Այնուհետև ունկնդիրներին հանձնարարում էր կոնսպեկտավորել նյութը և թելադրում էր օժանդակ հարցերը, որոնցով պարապմունքի մասնակիցները նախապատրաստվում էին բանավոր ելույթների: Այդ քաղխմբակի պարապմունքներն արդյունավետ էին, ուսանելի:

Կոմերիտականների մարքս-լենինյան ուսուցման ցանցին օգնություն ցույց տալու նպատակով անցկացվում էին նաև հանրապետական հեռակա խորհրդակցություններ, որոնցում քաղխմբակների աշխատանքի դրական փորձը ընդհանրացնելու և թերությունները վեր հանելու ճանապարհով մշակվում էին համապատասխան երաշխավորություններ՝ ուղղված քաղպարապմունքների որակի բարձրացմանը և կոմերիտական քաղլուսցանցի աշխատանքի բարելավմանը:

Կուսակցական մամուլն իր էջերում միաժամանակ վեր էր հանում կոմերիտական քաղուսուցմանն օգնություն ցույց տալու հարցում կուսկազմակերպությունների աշխատանքի պրակտիկայում տեղ գտած թերությունները և նշում դրանց վերացման ուղիները: Այսպես, «Խորհրդային Հայաստան» թերթի հոդվածներից մեկում (1935 թ., 6 մայիսի) նշվում էր այն մասին, որ Վաղարշապատի շրջանի Հայթաղ գյուղի կուսկազմակերպությունը կոմերիտականների մարքս-լենինյան կրթության գոր-

[1] *ՄԼԻ ՀՖԿԱ, ֆ. 1, ց. 22, գ. 16, թ. 290—293:*

ծը մոռացության էր մատնել: Գյուղի քաղխմբակի ունկնդիրներն ունեին գաղափարաքաղաքական և հանրակրթական պատրաստության տարբեր մակարդակ, ուստի մատուցվող նյութը պարապողների մի մասի համար անհասկանալի էր, և նրա կողմից չէր յուրացվում: Գյուղի կոմերիտականները ծանոթ չէին սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության տարրական հարցերին, սիստեմատիկորեն չէին կարդում թերթեր և ամսագրեր, իսկ կազմակերպությունը չէր հետաքրքրվում կոմերիտականների աշխատանքով և ոչ մի անգամ այդ հարցը քննության առարկա չէր դարձրել: Նման ոչ ճիշտ մոտեցման հետևանքով ԼԿԵՄ կազմակերպությունում երևան էին եկել վատառողջ երևույթներ:

30-ական թվականների կեսերից սկսած, հատկապես ՀամԿ(բ)Կ Կենտկոմի «ՀամԼԿԵՄ Կենտկոմի ապարատի և նրա տեղական օրգանների կառուցվածքի մասին» որոշումից (1935 թ. փետրվար) և կոմերիտմիության աշխատանքի վերակառուցմանը նվիրված ՀամԼԿԵՄ Կենտկոմի 11-րդ պլենումից հետո (1935 թ., հունիս), երիտասարդության շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի ղեկավարությունը համապատասխանեցվեց ժամանակի պահանջներին:

Հիշյալ որոշումները նոր փուլ նշանավորեցին կոմերիտական երիտասարդության քաղաքական կրթության սիստեմում: Քաղաքական կրթության բնագավառում արգելվեցին կամպանիաները: Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը բարելավելու նպատակով վերակառուցվեց կոմերիտական մարմինների ապարատը:

Կոմերիտական շարքերի գաղափարական-կազմակերպական միասնության, կոմերիտմիության և արտամիութենական երիտասարդության կոմունիստական դաստիարակության ղեկավարման խնդիրները մշտապես գտնվում էին հանրապետության կուսակցական մարմինների և կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում: ՀԿ(բ)Կ Կենտկոմը և ՀԼԿԵՄ Կենտկոմը համապատասխան միջոցառումներ մշակեցին երիտասարդության շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքը նշված որոշումների ոգով վերակառուցելու համար: Խնդիր էր դրվում, որպեսզի պատանիներն ու աղջիկները խոր կերպով ծանոթանան բոլշևիզմի պատմության նախահոկտեմբերյան և հետհոկտեմբերյան հերոսական էջերին:

Լենինյան կուսակցության պատմությունը խոր ուսումնասիրելու համար հարկավոր էր օգտագործել բոլոր հնարավորություններն ու միջոցները: Երաշխավորվում էր կոմերիտական կազմակերպություններում անցկացնել կոլեկտիվ ընթերցումներ և կինոդիտումներ, ուշադրություն դարձնել հակակուսակցական խմբավորումների և հոսանքների դեմ կուսակցության մղած պայքարի հարցերի լուսաբանմանը: Ուշադրության արժանի էր երիտասարդության կուլտուրական պահանջմունքների բավարարումը. առաջարկվում էր պատանիների և աղջիկների քաղաքական դաստիարակության ասպարեզում ծավալած գործունեությունը սերտորեն զուգակցել գյուղում և քաղաքում տարվող կուլտուրական աշխատանքի հետ: Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները կոչված էին երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը դարձնել իրենց աշխատանքի առանցքը: ՀԼԿԵՄ Կենտկոմի 1935 թ. հուլիսին կայացած պլենումը քննարկեց երիտասարդ սերնդին լենինիզմի ոգով դաստիարակելու խնդիրների հարցը, որը բխում էր ՀամԼԿԵՄ Կենտկոմի 11-րդ պլենումի որոշումներից (տե՛ս «Խորհրդային Հայաստան, 1935 թ. հուլիսի 20, 22, 23, 24):

Նոր պայմանները նոր փուլ նշանավորեցին կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում և պայքարում: Կոմերիտմիությունը վերակառուցում էր իր գործունեությունը կուսակցության առաջադրած նոր խնդիրների լուծման համար: Կոմերիտականների, երիտասարդների միջից այնպիսի կադրեր պետք է պատրաստվեին, որոնք ընդունակ լինեին թամբել նոր տեխնիկան և այն ամբողջովին ի սպաս դնել սոցիալիզմի գործին, սոցիալիստական հայրենիքի ամրապնդմանն ու ծաղկմանը: Այդ բարդ և պատասխանատու խնդիրները չէր կարելի լուծել կազմակերպական նախկին ձևերով, աշխատանքի հին մեթոդներով, քանի որ գոյություն չունեին բոլոր ժամանակների համար պիտանի աշխատանքի ամփոփոխ ձևեր և մեթոդներ:

Կոմունիստական կուսակցությունը յուրաքանչյուր պատմական ժամանակաշրջանի համար, ելնելով նրա յուրահատկություններից և կոնկրետ խնդիրներից, առաջ էր քաշում մասսաների վրա ներազդելու, նրանց մոբիլիզացնելու և կազմակերպելու աշխատանքի համապատասխան ձևեր և մեթոդներ: Կոմերիտմիությունը կուսակցության ղեկավարությամբ իր աշխատանքը վերակառուցում էր տվյալ ժամանակաշրջանին համապատասխան: Ջախջախված դասակարգային թշնամիների մնացորդները, որոնք կորցրել էին իրենց ոտքի տակի հողը, ամեն կերպ ձգտում էին հենարան գտնել երիտասարդության առանձին խավերում, ձգտելով նրանց գցել իրենց ազդեցության տակ: Ուստի կարևոր խնդիրներից էր կոմերիտական շարքերի հեղափոխական զգոնության և բոլշևիկյան մարտունակության բարձրացումը: Անհրաժեշտ էր բոլշևիզմի պատմությունը դարձնել երիտասարդության քաղաքական դաստիարակության առանցքը:

Այդ հրատապ խնդիրների լուծման համար հարկավոր էր կոմերիտական քաղուսուցման գործում հաղթահարել որոշ թերություններ— պրոպագանդիստների կազմի փոքրաքանակությունը և տեսականորեն թույլ պատրաստականությունը, հետևողական և ծրագրված աշխատանքի բացակայությունը և այլն:

Անհրաժեշտ էր մարքսիստական գիտությունն ուսումնասիրել այնպես, որպեսզի հնարավորություն ստեղծվեր զինվելու կուսակցության զարգացման բոլոր ժամանակաշրջաններում կուտակված հարուստ փորձով: Կարևոր խնդիրներից էր կուսպատմության հետհոկտեմբերյան ժամանակաշրջանի ուսումնասիրությունը, երբ բոլշևիկյան կուսակցությունը ջախջախեց տրոցկիզմը, աջ և ձախ օպորտունիզմը, հակակուսակցական մյուս խմբավորումներն ու հոսանքները, դրանով իսկ ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում: Պլենումը կոչ էր անում ամենալուրջ կերպով զբաղվել կոմերիտականների քաղուսուցման որակի բարձրացման հարցերով:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի 11-րդ պլենումը կոմերիտական կազմակերպություններից պահանջում էր զբաղվել հիմնական խնդրով՝ երիտասարդության կոմունիստական դաստիարակությամբ: Այս բնագավառում գլխավոր բացթողումն այն էր, որ կոմերիտական շատ կազմակերպություններ զբաղվում էին տնտեսական զանազան հարցերով, պատճենահանում էին կուսակցական կոմիտեների և տնտեսական մարմինների աշխատանքի ձևերն ու մեթոդները, շատ հաճախ մոռացության էին տալիս իրենց հիմնական պարտականությունները: ՀԼԿԵՄ Կենտկոմի պլենումում այդ տեսանկյունով քննադատվեց կոմերիտմիության Ղափանի շրջկոմի աշխատանքի ոճը, որտեղ բյուրոյի նիստերում գերազանցապես քննարկվել էին տնտեսական հարցեր: Շրջկոմը հանիրավի իր վրա էր վերցրել իրեն ոչ հատուկ, սովետական և տնտեսական մարմինների ֆունկցիաները:

1935—1936 ուսումնական տարում կուսակցությունը և կոմերիտմիությունը շարունակում էին առաջ մղել երիտասարդության կոմունիստական դաստիարակության ղեկավարման գործը:

Կոմերիտական քաղուսուցման կազմակերպման, նրա ձևերի և մեթոդների կատարելագործման, երիտասարդության շրջանում քաղաքական-լուսավորական աշխատանքի ուժեղացման նպատակով Հայաստանի կոմունիստական կուսակցության և կոմերիտմիության ծավալած գործունեությունը է՛լ ավելի ամրապնդեցին կոմկուսի և երիտասարդական միության հեղինակությունը, նրանց ազդեցությունը երիտասարդական լայն մասսաների վրա:

1935—1936 ուստարում հանրապետության կոմերիտական քաղուսուցման ցանցում ընդգրկված էին 27.750 կոմերիտականներ և արտամիութենական երիտասարդության 8.031 ներկայացուցիչներ: Քաղկրթության կուսակցական ցանցում սովորում էին 7.201 կոմերիտականներ, իսկ երեկոյան կոմերիտական դպրոցներում՝ 4.485 պատանիներ ու աղջիկներ («Խորհրդային Հայաստան», 1936 թ. փետրվարի 12):

Կոմերիտական քաղլուսցանցում կար քաղաքական զրույցների՝ 457, կուսպատմությունն ուսումնասիրող՝ 452, կուսպատմությունը սկզբնաղբյուրներով ուսումնասիրող՝ 42, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների առանձին ստեղծագործություններն ուսումնասիրող 52 խմբակ («Ավանգարդ», 1936 թ. փետրվարի 15):

Զգալի աշխատանք էր տարվում պրոպագանդիստական կադրերի (որոնց թիվը հասնում էր 1.487-ի) որակավորման բարձրացման նպատակով («Խորհրդային Հայաստան», 1936 թ. փետրվարի 5): Կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ բոլոր շրջաններում գործում էին աշխարհագրության, մաթեմատիկայի, ռուսաց լեզվի և այլ առարկայական խմբակներ: Մի շարք շրջաններում և քաղաքներում (Կոտայք, Նոր Բայազետ, Ամասիա, Լենինական, Երևան) ստեղծված էին նաև օտար լեզուների խմբակներ:

Չնայած կոմերիտականների և արտամիութենական երիտասարդների քաղաքական կրթության ասպարեզում ձեռք բերած հաջողություններին, ոչ բոլոր քաղաքներում և շրջաններում էր կոմերիտական քաղուսուցումը գտնվում պատշաճ բարձրության վրա: Առանձին տեղերում ցածր էր ուսման որակը և անբավարար էր նյութի յուրացումը, վատ էր կազմակերպված պրոպագանդիստների ուսուցման գործը: Այն ժամանակ դեռևս ինչպես հարկն է չէր ուսումնասիրված կոմերիտմիության պատմությունը: Հրապարակի վրա եղած գրականությունը զերծ չէր սխալներից ու վրիպումներից:

Չնայած վերոհիշյալ թերություններին և դժվարություններին, առանձին չլուծված խնդիրներին, կոմերիտական քաղաքական կրթության սիստեմը բացառիկ դեր խաղաց կոմերիտմիության շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքը բարելավելու, երիտասարդության դասակարգային, սոցիալիստական գիտակցությունը բարձրացնելու գործում: Կոմերիտմիությունը հարուստ փորձ կուտակեց երիտասարդ սերնդի շրջանում

հեղափոխական տեսության պրոպագանդման կազմակերպման ասպարեզում: Ավելի ու ավելի էր կատարելագործվում լենինիզմի պրոպագանդայի սիստեմը. այն ընդգրկում էր ինչպես տպագիր խոսքը, այնպես և կոմերիտական քաղաքական լուսավորության ողջ համակարգը:

Սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում, կոմերիտականների և արտամիութենական երիտասարդության ակտիվի քաղաքական ուսուցման հիմնական բովանդակությունն ուղղված էր սոցիալիստական շինարարության լենինյան պլանի խնդիրների խոր, բազմակողմանի և հետևողական յուրացմանը:

Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պատանիների ու աղջիկների շրջանում տարվող քաղաքական-լուսավորական աշխատանքի ձևերի ու մեթոդների ուժեղացման և կատարելագործման նպատակով իրենց գործունեությունը ծավալում էին ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում օպորտունիզմի դեմ մղվող անհաշտ պայքարի բարդ պայմաններում, այն բխում էր կուսակցության գլխավոր գծից հակալենինյան թեքումների դեմ մղվող պայքարի խնդիրներից և ուղղված էր երիտասարդության քաղաքական գիտակցության ու զգոնության բարձրացմանը: Այդ իսկ տարիներին ստեղծվեց և ձևավորվեց կոմերիտականների քաղաքական ուսուցման կուռ սիստեմը՝ կոմերիտականների և արտամիութենական երիտասարդության ակտիվի հանրակրթական և գաղափարական-քաղաքական մակարդակին համապատասխան, դրվեցին կոմերիտական քաղկրթության գիտական ամուր հիմքերը:

Կոմերիտականների, աշխատավոր երիտասարդության շրջանում մարքս-լենինյան գաղափարախոսության տարածումն ու ամրապնդումը հանդիսացան աշխատանքային խանդավառության բուռն աճի աղբյուր ՍՍՀՄ-ը հզոր ինդուստրիալ-կոլտնտեսային երկրի վերածելու համար մղվող պայքարում: Եվ օրինաչափ է, որ **ՍՄԿԿ XXV** համագումարը նշեց. «Կոմերիտմիության աշխատանքային փառքը նրա հաստատուն կերպով նվաճած դիրքն է... Երիտասարդները, կոմերիտականները նոր փառավոր էջեր կգրեն կոմունիստական շինարարության տարեգրության մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ **127**):

Այսօր էլ կուսակցությունն անչափ կարևորում է երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը, մշակում այն բարելավելու կոնկրետ ուղիները: «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» **ՍՄԿԿ Կենտկոմի** որոշմամբ պահանջվում է գաղափարական ազդեցության ոլորտն ընդգրկել երիտասարդության բոլոր խմբերը, երիտասարդությանը դաստիարակել կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներով, կոմունիստական բարոյականության ոգով՝ հաշվի առնելով երիտասարդության պահանջմունքները, նրա կրթության և մասնագիտական պատրաստության աճող մակարդակը:

---



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Գինը՝ 20 կոպ.:*

*ՎՖ 05686 Պատվեր 123 Թղթի չափսը 70×108 1/16, Տիրաժ՝ 16.532*

*Ստորագրված է տպագրության 8/II 1980 թ.:*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:*

# Նոր գրքեր

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի ակտուալ հարցերը: Հ. 2 *«Հայաստան» հրատ., 1979:*

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Հրապարակախոսական երկեր: *«Հայաստան» հրատ., 1979:*

Հ. ԲԱՂՐԱՄՅԱՆ— Այսպես մենք հասանք հաղթանակի: *«Հայաստան» հրատ., 1979:*

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Ալյոշա Ջափարիձե: *«Հայաստան» հրատ., 1979:*

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Հեղափոխական Ալեքսանդրապոլը *(1905—1907 թթ.): «Հայաստան» հրատ., 1979:*

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ— Ժողովուրդների եղբայրության դրոշով: *Ե., «Գիտելիք» հրատ., 1979:*

Մ. ՍԱՐԳՍՅԱՆ— Պետերբուրգի գեղարվեստի ակադեմիան և հայ նկարիչները: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Փիլիսոփայության պատմության համառոտ ակնարկ: *ԵՊՀ հրատ., 1979:*

Շ. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Զարգացած սոցիալիզմի վերարտադրության բնորոշ գծերը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ— Հայաստանի բնակչությունը և նրա զբաղվածությունը: *1828—1978 թթ.: Ե., ԳԱ հրատ., 1979:*

Ջ. ՄԱԹՈՍՅԱՆ— Նյութական և բարոյական խթաններ: *«Հայաստան» հրատ., 1979:*

**В. И. Ленин.** 1870—1980. Календарь 1980. 110 лет со дня рождения Владимира Ильича Ленина. М., Политиздат, 1979.

**М. СУСЛОВ — Дело всей партии.** Доклад на Всесоюзном совещании идеологических работников 16 октября 1979 г., М., Политиздат, 1979.

**Л. МЕТЕЛИЦА и Э. ТАДЕВОСЯН — Проблемы научного коммунизма.** М., Политиздат, 1979.

**Рабочий класс в мировом революционном процессе.** М., «Наука», 1979.

**Реальный социализм.** Коллективная монография. М., «Мысль», 1979.

**КПСС о средствах массовой информации и пропаганды.** Сборник. М., Политиздат, 1979.

**К. МОСКАЛЕНКО — На Юго-Западном направлении 1941—1943.** Воспоминания командарма. Книга I, 3-е издание. М., Воениздат, 1979.

**А. ИОВЛЕВ — Военные комиссары и политработники.** К 60-летию победоносного окончания гражданской войны. М., «Знание», 1979.

**Н. ГАНЧОВСКИЙ — Георгий Димитров, каким я его видел и запомнил.** В 2-х книгах. Книга 1, 2. Перевод с болгарского. М., Политиздат, 1979.

**Решения партии и правительства по хозяйственным вопросам.** Сборник документов. Т. 12, июль 1977 г. — март 1979 г., М., Политиздат, 1979.

**А. СОРВИНА — Партийная работа в условиях специализации и концентрации сельскохозяйственного производства.** М., Политиздат, 1979.

**Соревнование и хозяйственный механизм развитого социализма.** По материалам Всесоюзной научно-практической конференции в Ленинграде. 12—14 апреля 1979 г. М., «Мысль», 1979.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՄԱՔՈՒՐ ԲՅՈՒՐԵՂ

*Ժամանակակից էլեկտրոնիկայի զարգացումն անհնար է առանց մաքուր մետաղների, ձուլվածքի և հատկապես կիսահաղորդիչների, որոնք կիրառվում են ռադիոէլեկտրոնային սարքերի և էլեկտրահաշվիչ մեքենաների ստեղծման ժամանակ։ Եվ այդ պահանջարկն անընդհատ աճում է։ Կիսահաղորդիչների, օրինակ, գերմանիումի մաքրման տեխնոլոգիան այնքան է կատարելագործվել, որ ստացվում են բյուրեղներ, որոնցում հիմնական նյութի միլիարդավոր ատոմների մեջ լինում է օտար խառնուրդի ընդամենը մի քանի ատոմ։*

*Սակայն այժմ այդ ևս քիչ է։ Առավել մաքուր նյութեր ստանալու համար անհրաժեշտ է իմանալ՝ ինչպիսի խառնուրդներ և ինչպիսի քանակությամբ է մնացել դրանցից ամենամաքուրում։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ռադիոտեխնիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտի գիտնականներին վերջերս հաջողվեց լուծել այդ խնդիրը։ Նրանց ստեղծած ֆոտոէլեկտրական սպեկտրացույցով հետազոտելու մեթոդը հնարավորություն է ընձեռում հայտնաբերել և հաստատել ամենափոքր խառնուրդների քիմիական բնույթը։ Կարելի է նման համեմատություն կատարել. եթե Ազովի ծով նետվի մի պտղունց ներկող փոշի և հնարավոր լինի այն հավասարաչափ լուծել, ապա նոր եղանակով կարելի է որոշել ներկի քանակությունը մեկ խ սմ ջրում։*

*Նորույթը լայնորեն կիրառվում է աշխարհի շատ լաբորատորիաներում, իսկ մեզ մոտ՝ նաև արդյունաբերության մեջ։*

### ՀՈՂԻ ՋԵՐՄՈՒԹՅԱՄԲ

*Լենինգրադի ագրոֆիզիկայի գիտահետազոտական ինստիտուտի գիտնականներն առաջարկել են խստաշունչ ձմռանը պտղատու ծառերը տաքացնել... հողի ջերմությամբ։ Դրա համար ծառի կողքին տեղադրվում է խողովակ, որը լցվում է լավ ջերմահաղորդիչ հեղուկով։ Խողովակի մի մասը թաղվում է հողում, մնացածը ծառի բնի հետ ծածկվում է անլուսաթափանց ծածկով։ Օդի և հողի ջերմաստիճանների տարբերությունն ստիպում է, որ հեղուկը, շրջապտույտ կատարելով, հողի ջերմությունը հաղորդի ծառին։*

### ՍՐՏԻ ԷԼԵԿՏՐԱՊԱՀԱՊԱՆ

*Կույբիշևի Ս. Կորոլյովի անվան ավիացիայի ինստիտուտում դոցենտ Վ. Խրիստյուկը ուսանող Վ. Վիշնյակովի հետ մեկտեղ ստեղծել են յուրատեսակ կենսակառավարող էլեկտրակարդիոխթանիչ սարք, որը կարելի է կիրառել հիվանդանոցներում և շտապօգնության կայաններում։ Այն հնարավորություն է ընձեռում անմիջապես էլեկտրական զարկերի միջոցով արագորեն վերականգնելու սրտի ռիթմը, ժամանակին վերացնելու և կանխելու կյանքի համար վտանգավոր սրտի ֆիբրիլյացիան։*

*Սարքը փորձարկված է Կույբիշևի բժշկական ինստիտուտում և արժանացել ՍՍՀՄ առողջապահության մինիստրության հավանությանը։ Նոր խթանիչը հաջողությամբ կիրառվում է նաև նորածինների աղեստամոքսային տրակտի գործունեության ակտիվացման համար։*

### ՀՐԴԵՀԻ ՉԵԶՈՔԱՑՈՒՑԻՉ

*Ինչպես հայտնի է, անցած տարի Ֆրանսիայի հարավում հրդեհվել էին անտառները։ Տարերային աղետի ժամանակ հաջողությամբ կիրառվեց «Ռոն-Պուլենկ» ֆիրմայի հրդեհը չեզոքացնող «Ինիգրալ» հեղուկը։ Այն լավ խառնվում է ջրում (նաև ծովում) և ջրի գոլորշիացումից հետո ծառերը դառնում են հրակայուն։ Այդ նյութը փոխում է ցելյուլոզայի տրոհման պայմանները, փայտանյութում դանդաղում են ջերմաքիմիական ռեակցիաները, մեծանում է պաշտպանունակությունը։ Տնտեսվում է ջուրը, կրճատվում հրդեհի մարման ժամանակը։ Տարվա շոգ ամիսներին լուծույթը կարելի է օգտագործել որպես պրոֆիլակտիկ միջոց՝ անտառի և փայտե շինությունների բռնկումների դեմ։ Խառնուրդը թունավոր չէ ո՛չ բուսական, ոչ էլ կենդանական աշխարհի համար։ Այն պարունակում է ամոնիակի ֆոսֆատ, որն աստիճանաբար վերածվում է լավ պարարտանյութի։*